ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ ● 1973

# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։



ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание



● ● ●



# ԱՆԹԵՐԻ ԿԱՏԱՐԵՆՔ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՎՃՌԱԿԱՆ ՏԱՐՎԱ ԱՌԱՋԱԴՐԱՆՔՆԵՐԸ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը գիտականորեն մշակեց և հիմնավորեց կոմունիստական շինարարության ժամանակակից փուլում մեր կուսակցության հիմնական քաղաքական գիծը, կանխագծեց իններորդ հնգամյակի հոյակապ ու փիթխարի ծրագիրը: Համագումարը սահմանեց, որ արտադրության արագ աճի հիման վրա աշխատավորների նյութական ու կուլտուրական պահանջմունքների հարաճուն բավարարումը ՍՄԿԿ տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդիրն է մոտակա տարիների համար և տևական՝ հեռանկարների առումով:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, կուսակցության XXIV համագումարում անդրադառնալով կոմունիստական կուսակցության ու սովետական ժողովրդի առջև ծառացած տնտեսական ու սոցիալական մեծ խնդիրների լուծման հարցին, նշեց, որ «Մեզ միշտ և բոլոր գործերում օգնել են հեղափոխական կամքն ու թափը, ստեղծարար խնդիրների լուծման համար միլիոնավոր զանգվածների ջանքերը մոբիլիզացնելու՝ կուսակցության կարողությունը, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության աշխատանքային խանդավառությունը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 52): Եզրափակելով իր միտքը՝ ընկ. Բրեժնևը վստահություն հայտնեց, որ սովետական մարդիկ իրենց ողջ եռանդն ու ջանքերը կգործադրեն իններորդ հնգամյակի ծրագիրը անթերի կատարելու համար:

Հետհամագումարյան ժամանակաշրջանում մեր երկրի աշխատավորների դրսևորած ստեղծագործական նախաձեռնության և արտադրական ակտիվության շնորհիվ հաջողությամբ է իրագործվում ընթացիկ հնգամյակի ծրագիրը: Բավական է ասել, որ իններորդ հնգամյակի առաջին երկու տարում ՍՍՀՄ ազգային եկամուտն ավելացել է 10 տոկոսով, արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացել է մոտ 15 տոկոսով:

Այսպիսի հաստատուն քայլերով մեր երկիրը ոտք դրեց 1973 թվականի շեմին: Տարվա սկզբից սովետական մարդիկ, մեծ նախաձեռնություն հանդես բերելով, սկսեցին իրենց ջանքերն ուղղել ամբողջ տարվա պլանները գերակատարելու նպատակին՝ գիտակցելով, որ դա կհանդիսանա իններորդ հնգամյակի առաջադրանքներն անթերի կատարելու հաստատուն հիմքը:

Վ. Ի. Լենինը, մեծ նշանակություն տալով սոցիալիստական մրցությանը, նշում է. «...միայն սոցիալիզմը, ոչնչացնելով դասակարգերը և, հետևապես, մասսաների ստրկացումը, առաջին անգամ է, որ ճանապարհ է բաց անում մրցության համար իսկապես մասսայական մասշտաբով» (Երկեր, հ. 27, էջ 310): Մի այլ առիթով Վլադիմիր Իլյիչը նշում է, որ մրցության կազմակերպումն ու ղեկավարումը պետք է կարևորագույն տեղ գրավեն սովետական

իշխանության ու կուսակցական կազմակերպության գործունեության մեջ: Եվ, իրոք, կյանքը ցույց է տալիս, որ աշխատավորական լայն զանգվածների մոբիլիզացման, արտադրության ռեզերվների լրիվ օգտագործման, պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման համար մղվող պայքարի լավագույն ձևը սոցիալիստական մրցությունն է:

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «1973 թվականի ժողովրդական տնտեսության պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի աշխատողների համամիութենական մրցություն ծավալելու մասին» որոշումը բուռն խանդավառությամբ ընդունեցին մեր երկրի աշխատավորները: Այս տարվա սկզբից ծավալված սոցիալիստական մրցությունը համաժողովրդական բնույթ ընդունեց: Այն ներգրավեց երկրի բոլոր կոլեկտիվներն ու տասնյակ միլիոնավոր մարդկանց, որ անձնվիրաբար պայքարում են՝ կատարելու և գերակատարելու 1973 թվականի առաջադրանքները, որոնք ամբողջապես կորոշեն հնգամյակի բախտը և անհրաժեշտ ռեզերվներ կստեղծեն հաջորդ տարիների համար:

Սովետական մարդկանց բեղմնավոր աշխատանքի պտուղներն արդեն ակներև են: Այդ մասին փայլուն կերպով վկայում են 1973 թվականի առաջին կիսամյակի ժողովրդատնտեսական պլանների կատարման արդյունքները: ՍՍՀՄ ամբողջ արդյունաբերական արտադրանքի ծավալը, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 7 տոկոսով, պլանով նախատեսված 5,8 տոկոսի դիմաց: Պլանից ավելի արտադրված ու իրացված է 4 միլիարդ 600 միլիոն ռուբլու արտադրանք: Կես տարում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 5,4 տոկոսով:

Գյուղի աշխատավորները համառ պայքար են մղում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար: Օր-օրի ուրախալի լուրեր են ըստացվում երկրի տարբեր վայրերից՝ հասկավոր կուլտուրաների բերքահավաքը և հացահատիկի մթերումների առաջադրանքները հաջողությամբ կատարելու մասին: Վերջերս մամուլում հրապարակվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, արհեստակցական միությունների համամիութենական կենտրոնական խորհրդի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ 1972 թվականի չորրորդ եռամսյակում և 1973 թվականի առաջին կիսամյակում անասնապահական մթերքների արտադրության ավելացման համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքների մասին որոշումը: Այդ փաստաթղթում նշված է, որ կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները մեծ օգնություն են ցույց տվել ֆերմաների, բրիգադաների, կոլտնտեսությունների և սովխոզների կոլեկտիվներին՝ անասնապահության լրացուցիչ ռեզերվների որոնման և օգտագործման համար մոբիլիզացնելու նպատակով, որը հնարավորություն տվեց անցած ձմռան դժվարին պայմաններում պահպանելու անասունների գլխաքանակը և բարձրացնելու մթերատվությունը:

Սովետական մարդկանց անձնվեր աշխատանքը հնարավորություն է ստեղծում հետևողականորեն իրագործելու ժողովրդի բարեկեցության բարձրացման մասին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները: Հնգամյակի անցած երկու տարում աշխատավորների ռեալ եկամուտները բնակչության մեկ շնչի



հաշվով աճել են 8,2 տոկոսով, բարձրացել են 34 միլիոն մարդու աշխատավարձը, կենսաթոշակներն ու կրթաթոշակները, նոր բնակարան է փոխադրըվել 23 միլիոն մարդ:

Ընթացիկ հնգամյակի անցած ժամանակաշրջանում, ինչպես ողջ Սովետական Միության, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորները ձեռք բերեցին սոցիալ-տնտեսական նոր նվաճումներ: 1971—1972 թվականներին կապիտալ շինարարության մեջ ֆինանսավորման բոլոր աղբյուրներով իրացվել է 1 միլիարդ 753 միլիոն ռուբլի, շահագործման են հանձնվել տասնյակ արդյունաբերական ձեռնարկություններ: 1,5 միլիարդ ռուբլով ավելացել են ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը:

Նոր բնագծեր նվաճեցին գյուղի աշխատավորները: Հնգամյակի առաջին երկու տարում այդ բնագավառում իրացվել են 274 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, ոռոգելի է դարձել 18 հազար, ջրարբիացվել 50 հազար հեկտար տարածություն: Կատարվել են գյուղատնտեսական կարևորագույն մըթերքների արտադրության և մթերումների առաջադրանքները:

Ձեռք բերած որոշակի հաջողությունների կողքին մեր հանրապետության ժողովրդական տնտեսության ղեկավարման ու պլանավորման գործում տեղ գտան նաև լուրջ թերություններ, որոնց հետևանքով զգալիորեն թուլացավ հնգամյա պլանով սահմանված զարգացման թափը, իսկ առանձին ձեռնարկություններում այդ թափի դանդաղեցման հետ իջան արտադրանքի որակական ցուցանիշները: 1972 թ. բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ, այդ թվում Արարատի ցեմենտի, Երևանի ավտոդողերի գործարանները չկատարեցին համախառն արտադրանքի թողարկման պլանները, իսկ Հրազդանի արտադրական, Երևանի հրուշակեղենի ու մակարոնի կոմբինատները թերակատարեցին արտադրանքի իրացման պլանները: Անցյալ տարի անբավարար էր սովխոզների արտադրաֆինանսական գործունեությունը: Բավական է նշել, որ 179 սովխոզ տարին փակեց զգալի վնասով:

ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. դեկտեմբերյան պլենումը, բազմակողմանի քննարկելով երկրի էկոնոմիկայի զարգացման խնդիրները, մի շարք արմատական միջոցառումներ մշակեց ժողովրդական տնտեսության մեջ եղած թերությունները վերացնելու և էկոնոմիկայի զարգացման թափը հնգամյակի դիրեկտիվներով սահմանված մակարդակին հասցնելու համար: Կուսակցության Կենտկոմի պլենումում Լ. Ի. Բրեժնևի մատնանշած թերությունները լիովին վերաբերում են նաև մեր հանրապետությանը: Գործնական եզրակացություն ու հետևություն անելով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումներից՝ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառների կուսկազմակերպությունները շատ ջանքեր գործադրեցին ընթացիկ հնգամյակի պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու համար:

Այս տարվա առաջին ութ ամսվա արդյունքները վկայում են, որ կան բոլոր նախադրյալները՝ լավագույն ցուցանիշներով փակելու իններորդ հնգամյակի վճռական տարին: Հայկական ՍՍՀ կենտրոնական վիճակագրական վարչության տվյալներով արդյունաբերական արտադրանքի իրացման և կարևորագույն տեսակների մեծ մասի թողարկման կիսամյա պլանը գերակատարվել է: Պլանից ավելի թողարկվել և իրացվել է 38,8 միլիոն ռուբլու

արտադրանք: Անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի աճը կազմել է 4,2 տոկոս, աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացվել է արտադրանքի աճի 33 տոկոսը:

Բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպություններ, կազմակերպելով ու գլխավորելով սոցիալիստական մրցությունը, կարողացել են իրենց կոլեկտիվների ուշադրությունը բևեռել վճռական տարվա արտադրական պլանները բոլոր ցուցանիշներով կատարելու վրա: Չարենցավանի գործիքաշինական գործարանը (դիրեկտոր՝ Գ. Երիցյան, կուսկոմիտեի քարտուղար՝ Բ. Ազատյան, գործարկոմի նախագահ՝ Ս. Հակոբյան) 1973 թ. առաջին ութ ամսում համախառն արտադրանքի պլանը կատարել է 104,3 տոկոսով, ընդ որում, մետաղահատ գործիքներինը (որը հիմնական արտադրատեսակն է)՝ 107, արտադրանքի իրացման առաջադրանքը՝ 109,9, յոթ ամսվա աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը՝ 104,3 տոկոսով: Գործարանը ութ ամսում տնտեսել է 50 հազար ռուբլու հատուկ մետաղ, կիսամյակում՝ 600 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա: Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունը պատվով է կատարում Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատը (դիրեկտոր՝ Ծ. Այդինյան, կուսկոմիտեի քարտուղար՝ Ս. Սարգսյան, գործարկոմի նախագահ՝ Նադյա Ջանոյան): Այստեղ անցած ութ ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարվել է մոտ 105, արտադրանքի իրացմանը՝ 107,1, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը՝ 107 տոկոսով: Այս տարվա առաջին յոթ ամսում խնայվել է ավելի քան կես միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Խնայված հումքի հաշվին թողարկվել է մոտ 31,5 հազար քմ մետաքսե գործվածք: Կոմբինատը յոթ ամսում շահութաբերության պլանը 2,5 միլիոն ռուբլու դիմաց կատարել է մոտ 2,8 միլիոն ռուբլով: Ստացած շահույթից միայն առաջին կիսամյակում կուլտ-կենցաղային փոնդին հատկացվել է 92 հազար ռուբլի: Այստեղ սիստեմատիկաբար ստուգվում է, թե որ արտադրամասը, որ բանվորը ինչպես է կատարում իր սոցիալիստական պարտավորությունը, մրցության առաջավորները խրախուսվում են նյութապես:

Առաջընթացը նշանակալի է նաև կապիտալ շինարարության մարզում: 1973 թ. առաջին կիսամյակում, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, գործարկվել են 59 տոկոսով ավելի հիմնական փոնդեր:

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ 1972—1973 թվականների ձմռան ժամանակաշրջանում անասնաբուծական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու համար անասնապահության աշխատողների սոցիալիստական մրցություն ծավալելու մասին որոշումը լայն արձագանք գտավ նաև Սովետական Հայաստանի գյուղի աշխատավորների շրջանում: Կոլտնտեսականներն ու սովխոզների աշխատողները վճռական պայքարի ելան հայրենիքին ավելի շատ անասնաբուծական ու բուսաբուծական մթերքներ տալու, մթերումների պետական առաջադրանքները կատարելու համար: Նրանց գործադրած ջանքերն ապարդյուն չանցան, տվեցին լավ պտուղներ: Հաջողությամբ է կատարվում հացահատիկի մթերումների ու պետությանը վաճառելու առաջադրանքները, անհամեմատ լավ է կազմակերպված պտղի ու բանջարեղենի վաճառքը բնակչությանը: 1973 թ. առաջին կիսամյակում, 1972 թ. առաջին կիսամյակի համե-



մատությամբ, ավելի է գնվել միս՝ 32 հազար, կաթ՝ մոտ 38 հազար ցենտներ,
ձու՝ մոտ 15 մլ. հատ, բուրդ՝ 3.000 ցենտներ:
Մեր հանրապետության բոլոր աշխատավորների համար մեծ պատիվ է,
որ ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ՀԱՄԿԽ-ը, ՀամԼԿԵՄ
Կենտկոմը, ամփոփելով 1972 թվականի չորրորդ եռամսյակում ու 1973 թվա-
կանի առաջին եռամսյակում անասնապահական մթերքների արտադրության
ու մթերումների ավելացման համամիութենական սոցիալիստական մրցության
արդյունքները, միութենական մրցանակի արժանացրին նաև Հայկական
ՍՍՀ-ն ու նրա երեք շրջանները— Արտաշատի, Մասիսի ու Սիսիանի: Այդ
բարձր գնահատականը է՛լ ավելի է գոտեպնդել մեր հանրապետության գյու-
ղի աշխատավորներին, որոնց եռանդի ու ջանքերի շնորհիվ հաղթահարվում
են դեռևս անցած տարվա բնակլիմայական անբարենպաստ պայմանների
հետևանքով առաջացած դժվարությունները, հատուցվում գյուղատնտեսու-
թյանը հասցված զգալի վնասը: Կատարված է պետությանը հացահատիկ վա-
ճառելու այս տարվա սոցիալիստական պարտավորությունը:
Մեր հանրապետության առաջավոր կոլտնտեսություններից մեկն է Արա-
րատի շրջանի Ավշար գյուղի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ն. Սերոբյան,
կուսկազմակերպության քարտուղար՝ Ս. Մանուկյան): Այս տարվա առաջին
ութ ամսում, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ,
կոլտնտեսությունը պետությանը վաճառել է 35 տոննայով ավելի կաթ, մսի
վաճառքի պլանը կատարել 136 տոկոսով, 21 հազարի դիմաց վաճառել 100
հազար հատ ձու: 1973 թվականի ամբողջ տարվա համար նախատեսված
2.270 տոննա բանջարեղենի պլանը կատարված է ութ ամսում, լրացուցիչ
կվաճառվի 1.200 տոննա: Չնայած խաղողի համար անցյալ տարվա չափա-
զանց անբարենպաստ պայմաններին, կոլտնտեսությունը 1972 թվականին,
1970 թվականի համեմատությամբ, 150 հազարով ավելի եկամուտ է ստացել:
Գրեթե տասը տարի անընդմեջ Էջմիածնի շրջանի Թայիրովի անվան
սովխոզը (դիրեկտոր՝ Ս. Գյուլնազարյան, կուսկազմակերպության քարտու-
ղար՝ Գ. Մելոյան) տնտեսական տարին փակել է օգուտով: Օրինակելիորեն
կազմակերպելով պայքարը խաղողի վնասատուների և հիվանդությունների
դեմ՝ սովխոզը անցյալ տարի զգալիորեն նվազեցրեց բնական աղետի պատ-
ճառած վնասը և հեկտարից միջին հաշվով ստացավ 50 ցենտներ բերք (շըր-
ջանի սովխոզների խաղողի այգիների միջին բերքատվությունը եղել է 17,7
ցենտներ): Այս տարվա վեց ամսում տնտեսությունը կատարել է մսի, կաթի,
ձվի վաճառքի տարեկան պլանները:
«Կոմունիստական շինարարությունը ծնում է աշխատանքի իսկական հե-
րոսներ,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մարդիկ, որոնք մարմնավորում են մեր
սովետական ապրելակերպը: Նրանք ցույց են տալիս բարձր գիտակցության
հրաշալի օրինակներ, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբեր-
մունքի օրինակներ» («Լենինյան ուղիով», 1973 թ., № 1, էջ 39): Իններորդ
հնգամյակի, մասնավորապես նրա վճռական տարվա սահմանված բնագծերը
նվաճելու համար մղվող պայքարում մեր հանրապետությունում աշխատան-
քային արիության օրինակ են ցույց տալիս շատ ու շատ մարդիկ:
Հանքագործների շարքերում առաջավոր տեղ է գրավում Ղափանի պղըն-
ձահանքային կոմբինատի հորատողների կոմպլեքսային բրիգադայի բրիգա-
դավար, կոմունիստ Ս. Հակոբյանը: Նա արդեն կատարել է ընթացիկ հնգամ-

յակի չորս տարիների առաջադրանքները բոլոր ցուցանիշներով և աշխատում է 1975 թվականի հաշվին: Երևանի ալյումինի գործարանի գլանող, կոմունիստ, աշխատավորների դեպուտատների քաղաքային սովետի դեպուտատ Ռ. Սերոբյանը սոցիալիստական մրցությամբ պարտավորվել էր հնգամյակի վճռական տարին ավարտել հոկտեմբերին: Իր խոսքը գործ դարձնելով՝ նա սեպտեմբերի առաջին օրերին կատարեց 1973 թվականի առաջադրանքները:

Լենինականի լոկոմոտիվային դեպոյի էլեկտրաքարշի մեքենավար Մ. Մուրադյանը 1973 թ. առաջին կիսամյակում ձեռք բերած գերազանց ցուցանիշների համար ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրի հրամանով արժանացել է պատվավոր երկաթուղայինի կոչման: Նա այս տարվա առաջին ութ ամիսներին չվացուցակի խախտում չի կատարել, խնայել է 30 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով վերջերս սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում շնորհվեց Սիսիանի շրջանի Անգեղակոթ գյուղի կոլտնտեսության հովիվ, կոմունիստ Սուրեն Ղազարյանին: Հնգամյակի վճռական տարվա ութ ամսում նա իր խնամած 372 մաքուց ստացել ու պահպանել է 442 գառ, յուրաքանչյուր ոչխարից խուզել 3,6 կգ բուրդ:

Անիի շրջանի Ջիթհանքով գյուղի կոլտնտեսությունում տասը տարի է, ինչ կոմբայնի ղեկն իր ձեռքում է պահում կոմունիստ Վարդերես Բարսեղյանը: Այս տարի նա սոցիալիստական պարտավորությամբ խոստացել էր հավաքել 160 հեկտար հասկավոր կուլտուրաների բերք, բայց հավաքել է 180 հեկտար՝ չորանոց ուղարկելով 7.200 ցենտներ հացահատիկ:

Հնգամյակի պլանային առաջադրանքները կատարելու գործում ձեռք բերած այս որոշակի հաջողությունների հետ, պետք է նշել, որ ընդհանուր առմամբ մեր հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման թափը դեռևս լիովին չի համապատասխանում ՍՄԿԿ դեկտեմբերյան պլենումի պահանջներին: Այս տարվա օգոստոսին հանրապետության կուսակցականտնտեսական ակտիվի ժողովում տված զեկուցումում ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ Գ. Ա. Արզումանյանը ասաց. 682 արտադրական ձեռնարկություններից առաջին կիսամյակում համախառն արտադրանքի արտադրության պլանը չի կատարել 92 ձեռնարկություն, իսկ 170 ձեռնարկություն, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, թույլ է տվել աճի տեմպերի իջեցում:

Բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ շարունակ չեն կատարում իրենց պլանային առաջադրանքները: Այս տարվա առաջին կիսամյակում «Հայկենցաղքիմ» միավորումը չի իրացրել 527 հազար ռուբլու արտադրանք, Լենինականի հղկիչ հաստոցների գործարանը՝ 497 հազար ռուբլու: Վատ ցուցանիշներ են ունեցել Ալավերդու կարի ֆաբրիկան, Երևանի ավտոդողերի գործարանը: Այս տարվա առաջին կիսամյակում պլանները չեն կատարել «Ախթալաշին», «Բարձրաբերձշին», «Ջերմուկշին» և այլ շինարարական կազմակերպություններ: 28 կարևորագույն օբյեկտներից շահագործման են հանձնվել միայն 26-ը:

Պլանների թերակատարման հիմնական պատճառը եղած արտադրական կարողությունների և մեխանիզմների անբավարար օգտագործումն է, պետական և աշխատանքային կարգապահության թուլությունը: Միանգամայն անթույլատրելի է, երբ այս տարվա առաջին կիսամյակում Լենինականի հղկող



հաստոցների գործարանում բանվորների հոսունությունը կազմել է 20 տոկոս, տեղի է ունեցել 178 մարդ-օր գործալքում, «Հայկենցաղքիմ» միավորումում հոսունությունը՝ 14 տոկոս է, գործալքումը՝ 412 մարդ-օր:

ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց, որ հումքի, նյութերի, վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողությունը, հաստոցների, սարքերի նկատմամբ հոգատարությունը հնգամյակի առաջադրանքները կատարելու կարևոր պայմաններից են: Ցավոք, դեռևս կան արդյունաբերական ձեռնարկություններ, ուր անտեսվում են այս կարևոր հանգամանքները: Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը այս տարվա առաջին կիսամյակում, պլանները չկատարելով հանդերձ, ավելի քան 2 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիայի գերածախս է տվել: Լենինականի գուլպայի ֆաբրիկան նույն ժամանակաշրջանում գերածախսել է մոտ կես միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա:

Առանձին ձեռնարկություններ ուշադրություն չեն նվիրում արտադրանքի որակին, չեն պահպանում պետության կողմից սահմանված ստանդարտը, որի հետևանքով արտադրությունը մեծ վնաս է կրում: ՍՍՀՄ ստանդարտների կոմիտեի հայկական հանրապետական վարչության տվյալներով այս տարվա առաջին կիսամյակում Երևանի ավտոդողերի գործարանը սիստեմատիկաբար խախտել է տեխնոլոգիական կարգապահությունը, որը խիստ կերպով անդրադարձել է արտադրանքի որակի վրա: Ցածրորակ արտադրանք են թողարկել Արտաշատի և Այրումի պահածոների գործարանները: Ղափանի կաթի գործարանում ստուգված 1.914 կիլոգրամ «չանախ» պանրի խոնավությունը 50 տոկոսի փոխարեն եղել է 52—54 տոկոս:

Հնգամյակի վճռական տարվա ավարտին ամիսներ են մնում: Մեր հանրապետության կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները, արհեստակցական միությունները, սովետական և տնտեսական մարմինները պետք է մեծ աշխատանք տանեն ստանձնած սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու, 1973 թ. տնտեսական տարին լավագույն ցուցանիշներով եզրափակելու համար: Հարկավոր է ամեն կերպ ձգտել նվազեցնելու արտադրության աճի տեմպերի մեջ անցած ժամանակաշրջանից եկող ճեղքվածքը այն հաշվով, որպեսզի հիմքեր ստեղծվեն առաջիկա տարիներին հնգամյա պլանը ամբողջությամբ վերցրած կատարելու համար: Անհրաժեշտ է գլխավորել աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական ակտիվությունն ու արտադրական նախաձեռնությունը, առաջավորների օրինակով քաջալերել բոլորին՝ տարվա երկրորդ կիսամյակում ոչ միայն կատարելու արդյունաբերական արտադրանքի պլանները, այլև վերացնելու առաջին կիսամյակում ստեղծված ճեղքվածքը:

Առաջիկայում լուրջ ու պատասխանատու խնդիրներ են կանգնած գյուղի աշխատավորների առջև: Վրա է հասնում ձմեռը, անասնապահության համար դժվարին ժամանակաշրջանը: Անհրաժեշտ է լրիվ կուտակել կերն ու խնամքով պահպանել այն, նորոգել, կարգի բերել գոմերը, գյուղատնտեսական տեխնիկան: Դաշտավարների անհետաձգելի խնդիրն է հոգ տանել այս աշնանից ապահովելու եկող տարվա բարձր բերքը:

Ինչպես ընդգծվեց հանրապետության կուսակցական-տնտեսական ակտիվի խորհրդակցությունում, հարկավոր է հերքել ոմանց այն թյուր կարծիքը, թե իբր հանրապետության ժողովրդական տնտեսության աճի տեմպերը այս հնգամյակում խիստ բարձր են: Չէ՛ որ «...նման լարված

պլանների ընդունումը,— ասաց ընկ. Ս. Քոչինյանը,— սուբյեկտիվ կամայականության հետևանք չէ: Պետք է մեկընդմիշտ հիշել, որ ընթացիկ հնգամյակի գիտականորեն հաշվարկված բարձր բնագծերը լիովին ռեալ են և ելնում են մեր հանրապետության ժողովրդական տնտեսության բնականոն զարգացման կենսական շահերից, համապատասխանում սոցիալ-տնտեսական այն հրատապ խնդիրներին, որոնց լուծումը չի կարելի հետաձգել ավելի ուշ ժամանակվա»: Այստեղից էլ հետևություն, որ անհրաժեշտ է ծավալուն քաղաքական-բացատրական աշխատանքի, սիստեմատիկ ու նպատակասլաց ագիտացիայի միջոցով արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի բնագավառներում աշխատողներին, կոլտնտեսականներին ու սովխոզների բանվորներին համակել այն համոզմունքով, որ հնգամյա պլանը միանգամայն ռեալ ու իրագործելի է:

Հնգամյա պլանի հաջող իրագործման պայմաններից մեկը գիտատեխնիկական նվաճումները արտադրության մեջ լայնորեն ներդնելն է: Հանրապետության գիտնականները, գիտահետազոտական ինստիտուտները մեծ ուշադրություն պետք է նվիրեն ժողովրդական տնտեսության մեջ ավարտված գիտահետազոտական աշխատանքների արդյունքների արմատավորմանը:

Դատապարտելի է այն կուսկազմակերպությունների արատավոր գործունեությունը, որոնք ձևական բնույթ են տալիս սոցիալիստական մրցությանը, մշակում կետերը, ստորագրում պայմանագրերը, իսկ դրանց կատարումը թողնում բախտի քմահաճույքին: Ստանձնած սոցիալիստական պարտավորությունը և դրա կենսագործումը պետք է համարել կոլեկտիվի պատվի գործը: Ամեն մի կուսկազմակերպություն, յուրաքանչյուր կոմունիստ պատասխանատու է ձեռնարկության, շինարարության ու տրանսպորտի օբյեկտի, կոլտնտեսության ու սովխոզի պլանային առաջադրանքների, սոցիալիստական պարտավորությունների կատարման համար: Հետևաբար, հարկավոր է սիստեմատիկաբար ստուգել ձեռնարկության, արտադրամասի, կոլտնտեսության, սովխոզի ու բրիգադայի, առանձին մարդկանց սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, խրախուսել մրցությունում առաջնություն շահողներին, ընդհանրացնել նրանց աշխատանքի առաջավոր մեթոդներն ու փորձը և դրանք դարձնել մյուսների սեփականությունը:

Ինչպես սովետական ողջ ժողովուրդը, այնպես էլ նրա անբաժան մասը կազմող Սովետական Հայաստանի աշխատավորները, լի վճռականությամբ ու հաստատակամությամբ, հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, իրենց ողջ ունակությունները, գիտելիքներն ու ջանքերը կգործադրեն՝ անթերի կատարելու վճռական տարվա պլանները, դրանով իսկ նախադրյալներ կստեղծեն լիովին իրագործելու ընթացիկ հնգամյակի հոյակապ ծրագիրը, որպեսզի է՛լ ավելի հզորանա մեր սոցիալիստական հայրենիքը, է՛լ ավելի բարեկեցիկ ապրի սովետական մարդը:

ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԱՎԱՆԳԱՐԴԸ

Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

Կուսակցությունը մեր դարաշրջանի, հեղափոխական մեծ վերափոխումներ կատարող սովետական ժողովրդի միտքն է, պատիվը և խիղճը:

(ՍՄԿԿ ԾՐԱԳՐԻՑ)

*Լենինյան կուսակցության ստեղծումը՝ պատմության քառուղիներում նոր տիպի պրոլետարական, իսկական հեղափոխական կուսակցության երևան գալը, անխզելիորեն կապված է ՌՍԴԲԿ II համագումարի հետ, որի հրավիրման յոթանասուն տարին նշվեց մեծ հանդիսավորությամբ: Ինչպես ասված էր «ՌՍԴԲԿ II համագումարի 70-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, այդ համագումարում ավարտվեց հեղափոխական մարքսիստական կազմակերպությունների միավորման պրոցեսը, և կազմավորվեց Ռուսաստանի բանվոր դասակարգի կուսակցությունը՝ գաղափարա-քաղաքական և կազմակերպական այն սկզբունքների հիման վրա, որոնք մշակել էր Վ. Ի. Լենինը:*

*Հանճարեղ առաջնորդի ստեղծած, նրա գաղափարներով, հեղափոխական ավանդույթներով դաստիարակված, դասակարգային գոռ մարտերում կոփված մեր կոմունիստական կուսակցությունը փառավոր ուղի է անցել: Նրա պատմությունը որոնումների ու խիզախումների, հերոսական մաքառումների ու հեղափոխական ստեղծագործության տարեգրություն է:*

*Փոքրաթիվ, 1903 թ. ընդամենը երեք ու կես հազար անդամ ունեցող ընդհատակյա կազմակերպությունից մեր կուսակցությունը դարձել է կոմունիստների հզոր, միաձույլ ու համախմբված, գրեթե տասնհինգ միլիոնանոց բանակ՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառավարող կուսակցություն: Հավատարիմ մարքսիզմ-լենինիզմին, անհաշտ, հետևողական պայքար մղելով նրա բոլոր թշնամիների դեմ, ՍՄԿԿ-ն մեր երկրի բանվորներին, ողջ աշխատավորներին տարավ երեք հեղափոխությունների միջով, ոգեկոչեց, կազմակերպեց նրանց՝ կառուցելու առաջին սոցիալիստական հասարա-*

կարգը և այժմ վստահ ու աներեր առաջնորդում է դեպի կոմունիստական պայծառ գալիքը։

Իր հիմնադրման առաջին իսկ պահից մեր կուսակցությունը հանդես եկավ որպես բանվոր դասակարգի միասնական ու կենտրոնացված, ինտերնացիոնալիստների քաղաքական կազմակերպություն, որպես պրոլետարական հեղափոխականների միջազգային բանակի բաղկացուցիչ մաս։

«ՍՄԿԿ-ն ինտերնացիոնալիստ-լենինյանների կուսակցություն է,— ընդգծվում է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ,— թե՛ իր գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ և թե՛ իր կազմով ու կառուցվածքով»։

Լենինյան կուսակցությունը մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորների մարտական ընկերության ու բարեկամության, սովետական ողջ ժողովրդի անխախտ միասնության մարմնավորումն է։ Նրա շարքերում միավորվել են բազմազգ սոցիալիստական տերության ավելի քան հարյուր ազգերի առաջավոր ներկայացուցիչներ։ Ինքը՝ կուսակցությունը, որպես ամբողջ երկրի համար միասնական քաղաքական կազմակերպություն, ինտերնացիոնալիստական բնույթ ունի։ Այն միութենական սովետական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների ֆեդերացիա չէ, այլ մի ամբողջություն, միասնական կոմունիստական կազմակերպություն՝ իր միասնական ծրագրով ու կանոնադրությամբ։ Այդ ինտերնացիոնալ միասնությունը հաստատվել և ամրապնդվել է սոցիալ-շովինիզմի ու նացիոնալ-ուկլոնիզմի, բուրժուական նացիոնալիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ մղված անհաշտ պայքարում։

ՍՄԿԿ-ն պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության դրոշակակիրն է։ Կուսակցությունը հասավ այն բանին, նշել է Լ. Ի. Բրեժնևը, որ ինտերնացիոնալիզմը մի բուռ կոմունիստների իդեալից դարձավ սովետական բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորների խոր համոզմունքն ու վարքի նորմը։ Դա իր գործնական հաստատումն է գտել ՍՍՀՄ-ի՝ բազմազգ միասնական սոցիալիստական պետության կազմավորման ու զարգացման, սովետական բոլոր ժողովուրդների եղբայրական հզոր ու անքակտելի դաշինքում։

ՍՄԿԿ-ն հետևողական պրոլետարական ինտերնացիանալիզմի կուսակցություն է, միջազգային կոմունիստական շարժման առաջավոր, մարտական ու փորձված ջոկատը, այդ շարժման ավանգարդը, միջուկը։ Մեր կուսակցության պատմությունը, ողջ գործունեությունը եղել ու մնում են նրա ազգային և ինտերնացիոնալ խնդիրների զուգորդման վառ օրինակ։

Բոլշևիզմի ծագումը, հանդիսանալով շրջադարձային կետ, նոր փուլ սկզբնավորեց ո՛չ միայն Ռուսաստանի, այլև միջազգային բանվորական շարժման մեջ։ Պրոլետարական կուսակցության մասին լենինյան ուսմունքը, որը մեծագույն ավանդ է հեղափոխական մարքսիզմի գանձարանում, դարձել է միջազգային կոմունիստական մեծ բանակի սեփականությունը։

ՍՄԿԿ-ի անցած փառավոր ուղին, նրա փորձն ունեն ինտերնացիոնալ, համաշխարհային պատմական նշանակություն։ Ռուսաստանի պրոլետարիատի ազգային և ինտերնացիոնալ մեծագույն սխրագործությունն էր Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որի հաղթանակով նոր դարագլուխ բացվեց մարդկության պատմության մեջ, սկսվեց հեղափոխական անցումը



կապիտալիզմից սոցիալիզմին։ Մեր կուսակցությանն է վիճակվել ստեղծագործաբար կիրառել մարքս-լենինյան ուսմունքը, տեսականորեն հիմնավորել նոր հասարակարգի կառուցման օրինաչափությունները և գործնականում հարթել սոցիալիզմ տանող մինչ այդ ամենքին անծանոթ ճանապարհը, երկիրը դուրս բերել կոմունիստական շինարարության մայրուղին։

Հավատարիմ լենինյան ինտերնացիոնալիստական պատգամներին՝ ՍՄԿԿ-ն հետևողականորեն պայքարում է հանուն միջազգային կոմունիստական շարժման քաղաքական և գաղափարական համախմբվածության, բանվորական ու ազգային ազատագրական շարժման ծավալման։

* * *

Ստեղծելով կուռ և ամբողջական ուսմունք կուսակցության՝ որպես բանվոր դասակարգի հեղափոխական կազմակերպության բարձրագույն ձևի մասին, Լենինը համակողմանի հիմնավորեց այն դրույթը, որ կուսակցության ղեկավարությունը, նրա աճող դերն ու ազդեցությունը սոցիալիստական հեղափոխության, նոր հասարակարգի կառուցման ընդհանուր օրինաչափությունը, վճռական գործոնն են։ Այդ հետևությունը ներկայումս հաստատված է ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների օրինակով ու փորձով։

ՍՄԿԿ քաղաքական խորատեսությունը, բանականությունն ու անսասան կամքը, նրա կազմակերպող և ուղղություն տվող դերը ցայտուն դրսևորվում են մեր հայրենիքի հաղթական առաջընթացում։ Անցած տասնամյակներում կուսակցության ղեկավարությամբ մեր երկրում կատարվել են հեղափոխական խոր ու արմատական վերափոխումներ։ Բազմազգ միասնական սոցիալիստական պետության ստեղծումը, սովետական բոլոր ժողովուրդների բարեկամության հաստատումն ու ամրապնդումը սոցիալիզմի մեծ նվաճումն են, կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հաղթանակը։ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Երկրի բոլոր ժողովուրդների միավորումը միասնական միության մեջ, միասնական բազմազգ սոցիալիստական պետության ստեղծումը ընձեռեցին հայրենիքի սոցիալական, տնտեսական և կուլտուրական առաջընթացի չտեսնված հնարավորություններ։ Ասես, ինքը՝ պատմությունը, արագացրեց իր վազքը»։

Հիրավի, սովետական ժողովուրդների նյութական միջոցների ու ջանքերի կենտրոնացումը, նրանց եղբայրական փոխադարձ օգնությունն ու համագործակցությունը հնարավորություն ընձեռեցին արագաթափ զարգացնելու երկրի արտադրաուժերը, ստեղծելու սոցիալիստական հզոր էկոնոմիկա։ Բավական է նշել, որ 1922 թ. համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալն ավելացել է 320 անգամ։ Սովետական երկիրը դարձել է առաջավոր կուլտուրայի կենտրոնն աշխարհում։

Սակայն սոցիալիստական հասարակությունը բնութագրվում է ո՛չ միայն էկոնոմիկայի ու կուլտուրայի բարձր մակարդակով, այլև սոցիալական հարաբերություններում, հասարակության սոցիալ-քաղաքական կառուցվածքում տեղի ունեցած հեղափոխական վերափոխումներով։ Մեր երկրում վաղուց վերացել են անտագոնիստական դասակարգերը, հետևապես և՝ դասակարգային հակամարտությունը։

Սովետական հասարակությունը կազմված է բարեկամական դասակար-

գերից ու սոցիալական խմբերից։ Բանվոր դասակարգն ամենաբազմամարդն է, երկրի աշխատող բնակչության ավելի քան 55 տոկոսը։ Սակայն նրա տեղը հասարակության մեջ որոշվում է ո՛չ միայն թվական կազմով։ Բանվոր դասակարգը եղել ու մնում է հասարակության հիմնական արտադրաուժը, առաջատար դասակարգը՝ քաղաքական բարձր գիտակցությամբ, հեղափոխական ու աշխատանքային ավանդույթներով և աչքի է ընկնում իր կարգապահությամբ, կազմակերպվածությամբ ու կոլեկտիվիզմով։ Գյուղատնտեսության արտադրաուժերի աճը, գյուղատնտեսական աշխատանքի աստիճանական վերածումը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի, գյուղի կուլտուրայի ու կենցաղի վերակառուցումը, փոխել ու փոխում են կոլտնտեսային գյուղացիության դեմքն ու հոգեբանությունը։ Մեր հասարակության քաղաքական հիմքը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն է։ Մենք ունենք կոմունիզմի գործին նվիրված ժողովրդական մտավորականություն. տարեցտարի քաղաքում և գյուղում ավելանում է մասնավորապես գիտատեխնիկական աշխատողների թիվը։ Ամրապնդվել է բոլոր ազգերի աշխատավորների բարոյա-քաղաքական միասնությունը, ստեղծվել են կոմունիզմի անձնվեր կառուցողների, իսկական ինտերնացիոնալիստների սերունդներ։ Մեր երկրում լիովին և վերջնականապես լուծվել է ազգային հարցը։ Հասարակության տնտեսական, սոցիալական ու հոգևոր կյանքում կատարված խոր վերափոխումների հիման վրա կազմավորվել է մարդկանց պատմական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը։ Այն ձևավորվել է արտադրամիջոցների հանրային սեփականության հաստատման բազայի վրա, տնտեսական, սոցիալ-քաղաքական ու կուլտուրական կյանքի միասնության, մարքս-լենինյան գաղափարախոսության ընդհանրության հիման վրա։

ՍՄԿԿ ղեկավարությամբ սովետական ժողովրդի իրականացրած սոցիալ-տնտեսական վիթխարի վերափոխումների գլխավոր արգասիքը մեր երկրում զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումն է։ Զարգացած, հասուն սոցիալիզմ— հենց դա է բնութագրում սովետական հասարակության զարգացման արդի պատմական փուլը։ Այն տարբերվում է ժողովրդական տնտեսության, սոցիալիստական հասարակական հարաբերությունների, կուլտուրայի բարձր մակարդակով, ժողովրդական լայն մասսաների խոր գիտակցականությամբ։ Զարգացած սոցիալիստական հասարակության կառուցմամբ բանվոր դասակարգի կուսակցությունը դարձավ կոմունիզմ կառուցող սովետական ողջ ժողովրդի կուսակցությունը, նրա մարտական ավանգարդը։ Այժմ բանվոր դասակարգի նպատակներն ու իդեալներն ընդհանուր են դարձել մեր երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի համար։

Փառավոր նվաճումները, այն ամենը, ինչին հասել և ինչով այսօր իրավամբ հպարտանում է մեր ժողովուրդը, անխզելիորեն կապված է կուսակցության հեղափոխական-վերափոխիչ, ստեղծարար գործունեության հետ։ Հանձին ՍՄԿԿ-ի սովետական ժողովուրդը տեսնում է փորձված, իր շահերին անսահման նվիրված առաջնորդին, ուսուցչին ու կազմակերպչին, որն իմաստուն կերպով ու խորաթափանցությամբ նրան տարավ ծանր փորձությունների բովով, լուսավորեց և հարթեց առաջընթացի ուղին։

Մեր իրականությունը հաստատում է, նշել է Լ. Ի. Բրեժնևը, որ ՍՄԿԿ-ն պատվով է կատարում բանվոր դասակարգի ու բոլոր աշխատավորների քաղաքական ղեկավարի դերը, սովետական ժողովրդին առաջնորդում է ճիշտ ճանապարհով՝ լենինյան կուրսով։



* * *

Լենինի մեծագույն ծառայությունն այն է, որ նա խորապես բացահայտեց հասարակության առաջընթացում կուսակցության ղեկավար դերի աճի պատմական օրինաչափությունը, որն առավելապես դրսևորվում է հատկապես այժմ, կոմունիզմի կառուցման արդի փուլում։ Մեր զարգացմանը համընթաց ոչ թե նվազելու, ընդհակառակը, անշեղ աճելու է ՍՄԿԿ ղեկավար դերը։

Լինելով կառավարող կուսակցություն, ՍՄԿԿ-ն իր վրա է վերցրել ողջ պատասխանատվությունը երկրի ու նրա ժողովրդի ճակատագրի, պետության կառավարման, հասարակական-քաղաքական, տնտեսական ու կուլտուրական զարգացման համար։ Ուստի, նա մշտապես իր տեսադաշտում է պահում և ժամանակին լուծում ինչպես երկրի ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության հասունացած հարցերը, պրոբլեմները, ավելի ու ավելի ուժեղ ներգործում հասարակական կյանքի վրա։

Զարգացած սոցիալիստական հասարակության մեջ կուսակցության ղեկավար դերի աճի մասին ՍՄԿԿ XXIV համագումարի հետևությունները ունեն տեսական և գործնական մեծ նշանակություն։

Որո՞նք են այն գործոնները, որոնք պայմանավորում են կուսակցության ղեկավար դերի անշեղ աճը սովետական սոցիալիստական հասարակության զարգացման արդի փուլում։

Ամենից առաջ դրանք այն գործոններն են, որոնք բխում են ինչպես ներքին, այնպես էլ միջազգային բացառիկ վիթխարի ու բարդ խնդիրներից։

Սովետական ժողովրդի հերոսական ջանքերով ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, որը մեր հասարակության սոցիալ-քաղաքական հարաբերությունների ողջ սիստեմի հիմքն է։ Ներկայումս սովետների երկիրը տնտեսապես շատ հզոր է, ունի գիտատեխնիկական անսպառ պոտենցիալ, մասնագետների, տնտեսական ղեկավարների բազմաթիվ որակյալ կադրեր, ժողովրդական տնտեսության բացառապես նոր, հսկայական մասշտաբներ։ Հենց դա էլ հասարակության զարգացման ներկա փուլի կարևորագույն առանձնահատկությունն է։

Գնալով ընդլայնվում են կոմունիստական շինարարության վիթխարի թափն ու մասշտաբները, սովետական հասարակության մեջ անընդհատ տեղի են ունենում մեծագույն վերափոխումներ, տեղաշարժեր, ծնվում են նոր, ավելի բարդ պրոբլեմներ. օբյեկտիվ պատճառների հետ կապված, բացառված չէ նաև դժվարությունների երևան գալը։ Անգամ հասուն սոցիալիզմի պայմաններում դեռևս մնում են տվյալ հասարակությանը խորթ որոշ երևույթներ ու հետամնաց սովորույթներ, զգացվում են անցյալի մնացուկները։ Եվ, վերջապես, Սովետական Միությունը գոյություն ունի և զարգանում է ոչ թե աշխարհից մեկուսի, այլ մյուս պետությունների սիստեմում, միջազգային ասպարեզում դասակարգային սուր պայքարի իրադրության մեջ։

Ներկայումս հատկապես պարզորոշ է դառնում այն օրինաչափությունը, որ կոմունիզմի կառուցումը կարելի է իրականացնել միայն որպես կոմպլեքսային պրոցես, որը միաժամանակ ընդգրկում է հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական բոլոր գլխավոր հարցերը. ահա ինչու հասունացած

խնդիրների լուծման գործում պահանջվում է գիտականորեն հիմնավորված ռեալիստական մոտեցում։

Այս առումով իսկ անհրաժեշտություն են ՍՄԿԿ դերի ու նշանակության մեծացումը, քաղաքական և կազմակերպական ղեկավարման բարձր մակարդակը, մեր կյանքի բոլոր ասպարեզներում նրա ներգործության ուժեղացումը։

Կուսակցության գործունեության մեջ գլխավորն այն է, որ նա մշակում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը և քաղաքական ճիշտ գիծ, ժողովրդի բազմաբեղուն ստեղծարար աշխատանքին հաղորդում կազմակերպված, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ, կազմակերպում աշխատավորներին՝ հաջողությամբ իրականացնելու ծրագրված վիթխարի կանխագծումները։

Կուսակցության, սովետական ժողովրդի կյանքում մեծագույն իրադարձություն էր ՍՄԿԿ XXIV համագումարը, որը մշակեց առաջիկա ժամանակաշրջանի քաղաքական հստակ գիծը և գիտականորեն հիմնավորված տնտեսական քաղաքականության ծրագիրը. ո՛չ միայն կանխագծեց հասարակության առաջընթացի ուղին, այլև կազմակերպեց ու միավորեց սովետական մարդկանց ուժերն ու եռանդը ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի պլանը հաջողությամբ կատարելու նպատակով։

Իններորդ հնգամյակի գլխավոր խնդիրը համարելով էկոնոմիկայի արդյունավետության բարձրացումը և, դրա հիման վրա, ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքի ապահովումը, համագումարն ընդգծեց, որ դա լինելու է կուսակցության գործունեության առանցքը ո՛չ միայն առաջիկա հինգ տարում, այլև երկրի տնտեսական զարգացման ընդհանուր, տևական հեռանկարում։ Այդ միանգամայն բնականոն է, քանի որ իր գործունեության ողջ իմաստը կուսակցությունը համարում է աշխատավորների շահերին ազնվորեն ծառայելը, մարդկանց նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։

Հնգամյակի գլխավոր խնդիրը կենսագործելու նպատակով ՍՄԿԿ XXIV համագումարը հանձնարարեց արագացնել սոցիալիստական արտադրության զարգացման տեմպերը, բարելավել հանրային արտադրության համամասնությունները, բարձրացնել վերջինիս արդյունավետությունը, աշխատանքի արտադրողականությունը, ավելի լրիվ օգտագործել բոլոր ռեզերվները։ Մեր տնտեսական հաջողությունների հիմնական, անսպառ աղբյուրը գիտատեխնիկական առաջընթացն է. կուսակցության համագումարն անհրաժեշտ համարեց խորացնել գիտատեխնիկական հեղաշրջումը, կատարելագործել երկրի պետական ու տնտեսական կառավարումը։ Եվ, վերջապես, սոցիալիստական արտադրության վերելքի հեռանկարային աղբյուրներ կան աշխատանքի միջազգային բաժանման և սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի մեջ։

Կոմունիստական շինարարության պրոցեսում, գիտատեխնիկական հեղափոխության ծավալման պայմաններում, տեղի են ունենում սոցիալական խոշոր վերափոխումներ։ Բարձրանում են բանվորների ու գյուղացիների պրոֆեսիոնալ պատրաստականությունն ու վարպետությունը, նրանք դառնում են ավելի կիրթ ու կուլտուրական, աստիճանաբար հաղթահարվում են քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները, զարգանում են ազգային հարաբերությունները, տեղի են ունենում սոցիալիստական ազգերի հետագա ծաղկում և աստիճանական մերձեցում։ Այդ բոլոր



բնագավառներում պահանջվում է կուսակցական, գաղափարա-քաղաքական և կազմակերպական ղեկավարման բարձր մակարդակ։

Երկրորդ գործոնը աշխատավորական մասսաների ստեղծագործական ակտիվության վերելքն է, միլիոնավոր նոր աշխատավորների ներգրավումը պետական գործերի և արտադրության կառավարման մեջ։

«Կոմունիզմի կառուցումը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— ժողովրդի ձեռքի, նրա եռանդի, նրա բանականության գործն է»։

Ելնելով պատմության մեջ ժողովրդական մասսաների վճռական դերից՝ կուսակցությունը շահագրգռված է և ամեն ինչ անում է նոր կյանքի կառուցման բոլոր ասպարեզներում աշխատավորների ստեղծագործական ակտիվության անշեղ աճի, յուրաքանչյուր սովետական մարդու ընդունակությունների լիակատար դրսևորման, դրանց համակողմանի զարգացման համար։

Մեր երկրում կուսակցությունն ու ժողովուրդը միաձույլ են, միասնական։ Հենց դրանում է ՍՄԿԿ-ի ուժը։ Միշտ մասսաների հետ, նրանց ավանգարդում— ահա մեր կուսակցության կարևորագույն առանձնահատկությունը։ Կուսակցության գործը, նրա պլաններն ու ծրագրերը համարելով իրենց սեփականը, սովետական բոլոր մարդիկ աշխատանքն ու բանականությունը, ստեղծագործական եռանդը նվիրաբերում են դրանց իրականացմանը։ Օրավուր ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը, ի հայտ են գալիս կոմունիստական աշխատանքի նորանոր հերոսներ։

Ժողովրդական լայն մասսաների քաղաքական և աշխատանքային խանդավառության բուռն վերելքի պայմաններում ավելի ու ավելի են մեծանում կուսակցության դերն ու պատասխանատվությունը։ Նա կոչված է ավելի սերտացնելու իր կապերն աշխատավորների հետ, կազմակերպելու, ուղղություն տալու նրանց ստեղծարար աշխատանքին, նորանոր մարդկանց դարձնելու պետական ու հասարակական գործերի և արտադրության կառավարման անմիջական մասնակիցը։ Դա մեր հաղթանակի մեծագույն երաշխիքն է։

ՍՄԿԿ-ն վայելում է սովետական ողջ ժողովրդի անսահման վստահությունն ու ընդհանուր աջակցությունը։ Կուսակցության մտահղացումներն ու պլաններն այսօր համակել են միլիոնավոր մարդկանց սրտերն ու մտքերը՝ մղելով նրանց աշխատանքային սխրանքների։

Մյուս գործոնը սոցիալիստական դեմոկրատիայի առավել զարգացումն է, հասարակական կազմակերպությունների դերի մեծացումը, միութենական հանրապետությունների և տեղական կազմակերպությունների իրավունքների ընդլայնումը։

Համակողմանի կատարելագործելով սովետական քաղաքական սիստեմը՝ ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է նվիրում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա խորացմանը, հասարակության կյանքում աշխատավորների դեպուտատների սովետների, արհմիությունների, կոմերիտական և մասսայական հասարակական այլ կազմակերպությունների դերի բարձրացմանը։ Լենինյան կուսակցությունն իր ծրագրերն իրականացնում է ինչպես անմիջականորեն, այնպես էլ սովետների, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների միջոցով, զարգացնելով ու խրախուսելով վերջիններիս ստեղծագործական նախաձեռնությունը։ «Սոցիալիստական կարգերի կարևոր առանձնահատկությունն այն է,— ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— որ մեր երկրում հասարակության կառավարմանը աշխատավոր-

ների մասնակցությունն իրականացվում է ո՛չ միայն պետական մարմինների միջոցով, այլև աշխատավորության մասսայական կազմակերպությունների ճյուղավորված ցանցի միջոցով և առաջին հերթին այնպիսի կազմակերպությունների, ինչպիսիք են արհմիությունները և կոմերիտմիությունը»։

Լայն աշխատանք է ծավալվում երկրի դեմոկրատական ինստիտուտների հետագա համակողմանի զարգացման ու կատարելագործման, պետության կառավարմանը բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցությունն ապահովելու մարզում։ Մեր երկրում ժողովրդապետության ամենացայտուն արտահայտությունն են աշխատավորների դեպուտատների սովետները։ Մեծապես բարձրացել է սովետների դերը, ընդլայնվել են նրանց իրավունքները, օրենսդրորեն հաստատվել է դեպուտատների ստատուսը և այլն։ Մշտապես կատարելագործվում է սովետական օրենսդրությունը, ընդլայնվում են միութենական հանրապետությունների իրավունքները։

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման գործում մեծ է աշխատավորական կոլեկտիվների դերը. դրանցում են ձևավորվում աշխատավորների նոր, սոցիալիստական հատկանիշները, ստեղծվում բարեկամության և փոխօգնության հարաբերություններ։

Արհմիությունները կառավարման դպրոց են, տնտեսավարման, կոմունիզմի դպրոց։ Կուսակցությունը ձգտում է այնպես անել, որ արհմիությունները հաջողությամբ կատարեն իրենց դերը, աշխատավորներին ավելի ակտիվ ներգրավեն արտադրության կառավարման, հասարակական գործերում, բարելավեն սոցիալիստական մրցության կազմակերպումը, մարդկանց դաստիարակեն աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։

Աճում է լենինյան կոմերիտմիության՝ կուսակցության ռեզերվի ու մերձավորագույն օգնականի դերը։ Կուսակցության XXIII համագումարից մինչև XXIV համագումարն ընկած ժամանակաշրջանում կուսակցության շարքերն են անցել 1 միլիոն 350 հազար կոմերիտականներ, այսինքն՝ կուսշարքերը համալրողների 45 տոկոսը։ Լենինյան կոմերիտմիությունը, սովետական փառապանծ երիտասարդությունը, ինչպես սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում, այնպես էլ այժմ, դրսևորում է իր անսահման նվիրվածությունը կուսակցության գործին։

Կուսակցության ղեկավար դերի աճն ապահովող հետևյալ գործոնը գիտական կոմունիզմի տեսության, նրա ստեղծագործական զարգացման ու պրոպագանդման աճող նշանակությունն է, աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը կազմակերպելու անհրաժեշտությունը։

ՍՄԿԿ-ն գիտական կոմունիզմի կուսակցություն է, որն իր ողջ գործունեության ընթացքում անշեղ առաջնորդվում է մարքս-լենինյան ուսմունքով։ Այն կուսակցության գաղափարա-քաղաքական հիմքն է, մեր զարգացման հզոր լուսարձակը։

Հասարակության մեջ կուսակցության ղեկավար դերի աճն օրգանապես կապված է մարքս-լենինյան տեսության հետագա ստեղծագործական զարգացման, մասսաների շրջանում տարվող գաղափարական աշխատանքի բարելավման հետ։ Վերջին տարիներին կուսակցության տեսական միտքը հարըստացավ նոր հետևություններով ու դրույթներով։ ՍՄԿԿ ծրագրում, կուսակցության XXIII և XXIV համագումարների նյութերում, Կենտկոմի պլենումների որոշումներում և այլ փաստաթղթերում ընդհանրացվեց սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համաշխարհային հեղափոխական փորձը, սահմանվեցին կոմունիստական շինարարության արդի փուլի օրինաչափությունները, վերհանվեցին կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության արմատական հարցերը։



Կոմունիզմի կառուցման պրոցեսի բաղկացուցիչ մասն է կազմում նոր մարդու ձևավորումը, նրա համակողմանի ու ներդաշնակ զարգացումը։ Կուսակցությունը վիթխարի գործ է կատարել սովետական մարդկանց գաղափարա-քաղաքական դաստիարակության, նրանց կուլտուրայի, կրթության մակարդակի, հասարակական ինքնագիտակցության բարձրացման ասպարեզում։ Հարուստ և բազմազան է դարձել մեր ժողովրդի հոգևոր աշխարհը, նա ապրում է բուռն, լիարժեք կյանքով։ Ինչպես ընդգծված է ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերում, կուսակցության գաղափարա-դաստիարակչական ողջ աշխատանքի միջուկը աշխատավորության հոծ մասսաների շրջանում կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն է, նրանց դաստիարակությունը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով։ Կուսակցությունը մշտապես ջանում է, որ սովետական մարդիկ լինեն իսկական հայրենասերներ ու ինտերնացիոնալիստներ, անհաշտ լինեն բուրժուական գաղափարախոսության նկատմամբ։ Միաժամանակ կուսակցությունն աշխատավորներին համակում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։

Եվ, վերջապես, կուսակցության դերի աճը պայմանավորված է նաև միջազգային, արտաքին քաղաքական հարցերում նրա վարած քաղաքականությամբ։

ՍՄԿԿ և սովետական կառավարության արտաքին քաղաքականությունը դասակարգային է, սոցիալիստական, որի նպատակն է ստեղծել արտաքին բարենպաստ պայմաններ մեր երկրում կոմունիստական շինարարության համար, ամրապնդել սոցիալիստական համագործակցությունը, աջակցել բանվորական և ազգային-ազատագրական շարժմանը, աշխարհում հաստատել կայուն խաղաղություն։

ՍՄԿԿ-ն մեծ հաջողությունների է հասել լենինյան խաղաղասիրական և միջազգային կոնստրուկտիվ քաղաքականության իրականացման մարզում, ապահովելով խաղաղությունն ու մարդկության սոցիալական առաջընթացը։ Հետևողականորեն կենսագործվում է կուսակցության XXIV համագումարում մշակված խաղաղության ծրագիրը, դրանով իսկ նպաստելով միջազգային մթնոլորտի բարելավմանը և լարվածության թուլացմանը։ Կուսակցության խաղաղության ծրագիրը խորապես ներգործում է ամբողջ աշխարհի իրադրության վրա, ամրապնդելով համաշխարհային սոցիալիզմի դիրքերը, խթանելով բանվորական և ազգային-ազատագրական շարժմանը։ Կուսակցության միջազգային քաղաքականության խնդիրների լուծման գործում մեծ ավանդ է ներդնում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը։

Սովետական ժողովուրդը ջերմորեն պաշտպանում է ՍՄԿԿ ներքին և արտաքին իմաստուն քաղաքականությունը, ավելի ու ավելի սերտորեն է համախմբվում իր ավանգարդի շուրջը։ Կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի բազմազգ աշխատավորները գործի են վերածում կոմունիստական շինարարության հոյակապ պլանները, վստահ ու աներեր ընթանում նոր կյանքի կառուցման ուղիով։

# ՆԵՐԳՈՐԾՈՒՆ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՈՒՍՈՒՑՄԱՆ ՀԱՄԱՐ

**Ա. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
Հանրապետական բաղլուստան վարիչ, ՀԿԿ
Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի
բաժնի վարիչի տեղակալ

*Նոր, կոմունիստական հասարակարգի կառուցման համար ՍՄԿԿ-ի, սովետական ժողովրդի ծավալած ստեղծարար գործունեությունը խարսխված է մարքսիզմ-լենինիզմի տեսական գրանիտե հիմքերի վրա։ «Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— անկարելի է առաջ շարժել, առանց իր՝ մարդու բազմակողմանի զարգացման։ Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցականության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութա-տեխնիկական համապատասխան բազայի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110)։*

*Այժմ սովետական ժողովուրդը կուսակցության ղեկավարությամբ իրականացնում է մեր երկրի ներքին և արտաքին կյանքի բարդ և կարևորագույն խնդիրները, որոնք առաջադրել է XXIV համագումարը։ Ծավալելով սոցիալիստական գործարար մրցություն՝ աշխատավոր մարդիկ ձգտում են հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա խնդիրների լուծմամբ կայուն հիմք ստեղծել իններորդ հնգամյակի պլանները լիովին կատարելու համար։*

*ՍՄԿԿ Կենտկոմի և անձամբ Լ. Ի. Բրեժնևի համառ և հետևողական ջանքերով իրականացվում է ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագիրը, որի շնորհիվ փաստորեն շրջադարձ է կատարվում «սառը պատերազմից» դեպի միջազգային մթնոլորտի ջերմացում, բարենպաստ պայմաններ են ստեղծվում մեր երկրում կոմունիզմի, ժողովրդադեմոկրատական երկրներում՝ սոցիալիզմի կառուցման, համաշխարհային սոցիալիստական սիստեմի, սոցիալիզմի և դեմոկրատիայի դիրքերի ամրապնդման ու ժողովուրդների անվտանգության համար։*

*Այս ամենը ինքնըստինքյան բնորոշում է քաղաքական և տնտեսագիտական կրթության հետագա բարելավման ու կատարելագործման գլխավոր ուղղությունը։ Քաղուսուցումը կուսկազմակերպությունների գաղափարական գործունեության խնդիրն է։ «Կոմունիստների գաղափարական կոփումը,— ասված է*



*ՍՄԿԿ XXIV համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— մեր կուսակցության շարքերի մարտունակության բարձրացման անհրաժեշտ պայմանն է» (Նույն տեղը, էջ 138)։*

*Անցած՝ 1972—1973 ուստարում հանրապետության կուսուսուցման սիստեմում կոմպլեկտավորվել էին 1.065 տարրական քաղդպրոց, որտեղ ընդգրկված էր 19.541 մարդ, 2.779 մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոց՝ 53.792 ունկնդրով, 2.384 տեսական և մեթոդոլոգիական սեմինար՝ 52.896 ունկնդրով։ Հանրապետության կուսակցական ուսուցման սիստեմի բարձրագույն ձևը ներառնում է նաև Երևանի և Լենինականի կուսակցության քաղաքային կոմիտեներին կից մարքսիզմ-լենինիզմի համալսարանները, որոնք ունեն 2.455 ունկնդիր։ 3.433 մարդ է ընդգրկված ՀԿԿ Կենտկոմին և քաղկոմշրջկոմներին կից ղեկավար աշխատողների 55 դպրոցներում ու սեմինարներում։*

*Այսպիսով, ինչպես ամբողջ Միության մեջ, այնպես էլ մեր հանրապետությունում ստեղծվել է միլիոնների յուրօրինակ մի համալսարան՝ իր տարրական, միջին և բարձր օղակներով։ Նրանցում ընդգրկված 138.477 ունկնդիրներից 121.420-ը կոմունիստներ են։*

*Կուսակցական ուսուցման ներկայիս սիստեմը լրիվ համապատասխանում է հանրապետության կուսկազմակերպության անդամների կրթական մակարդակին (1973 թ. հունվարի 1-ի տվյալներով Հայաստանի կոմկուսի շարքերում կար 134.469 մարդ, որից 32,5 տոկոսն ունի տարրական ու թերի միջնակարգ, 36 տոկոսը՝ միջնակարգ և 31,5 տոկոսը՝ թերի բարձրագույն ու բարձրագույն կրթություն)։*

*Անցյալ ուսումնական տարում հատուկ ուշադրություն նվիրվեց ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած տեսական և քաղաքական պրոբլեմների, կուսակցության տնտեսական քաղաքականության, լենինյան ազգային քաղաքականության, ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության պրոբլեմների ուսումնասիրմանը։ Կուսակցական ուսուցման արդյունավետ կազմակերպման լավ օրինակներ տվեցին Երևանի Սպանդարյանի, Սովետականի, Շահումյանի, Լենինականի, Կիրովականի, Դիլիջանի, Սպիտակի, Հոկտեմբերյանի, Մասիսի, Արտաշատի, Սիսիանի և ուրիշ շրջանային կուսկազմակերպությունները։ Նրանցում կուսակցական ուսուցումը բնորոշվում է ունկնդիրների աշխատանքային ակտիվության բարձրացմամբ և բարոյական նորմերի պահպանմամբ, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմամբ։*

*Ցավոք, ոչ բոլոր կուսկազմակերպություններում է կոմունիստների ուսուցման գործը բարվոք վիճակում։ Առանձին խմբակներում պրոպագանդիստները և ունկնդիրները բարեխիղճ կերպով չէին պարապում, լրացուցիչ գրականություն և մարքսիզմ-լենինիզմի աշխատություններ չէին մշակում։ Որոշ խմբակների պարապմունքներ փաստորեն վեր էին ածվում խորհրդակցությունների, անհատական պլաններով ուսուցումը կրում էր ձևական բնույթ։*

*Քիչ չեն նաև այն կազմակերպությունները, որտեղ պրոպագանդիստական աշխատանքը տարվում էր կյանքից կտրված, ուսուցումը դառնում էր կարծես ինքնանպատակ, քանի որ այն ընթանում էր մի, իսկ ձեռնարկության կյանքը՝ մի այլ ուղղությամբ։ Պրոպագանդիստները և ունկնդիրները կարծես ոչ միայն չէին անհանգստանում իրենց շուրջը նկատվող հակահասարակական երևույթների համար, այլև չէին նկատում դրանք, չէին կարողանում այնպիսի հասարակական կարծիք ստեղծել կարգը խախտողների նկատմամբ, որպեսզի նրանց*

ոտքի տակ հողը փլվեր։ Այլապես ինչո՞վ կարելի է բացատրել, որ, երբ ծանոթանում ես Երևանի 2976 ավտոշարասյան կազմակերպության գործունեությանը, արտաքուստ ամեն ինչ կարգին է. պլանները կատարվում են, քաղաքական աշխատանքը ծավալվում է, խմբակները գործում են, դասախոսությունները կարդացվում են, ընկերական դատարանը գործում է, բայց կոլեկտիվի անդամներն այս տարի կատարել են քրեական յոթ հանցագործություն։ Կամ մի ուրիշ օրինակ. Երևանի Սպանդարյանի շրջանի առևտրական կազմակերպություններից մեկում՝ պտուղբանջարառում, հաջողությամբ էին անցնում քաղխմբակի պարապմունքները, ունկնդիրները հաճախ ակտիվ ելույթներ էին ունենում, պարզաբանում բնակչությանը լավ սպասարկելու մասին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների քաղաքական նշանակությունը։ Բայց նրանցից 12-ը այս տարի չարաշահման առիթ են տվել և կուսակցական տույժ ստացել։

Ելնելով արդի պահանջներից և ՍՄԿԿ Կենտկոմի «Աշխատավորության տնտեսագիտական կրթության կազմակերպման մասին» որոշումից՝ հանրապետության կուսկազմակերպություններն անցած ուսումնական տարում առավել արդյունավետ կերպով զբաղվեցին տնտեսագիտական կրթության հարցերով։ Կուսակցական, կոմերիտական ուսուցման և կոմունիստական աշխատանքի դպրոցների ու ժողովրդական համալսարանների կողքին ստեղծվել է աշխատավորության տնտեսագիտական կրթության մի ամբողջական սիստեմ՝ իր տարրական, միջին և բարձր օղակներով։

Տնտեսագիտական տեսությունը, կուսակցության տնտեսական քաղաքականությունը և տնտեսավարման պրակտիկան ուսումնասիրում է 236.856 մարդ։ Միայն կուսակցական ուսուցման սիստեմում 55.038 մարդ, այսինքն՝ ունկնդիրների մոտ 40 տոկոսն ուսումնասիրում է կուսակցության տնտեսագիտական տեսությունն ու քաղաքականությունը։ Տնտեսական գիտելիքները դառնում են արտադրության արդյունավետության բարձրացման և կառավարման կատարելագործման, տնտեսավարման բարելավման ու սոցիալիստական մրցության զարգացման, գիտակից և որակյալ աշխատողների պատրաստման ու դաստիարակման կարևոր պայմաններից մեկը։

Հանրապետությունում աշխատավորության տնտեսագիտական կրթության գործը հատկապես լավ է կազմակերպված ավտոմոբիլային, թեթև արդյունաբերության և կապի մինիստրություններում։ Նրանց ենթակա ձեռնարկություններում ստեղծվել և լավ գործում էին տնտեսագիտական կրթության խորհուրդներ, որոնք սիստեմատիկ մեթոդական և պրակտիկ օգնություն էին ցույց տալիս տեղական կազմակերպություններին։

Նույնը, իհարկե, չի կարելի ասել գյուղատնտեսության, շինանյութերի արտադրության մինիստրությունների և առանձին կուսկազմակերպությունների ճյուղային բաժինների հասցեին, որոնք դեպքից դեպք են զբաղվում աշխատավորության տնտեսագիտական կրթության հարցերով։ Շատ խմբակներում հաճախ թերագնահատվում է ուսումնասիրվող առարկաների տեսական կողմը, հարցերը մշակվում են կոնկրետ պրակտիկայից կտրված, պրոպագանդիստների զգալի մասն անհրաժեշտ մեթոդական օգնություն չի ստանում։

Նոր ուսումնական տարում տնտեսագիտական կրթության սիստեմում բոլոր առարկաները կուսումնասիրվեն յոթ տիպի երկամյա տնտեսագիտական դպրոցների տիպային ուսումնական պլաններով ու ծրագրերով։ Տնտեսագիտական կրթության մեջ չպետք է թույլ տալ ուսումնական պրոցեսն անհիմն արա-



գացնելու փորձեր։ Իսկ ինչպե՞ս պետք է կազմակերպել տնտեսագիտական ուսուցումը կուսակցական կրթության սիստեմում։ Տարրական օղակում ուսանելու են տնտեսական գիտելիքների հիմունքները, միջին օղակում՝ լրիվ ծրագիրը կամ քաղաքատնտեսությունն ավարտելուց հետո կարող են պարապել տնտեսագիտական դպրոցների երկու տարվա ծրագրով, բանվոր-ծառայողները կուսումնասիրեն «Տնտեսական գիտելիքների հիմունքները», իսկ կառավարման միջին օղակի ղեկավարները՝ «Արտադրության էկոնոմիկայի կառավարման հիմունքները» դասընթացը։

Պաշտպանելով քաղաքական ուսուցման սիստեմի գլխավոր սկզբունքները՝ արդի էտապի հրատապ խնդիրներին համապատասխան, տարեցտարի կատարելագործվում են քաղաքական ուսուցման կառուցվածքն ու ձևերը, անհրաժեշտ լրացումներ և փոփոխություններ են արվում ուսումնական պլանների ու ծրագրերի մեջ։ Օրինակ, նոր, 1973—1974 ուստարում կուսակցական ուսուցման տարրական քաղդպրոցների ծրագրերի հիմնական բովանդակությունը, ինչպես և առաջ, կկազմի Վ. Ի. Լենինի կենսագրության, քաղաքական և տնտեսագիտական հիմունքների ուսումնասիրությունը։ Իսկ այն ունկնդիրները, որոնք ավարտել են ուսուցումը տարրական օղակում, բայց դեռ նախապատրաստված չեն մարքսիզմ-լենինիզմի բաղկացուցիչ մասերը սիստեմատիկաբար ուսումնասիրելու համար, պետք է ուսումնասիրեն կուսակցության և կառավարության ընթացիկ փաստաթղթերը, իսկ ավելի պատրաստվածները՝ կուսակցության պատմության հանրամատչելի դասընթացը, կոմունիստական բարոյականության հիմունքները։

Կուսակցական ուսուցման միջին օղակի այն ունկնդիրները, որոնք ավարտել են ծրագրով նախատեսված ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության և գիտական կոմունիզմի դասընթացների ուսումնասիրումը, բայց պատրաստ չեն կուսակցական ուսուցման բարձր օղակում պարապելու, կընդգրկվեն միջին օղակի մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում, որտեղ կուսումնասիրեն արտադրության էկոնոմիկայի և կառավարման հիմունքները, կուսակցական շինարարության հարցերը, ավելի խոր՝ մարքսիզմ-լենինիզմի բաղկացուցիչ մասերից որևէ մեկը՝ սկզբնաղբյուրների օգտագործմամբ։

Կուսակցական ուսուցման բարձր օղակում ստեղծվել և զարգանում է ղեկավար կադրերի, մտավորականության տարբեր կատեգորիաների և ժողովրդական տնտեսության մասնագետների քաղաքական ու տնտեսագիտական կրթության դիֆերենցված սիստեմ։ Այստեղ, ուսուցումը կազմակերպելիս, հաշվի են առնվում ունկնդիրների հետաքրքրասիրությունները և աշխատանքային ու հասարակական գործունեության բնույթը։ Կուսակցական ուսուցման բարձր օղակի մեջ են մտնում ՀԿԿ Կենտկոմին և քաղկոմ-շրջկոմներին կից սեմինարները և կուսակցական ակտիվի դպրոցները, Երևանի և Լենինականի քաղկոմներին կից մարքսիզմ-լենինիզմի համալսարանները, տեսական-մեթոդոլոգիական սեմինարները և անհատական պլաններով պարապողները։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի պրոպագանդայի բաժինն անցկացրեց կուսակցության քաղկոմների քարտուղարների հատուկ խորհրդակցություն, Տաշքենդում և Թբիլիսիում՝ գաղափարական աշխատողների միջհանրապետական կոնֆերանսներ, որոնք կնպաստեն քաղաքական լուսավորության սիստեմի բարելավմանն ու կատարելագործմանը։ Ընթացիկ տարվա հուլիսի 4—6-ը Թբի-

լիսիում անցկացված «Ղեկավար կադրերի քաղաքական և տնտեսագիտական ուսուցման արդյունավետության բարձրացման ուղիները» թեմայով գիտապրակտիկ կոնֆերանսում զեկուցումներով հանդես եկան Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Է. Ա. Շևարդնաձեն, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Ռ. Հ. Խաչատրյանը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Դ. Պ. Գուլիևը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Վ. Մ. Սիրաձեն։ Մտքերի փոխանակությանը մասնակցեցին Անդրկովկասի կուսկազմակերպությունների ներկայացուցիչները։ Կոնֆերանսի աշխատանքներն ամփոփեց ՍՄԿԿ Կենտկոմի պրոպագանդայի բաժնի վարիչի տեղակալ Վ. Ա. Մեդվեդևը։

Կոնֆերանսի ընթացքում շեշտվեց այն միտքը, որ կուսակցական ուսուցման արդյունավետությունը, նրա ներգործունության ուժը պետք է առաջին հերթին բնորոշել կադրերի պրակտիկ գործունեությամբ, տնտեսության բարելավմամբ, որ այլևս չի կարելի հանդուրժել, երբ ղեկավար կադրերի մի մասը իր պրակտիկ գործունեության մեջ թույլ տված սխալները թաքցնում է քաղաքական աշխատանքին «բարեխիղճ» մասնակցելու վերաբերյալ վերամբարձ ելույթներով։

ՍՄԿԿ Կենտկոմը նպատակահարմար է գտնում, որ այսուհետև յուրաքանչյուր կուսակցական կոմիտե անմիջականորեն զբաղվի իր նոմենկլատուրային ղեկավար կադրերի դաստիարակությամբ, քաղաքական ու տնտեսագիտական պատրաստությամբ։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, քաղկոմների ու շրջկոմների նոմենկլատուրային աշխատողների ճնշող մասը՝ 87 տոկոսը, առայժմ սովորում է սկզբնական և քաղաքային ու շրջանային կուսկազմակերպություններին կից սեմինարներում՝ անհատական պլաններով։ Իսկ ՀԿԿ Լենինականի և, հատկապես, Երևանի քաղկոմին կից մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում քիչ ղեկավար աշխատողներ են պարապում, մինչդեռ հենց մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում են կենտրոնացված առավել որակյալ դասախոսները, որոնք ի վիճակի են ապահովելու ուսուցման բարձր մակարդակը։ Այս կապակցությամբ պետք է ասել, որ արդեն ժամանակն է ձեռնարկելու բոլոր միջոցները, որպեսզի 1973—1974 ուստարվանից մարքսիզմ-լենինիզմի համալսարան ստեղծվի նաև ՀԿԿ Կիրովականի քաղաքային կոմիտեին կից։

Աշխատավորների քաղաքական ու բարոյական դաստիարակության մեթոդներին, տնտեսական ու տեխնիկական գիտելիքներին, արտադրության առաջավոր փորձին տիրապետելու գործում կարևոր տեղ է պատկանում պրոպագանդիստական աշխատանքի այնպիսի մասսայական ձևերին, ինչպիսիք են կոմունիստական աշխատանքի դպրոցները և ժողովրդական համալսարանները։ Հանրապետությունում այժմ գործում են 2.301 կոմունիստական աշխատանքի դպրոցներ և 361 ժողովրդական համալսարաններ, որտեղ համապատասխանաբար ընդգրկված են 49.820 և 36.897 ունկնդիրներ։

Ժողովրդական համալսարանների նկատմամբ աճում է մարդկանց հետաքրքրասիրությունը, ավելի բազմազան են դառնում նրանց ուսումնական ծրագրերը և թեմատիկան։ Ինչ վերաբերում է կոմունիստական աշխատանքի դպրոցներին, ապա դրանք դարձել են բանվորների ու կոլտնտեսականների սիստեմատիկ ուսուցման ձև։

Ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. հուլիսին «Կոմունիստական



աշխատանքի դպրոցների գործունեության բարելավման մասին» որոշման մեջ, այդ դպրոցները աշխատավորների շրջանում մասսայական-քաղաքական աշխատանքի կազմակերպման, տնտեսական գիտելիքների և առաջավոր արտադրական փորձի պրոպագանդման, նրանց սոցիալիստական մրցության մեջ ներգրավելու և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակության կարևոր օջախներ են։

Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կոմունիստական աշխատանքի մի շարք դպրոցներում ուսուցման որակը դեռևս ցածր է, չեն կազմակերպվում հարցերի կոլեկտիվ քննարկումներ, էքսկուրսիաներ։ Շատ տեղերում չեն հետևում, որ հանձնարարված գրականությունն ինքնուրույն ուսումնասիրվի և այլն։ Առանձին շրջաններում նույնիսկ անհիմն կերպով սակավաթիվ են կոմունիստական աշխատանքի դպրոցները։ Կոմունիստական աշխատանքի դպրոցները կազմակերպչորեն ամրապնդելու, նրանց սիստեմատիկ մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով, ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ հանրապետական և մարզային քաղլուստներին տրվել է կոնսուլտանտ-մեթոդիստի դրույք, որը պետք է կոորդինացնի արհմիությունների և կոմերիտական կազմակերպությունների ջանքերը՝ կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեությունը բարելավելու համար։

ՍՄԿԿ-ն միշտ էլ հատուկ ուշադրություն է նվիրել աճող սերնդի գաղափարական դաստիարակության, նրանց աշխատանքային և ստեղծագործական ակտիվության բարձրացման վրա։ Հանրապետության կոմերիտական կազմակերպությունն ունի քաղաքական ուսուցման կուռ սիստեմ։ Անցած ուսումնական տարում հաջողությամբ գործում էին տարրական, միջին և բարձր օղակի 3.535 խմբակներ ու սեմինարներ, որտեղ ընդգրկված էին 101.745 երիտասարդներ, որոնցից 81.625-ը կոմերիտականներ էին։ Անցած ուսումնական տարում նրանք տարրական օղակում ուսումնասիրել են Վ. Ի. Լենինի կենսագրությունը, մեր լենինյան կոմերիտմիությունը, քաղաքական գիտելիքների հիմունքները առարկաները, միջին օղակում՝ կուսակցության մասին զրույցներ, տնտեսական գիտելիքների հիմունքները (բանվոր և գյուղական երիտասարդության համար առանձին ծրագրերով) և կոմունիստական բարոյականության հիմունքները, բարձր օղակում՝ մարքս-լենինյան տեսության հրատապ պրոբլեմները։ ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ 1972—1973 քաղուսուցման տարին ավարտվեց «ՍՄԿԿ-ի հերոսական ճանապարհը» համամիութենական լենինյան դասով, որին մեր հանրապետությունում մասնակցեցին մոտ 400 հազար պատանի ու աղջիկ, որից ՀամԼԿԵՄ անդամներ՝ 300 հազար։

1973—1974 ուսումնական տարում կոմերիտական կրթության սիստեմում մտցվել են մի շարք նորույթներ։ Քաղխմբերում կուսումնասիրվի նոր դասընթաց՝ «Զրույցներ կուսակցության մասին»։ Ուսումնական ծրագիրն այսուհետև կոչվելու է «Երիտասարդությանը կուսակցության մասին»։ Ավելի մեծ ուշադրություն է նվիրվելու ՍՄԿԿ ժամանակակից գործունեությունը և քաղաքականությունը, Կոմերիտմիության, աճող սերնդի նկատմամբ կուսակցության մշտական հոգատարությունը, Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործին կոմերիտմիության մասնակցությունը խնդիրների ուսումնասիրմանը։ Սեմինարների նոր ծրագիրը կընդգրկի «ՍՄԿԿ XXIV համագումարը կուսակցության և սովետական կառավարության արտաքին քաղաքական գործունեության մասին» թեման։ Բացի այդ, կոմերիտմիությունը Վ. Ի. Լենինի անունով կոչե-

չու 50-ամյակի նախապատրաստման կապակցությամբ հանձնարարվում է լենինյան դաս անցկացնել՝ «Սովորել, աշխատել և պայքարել Լենինի նման» թեմայով:

Ներկա էտապում, երբ հիմնականում կազմակերպչորեն ամրապնդված է քաղաքական և տնտեսագիտական կրթության սիստեմը, առաջին պլանի վրա է մղվում ուսուցման գաղափարական բարձր մակարդակի, ներգործունության, արդյունավետության և մատչելիության ապահովումը: Քաղաքական ուսուցման այս գլխավոր խնդիրների լուծումը, առաջին հերթին, պայմանավորված է պրոպագանդիստական կադրերով, նրանց գիտելիքների և մեթոդական վարպետության մակարդակով: Հանրապետության կուսակցական ու կոմերիտական լուսավորության ցանցում աշխատում են 9.145, իսկ տնտեսագիտական կրթության սիստեմում՝ 4.379 պրոպագանդիստներ: Պրոպագանդիստների 99 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, պրոպագանդիստական աշխատանքի երկար տարիների փորձ: Պրոպագանդիստական գործունեության մեջ ներգրավված են ղեկավար աշխատողներ, մասնագետներ, գիտնականներ: Երևանում 1.859 ղեկավար կադրեր (այսինքն՝ ամեն մի երկրորդ ղեկավար աշխատողը) 1972—1973 ուստարում կատարում էին պրոպագանդիստական աշխատանք: Միայն Սպանդարյանի շրջանում 50-ից ավելի մինիստրներ, պետական կոմիտեների նախագահներ և նրանց տեղակալներ կուսակցական ուսուցման սիստեմի պրոպագանդիստներ են: Հանրապետությունում հայտնի են այնպիսի անվանի պրոպագանդիստների անուններ, ինչպիսիք են՝ Հ. Ն. Նալբանդյանը, Վ. Ս. Ներսիսյանը, Ժ. Գ. Սագինյանը (Երևան), Շ. Ո. Ոսկանյանը (Դիլիջան), Ե. Ս. Ղազարյանը (Կիրովական), Գ. Կ. Սարգսյանը (Լենինական), Ա. Մ. Միրիբյանը (Արտաշատ), Ս. Հ. Հայրապետյանը (Գորիս), Ս. Ռ. Կարապետյանը (Սևան), Ս. Ե. Հակոբյանը (Նաիրի), Ս. Ա. Գասպարյանը (Հրազդան), Հ. Ս. Մայիլյանը (Թումանյան), Ս. Ա. Պապյանը (Շամշադին):

Անհրաժեշտ է բոլոր ձևերով ու մեթոդներով խրախուսել պրոպագանդիստներին այդ դժվարին աշխատանքի համար, որը պահանջում է ո՛չ միայն մեծ գիտելիքներ, հմտություն, այլև որոշակի ժամանակ և ուժերի զգալի լարում: Ժամանակն է մի շարք հանրապետությունների (Լիտվայի, Լատվիայի, Ուզբեկստանի) օրինակով լավագույն պրոպագանդիստներին տալ կուլտուրայի և կուլտուր-լուսավորական աշխատանքի վաստակավոր գործչի կոչում: Անհրաժեշտ է պրոպագանդիստներին մշտական օգնություն ցույց տալ մարքսլենինյան տեսությանը տիրապետելու, տնտեսագիտական պատրաստության, առաջավոր փորձի յուրացման, մարդկանց դաստիարակության ակտիվ ձևերի ու մեթոդների ուսումնասիրման գործում: Այս կարևորագույն խնդրի լուծմամբ, առաջին հերթին, պետք է զբաղվեն արտահաստիքային և հաստիքային քաղլուսկաբինետները, որոնց թիվը հանրապետությունում հասնում է 165-ի:

ՀԿԿ Կենտկոմը վերջին տարիներին, որպես կանոն, բացում է պրոպագանդիստների պատրաստման և վերապատրաստման դասընթացներ, որտեղ իրենց որակավորումն են բարձրացնում ավելի քան 400 պրոպագանդիստներ: Միայն Սևանում, Հրազդանում, Ծաղկաձորում և Լենինականում անցկացված դասընթացներում սովորել են ավելի քան 2.500 պրոպագանդիստներ:

Հանրապետական քաղլուստունը քաղկոմ-շրջկոմների հետ սիստեմատիկաբար անց է կացնում պրոպագանդիստների սեմինարներ, տեսական պրակտիկ կոնֆերանսներ, պարապմունքների մասսայական ունկնդրումներ և քըն-



նարկումներ: Բոլոր քաղլուսկաբինետները կահավորվել են պրոպագանդայի տեխնիկական միջոցներով (հեռուստացույց, ռադիոընդունիչ, մագնիտոֆոն, դիապրոեկտոր, կինոապարատներ, դիաֆիլմեր և այլն): Բայց պետք է ընդունել, որ այդ միջոցները դեռևս անբավարար են օգտագործվում:

Վերջին տարիներին զգալի աշխատանք կատարվեց քաղաքական ուսուցման սիստեմն անհրաժեշտ դասագրքերով և ծրագրերով ապահովելու համար: Բավական է նշել, որ կուսակցական ուսուցման սիստեմի համար հայերեն հրատարակվել են ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության և գիտական կոմունիզմի հիմունքների ձեռնարկներ՝ յուրաքանչյուրը 20 հազար, իսկ տնտեսական գիտելիքների հիմունքների ձեռնարկը՝ 30 հազար տպաքանակով: Բարձր օղակի համար յոթ պրակով հրատարակվել են տեսական սեմինարների թեմատիկան, պլանները: Քաղուսուցմանը մեծ օգնություն են ցույց տալիս նաև մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը: Բարձր օղակի համար «Լենինյան ուղիով» ամսագիրը հրապարակում էր հատուկ ներդիր և ծրագրին համապատասխան առանձին հոդվածներ: Միջին օղակի համար հետաքրքրական նյութեր էին տպագրվում «Հայաստանի ժողովրդական տնտեսություն» ամսագրում: Տարրական օղակին մեծ օգնություն էր ցույց տալիս «Ագիտատորի և պրոպագանդիստի բլոկնոտ» ամսագիրը:

Հոկտեմբերի 1-ին բոլոր քաղաքներում, իսկ նոյեմբերի 15-ին գյուղական վայրերում սկսվում է քաղաքական և տնտեսագիտական ուսուցման նոր ուսումնական տարին: Հանձնարարվում է նոր ուսումնական տարվա առաջին 1—2 պարապմունքները նվիրել կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման ապարեզում ՍՄԿԿ և սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության ուսումնասիրմանը: Այդ պարապմունքներում պետք է հատուկ ուշադրություն նվիրել ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1973 թ.) պլենումի նյութերի, Լ. Ի. Բրեժնևի ԱՄՆ, ԳՖՀ և Ֆրանսիա կատարած այցի, Ղրիմում սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարների բարեկամական հանդիպման արդյունքների ուսումնասիրման վրա: Պարապմունքներում որոշակի տեղ պետք է գրավեն նաև սոցիալիզմի նվաճումների ու առավելությունների, նրա բարոյական և հոգևոր արժեքների, սովետական ապրելակերպի առավելությունների պրոպագանդումը, ինչպես նաև բուրժուական գաղափարական կոնցեպցիաների փաստարկված քննադատությունը:

Ինչպես անցյալ, այնպես էլ նոր ուսումնական տարում ամբողջ պրոպագանդիստական աշխատանքը ուղղված է լինելու ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործմանը:

# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԳԵՆԵՏԻԿԱՅԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ*

Ակադեմիկ Ն. ԴՈՒԲԻՆԻՆ

Արդի գենետիկան ծանրակշիռ ավանդ է մուծում գիտատեխնիկական հեղափոխության մեջ: Սովետական գենետիկական գիտության նվաճումները ավելի ու ավելի լայնորեն են կիրառվում պրակտիկայում. դրա հաջողությունները մեծապես նպաստում են գյուղատնտեսության վերելքին, մարդկանց առողջության պահպանմանը. վերջին ժամանակներս նշանակալի տեղաշարժեր են կատարվել նաև տեսության զարգացման ասպարեզում— ընդհանուր և մոլեկուլյար գենետիկայում աշխատանքներ են տարվում նոր հիմնական ուղղություններով: Այստեղ մենք կանգնած ենք կյանքի պրոցեսների էության իմացության և դրանց կառավարման ասպարեզում նոր հայտնագործումների շեմին: Լայն հորիզոններ է բացում գենետիկական ինժեներիա կոչված ուղղությունը:

Շատ մեծ է գենետիկայի պրոբլեմների բազմազանությունը: Ներկայումս հատկապես հրատապ են սելեկցիայի՝ գենետիկական այն մեթոդների զարգացման հարցերը, որոնք ապահովում են, այսպես կոչված, «կանաչ հեղափոխությունների» բարձր արդյունավետությունը, ժառանգականության կառավարման պրոբլեմի մշակման նոր մոտեցումները, որոնք հարուցել են գենետիկական ինժեներիայի մշակած սկզբունքները: Դրանք որակական բեկում են առաջացնում բույսերի սորտերի, անասնացեղերի և միկրոօրգանիզմների տեսակների ստեղծման գործում: Կարևոր է ժառանգականության էության ըմբռնման նկատմամբ կառուցվածքա-համակարգային մոտեցման մշակումը: Մեր օրերում բնագիտությունը և հասարակական գիտությունները ավելի ու ավելի շատ են զբաղվում մարդու կոմպլեքս ուսումնասիրությամբ: Ուստի, հրատապ են նաև մարդու պրոբլեմը և գենետիկան, մարդու և բնության հավերժ փոխհարաբերության պրոբլեմը՝ կապված հատկապես կենսամիջավայրի վրա գիտատեխնիկական առաջընթացի ներգործման հետևանքների հետ: Սույն հոդվածում քննարկվում են այդ պրոբլեմների առավել կարևոր մի քանի ասպեկտներ:

Սովետական գենետիկները իրենց հետազոտություններում ղեկավարվում են դիալեկտիկա-մատերիալիստական մեթոդոլոգիայով, իրենց ավանդը ներդնելով մարքս-լենինյան փիլիսոփայության զարգացման, դրա դրույթների ու կատեգորիաների բովանդակության բնագիտական հիմնավորման մեջ, այդպիսով իրականացնելով փիլիսոփայության և բնագիտության կապի վերաբերյալ Վ. Ի. Լենինի կտակը:

* Արտատպում ենք որոշ համառոտումներով:— Խմբ.:



## ԳԵՆԵՏԻԿԱԿԱՆ ՍԵԼԵԿՑԻԱՅԻ ՀԵՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Մեր երկրի տարբեր մարզերում, երկրամասերում և հանրապետություն-
ներում առաջացել և հաջողությամբ գործում են ինքնատիպ սելեկցիոն դպրոց-
ներ: Դրանց աշխատանքների շնորհիվ աճեցվել են գյուղատնտեսական կուլ-
տուրաների շատ նոր սորտեր, որոշ դեպքերում խիստ բարձրացել են դրանց
բերքատվությունն ու որակական ցուցանիշները: ՍՍՀՄ-ում կոլտնտեսություն-
ներն ու սովխոզները աճեցնում են գիտնական սելեկցիոներների ստեղծած
մոտ 5 հազար բուսասորտեր և հիբրիդներ, որոնցից մոտ 2.800-ը դաշտային
կուլտուրաներ են: ՍՍՀՄ-ում աշխատում են համաշխարհային ճանաչում ունե-
ցող այնպիսի սելեկցիոներներ, որպիսիք են՝ Պ. Պ. Լուկյանենկոն, Մ. Ի. Հա-
ջինովը, Վ. Ն. Ռեմեսլոն, Վ. Ն. Մամոնտովան, Ն. Վ. Ցիցինը, Ֆ. Գ. Կիրի-
չենկոն:
Պ. Պ. Լուկյանենկոն էկոլոգիա-աշխարհագրական տրամախաչմամբ
Կրասնոդարում ստացավ հայտնի Բեզոստայա—1 ցորենը: Դրա մեջ ամփոփ-
ված է գեների արժեքավոր համալքածուն, որը երկար ժամանակ կօգտագործ-
վի ցորենի սելեկցիայի դեպքում տրամախաչելիս: Այն ճանաչում է գտել իր
մի շարք հատկանիշներով, այդ թվում և հոմեոստազով, այսինքն՝ տարբեր
պայմանների հարմարվելու ունակությամբ և լավագույն ցորենն է համարվում
աշխարհում: Այժմ երկրագնդի վրա ամենատարածվածն է ցորենի այդ տեսա-
կը, որը «կանաչ հեղափոխություն» հարուցեց մի շարք շրջաններում: Բեզոս-
տայա—1-ից հետո ստացվեցին առավել արժեքավոր սորտեր, ինչպիսիք են՝
Ավրորան և Կովկասը: Վ. Ն. Ռեմեսլոյի, Վ. Ն. Մամոնտովայի, Ֆ. Գ. Կի-
րիչենկոյի, Ն. Վ. Ցիցինի և այլոց աշխատանքները լրջորեն փոխեցին մեր
երկրի շատ շրջաններում ցանվող ցորենի արդյունավետությունը: Հասկանա-
լի է, որ այս ակնբախ անվիճելի նվաճումների հետ մեկտեղ ցորենի գենետի-
կական սելեկցիան տակավին պետք է լուծի շատ բարդ խնդիրներ:
Վ. Ս. Պուստովոյտը գենետիկական ընտրության տեսության հիման վրա
և բիոքիմիական մեթոդներով մեծ չափով ավելացրեց արևածաղկի արդյու-
նավետությունը, մոտ 54 տոկոսով բարձրացավ սերմերի յուղայնությունը, այն
դեպքում, երբ անցյալում յուղայնության 33 տոկոսը սահմանային էր:
Եգիպտացորենի սելեկցիայի հաջողությունները մեզ մոտ առաջին հեր-
թին կապված են Մ. Ի. Հաջինովի, Գ. Ս. Գալեևի, Բ. Պ. Սոկոլովի անունների
հետ. ստեղծելով կրկնակի միջգծային հիբրիդներ՝ նրանք 25—30 տոկոսով
բարձրացրին բերքատվությունը: Եգիպտացորենի գենետիկական սելեկցիայի
համար այժմ հատկապես բնորոշ է այն ժամանակակից անասնաբուծության
պահանջներին համապատասխան նոր հատկություններով հարստացնելու
ձգտումը, օգտագործելով եգիպտացորենը որպես կերային հիմնական կուլ-
տուրաներից մեկը: Այսպես, հայտնի է, որ կերի մեջ լիզինի ամինոթթուների
ավելացումը բարենպաստ է ներգործում մսատվության վրա: Արգասալի է
ակադեմիկ Մ. Ի. Հաջինովի (Կրասնոդար) աշխատանքը լիզինի բարձր պա-
րունակությամբ եգիպտացորեն ստանալու մարզում: Նա մշակում է նաև հա-
սարակ գծային հիբրիդների արտադրական օգտագործման պրոբլեմը: Բազ-
մակողր եգիպտացորենի ստեղծման մեծ հեռանկարներ է բացում պրոֆեսոր
Գ. Մ.Փափալաշվիլին՝ Վրաստանում:
Բոլորին հայտնի են շաքարի ճակնդեղի երկպատող հիանալի սորտերի
ստեղծման բնագավառում ակադեմիկ Ա. Լ. Մազլումովի և այլ սելեկցիոներ-
ների նվաճումները: Այժմ նոր քայլեր են արված շաքարի ճակնդեղի գենե-
տիկական սելեկցիայի բնագավառում: Նոր էտապ է սկսվում այս արժեքավոր
կուլտուրայի բազմապատող և հետերոզիսային երկպատող սորտերի համար:
Սովորական երկպատող բույսերը պարունակում են քրոմոսոմային երկու հա-
վաքածու՝ հայրական և մայրական, մինչդեռ, բազմապատողներում քրոմոսոմ-
ների թիվն ավելացել է՝ բջջի կիսման ժամանակ դրանց չանջատվելու շնոր-
հիվ: Եռապատողը, այսինքն՝ քրոմոսոմների երեք հավաքածուները, 10—15
տոկոսով բարձրացնում են հեկտարից ստացվող շաքարի ճակնդեղի սորտի
շաքարայնությունը: Մեր երկրում բազմապատող բույսերի մշակման աշխա-

կայն, պետք է հիշել, որ սելեկցիան ինքնուրույն գիտություն է, որը ներառնում է իր համար հիմնական հանդիսացող գենետիկայի և այնպիսի գիտությունների նվաճումները, որպիսիք են՝ բիոքիմիան, ֆիզիոլոգիան, ֆիտոցիտոլոգիան և այլն: Այս կոմպլեքսում լուրջ դեր է խաղում մթերատվության ֆիզիոլոգիական վերլուծությունը, որը հնարավորություն է ընձեռում ըմբռնելու բուսական և կենդանական օրգանիզմների հատկությունների զարգացման էությունը և գենետիկայի օգնությամբ նպատակայնորեն փոփոխելու դրանք: Միայն կոմպլեքս մոտեցմամբ հնարավոր կլինի արագ լուծել ժամանակակից սելեկցիայի հիմնական խնդիրները:

Սովետական սելեկցիոներներին վիճակված է մշակել, այսպես կոչված, «իդեալական», գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման համար անհրաժեշտ սորտերի տիպեր, ինչպես հատուկ է տեղական պայմաններին, նույնպես և հարմարված արտաքին միջավայրին՝ նրա տարբեր ներգործություններին դիմանալու լայն դիապազոնով: Այժմ պարզ է, որ սելեկցիոն խնդիրները հարկ է լուծել ո՛չ թե ինչ-որ մի, թեկուզ և նորագույն մեթոդով. սորտի գենետիկական նյութը փոփոխող հատկանիշների նկատմամբ անհրաժեշտ է կոմպլեքսային մոտեցում: Ընդ որում, սելեկցիոն պրոցեսը միշտ պետք է կրի կոնկրետ բնույթ՝ համապատասխան շրջանների էկոլոգիա-աշխարհագրական տարբերություններին և տվյալ կուլտուրայի յուրահատուկ պահանջներին: Օրինակ, գյուղատնտեսության ինտենսիվացման նպատակով պետք է ստեղծել բույսերի՝ սկզբունքորեն նոր, ջուրն ու պարարտանյութերն առավել ինտենսիվ օգտագործող սորտեր: Մինչև օրս սելեկցիոն աշխատանքում անբավարար ուշադրություն էր նվիրվում հացահատիկի սպիտակուցի որակի բարելավմանը. սելեկցիոներներն անզոր էին լրջորեն բարձրացնելու ցորենի ցրտադիմացկունությունը և այլն:

Այժմ մի շարք կուլտուրաների մարզում հասել ենք սելեկցիայի նոր մակարդակի: Գլխավոր ուղղություններից մեկը ցորենի և բրնձի սորտերի կարճացողուն ձևին անցնելն է: Հացահատիկային բոլոր կուլտուրաների սելեկցիայի հեռանկարային խնդիրն է այդ: Երկու բաժին ցորենը պետք է ունենա մեկ բաժին ցողուն: Հասկի բարձր բերքատվության, տերևների առավել ուղղաձիգ, ֆոտոսինթեզն արագացնող դիրք, պառկելադիմացկունություն— ահա որոնք են կարճացողունության առավելությունները: Մեր երկրում հեռանկարային են կիսագաճաճները՝ 70—80 սանտիմետրանոց ցողունով: Ինտենսիվ տիպի սորտերի համար 3—4 անգամ ավելի արդյունավետ կլինեն հանքային պարարտացումն ու ոռոգումը, դրանք առավել դիմացկուն կլինեն հիվանդությունների և վնասատուների նկատմամբ, կունենան հացահատիկի տեխնոլոգիական և բիոքիմիական ավելի լավ հատկանիշներ: Այս ամենը կապահովի հարուստ ու կայուն բերք: Հեկտարից, միջին հաշվով, սպասվում է 50—100 ցենտներ բերք: Շատ շրջաններ դեռևս չունեն այսպիսի «իդեալական» սորտեր և դրանց ստեղծման համար անհրաժեշտ է գենետիկա-սելեկցիոն տեսության խոր մշակում:

Կենդանիների սելեկցիայի տեսությունը պետք է խարսխվի հետերոզիսային նոր ուղղությունների օգտագործման, անասնապահության ինտենսիվացման խնդիրների, արհեստական բեղմնավորման հաջողությունների, վարակամերժ ձևերի ստացման վրա:

Կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսական առանձին կուլտուրաների, անասնացեղերի գենետիկայի հարցերի մշակումը: Սելեկցիայի նոր վերելքի համար անհրաժեշտ է սովորել և ընդհանրացնել ականավոր սելեկցիոներներ Պ. Պ. Լուկյանենկոյի, Վ. Ս. Պուստովոյտի, Ա. Պ. Շեխուրդինի, Ն. Վ. Ցիցինի, Վ. Ն. Ռեմեսլոյի, Ֆ. Գ. Կիրիչենկոյի դպրոցների պրակտիկան: Սովետական գենետիկական սելեկցիան ինչպես գիտության կազմակերպման, նույնպես և կյանքում դրա արդյունքների ներդրման ոլորտում, օգտագործելով սոցիալիզմի առավելությունները, զարգանում է արագընթաց տեմպերով:



## ԳԼԽԱՎՈՐԸ ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՈՒՄ

Ժառանգականության կառավարման որակային նոր մեթոդների ստեղծման նպատակով տարվող հիմնարար աշխատանքներում աչքի են զարնում բջիջների գենետիկական մոլեկուլյար վերակառուցումը, որը կոչվում է գենետիկական ինժեներիա, և մուտացիայի պրոցեսի կառավարումը: Վերջին երեսուն տարիներին ապացուցվեց, որ ժառանգականությունը կապված է մոլեկուլյար կառուցվածքների, հատկապես բջջի քրոմոսոմներում կենտրոնացված նուկլեինաթթուների հետ: Մեծ մասամբ այդ դեզօքսիռիբոնուկլինաթթու է, կարճառոտ՝ ԴՆԹ: Մուտացիայի արդի մոլեկուլյար տեսությունը նվիրված է ԴՆԹ մոլեկուլներում կատարվող գեների կառուցվածքը փոխող քիմիական վերափոխումների էությանը:

Պարզվել է, որ միկրոբների ԴՆԹ-ները որոշ պայմաններում կարող են թափանցել բարձրակարգ բույսի բջիջների միջուկի մեջ, ուր, ինչպես ցույց տվեց տարրալուծումը, կարող է տեղի ունենալ միկրոբի գենետիկական նյութի և բույսի ինտեգրացիա. հիբրիդային ԴՆԹ բազմանում է, միկրոբ-դոնորի գեները գործում են բույսի բջջում:

Վերջերս ապացուցվել է, որ կաթնասունների բջիջների ԴՆԹ-ն հնարավոր է մեծ բլոկներով փոխանակել: Գենետիկական նյութի նպատակային մոլեկուլյար վերակառուցման հետազոտության հաջողության գլխավոր նախապայմանը որոշակի գեներ կամ գենային կոմպլեքսներ պարունակող յուրահատուկ դոնորային ԴՆԹ-ի ստացման մեթոդների մշակումն է և ընդունող բջիջների մեջ դրանց ներարկման ապահովումը:

Բջիջների գենետիկա-մոլեկուլյար վերակառուցման ելանյութ ստեղծելիս խիստ կարևոր է նաև գեների արհեստական քիմիական սինթեզի հնարավորությունը կամ ԴՆԹ-ի արհեստական պարզ պոլիմերների օգտագործումը: Այժմ քիմիականորեն սինթեզված է ալանին—T—ՌՆԹ սինթեզը կոդավորող խմորիչների բջջի գենը: Սկզբունքորեն նշված է մեկ բջջում տարբեր ծագում ունեցող գենետիկական նյութի զուգակցման հնարավորությունը: Երբ ընդունող բջջի գենետիկական ապարատը (գենոմը) լրացվում է առանձին գեներով կամ դոնոր-բջջի միջուկից անջատված գեների բլոկներով, տեղի է ունենում մոլեկուլյար մակարդակի հիբրիդիզացիա:

Գենոմի և օտարածին ինֆորմացիայի առանձին տարրերի զուգորդման հնարավորությունն արդեն նշված էր հեռավոր հիբրիդիզացիային նվիրված կլասիկ երկերում: Այս բնագավառում հիանալի ուղեցիշ են Ն. Վ. Ցիցինի՝ ցորենի և պիրեի հիբրիդացման աշխատանքները: Տասնյակ տարիների տրամախաչմամբ ու ընտրությամբ՝ հետազոտողն ու նրա աշակերտները (Գ. Դ. Լապչենկո, Ֆ. Դ. Կրիժանովսկի և ուրիշներ) հասան ցորենի գենոմի և պիրեի գենետիկական ինֆորմացիայի տարրերի միակցմանը: Պիրեա-ցորենային հիբրիդների սորտերն այժմ շրջանացված են արտադրության համար. պիրեի գենետիկական ինֆորմացիայի փոքրիկ տարրերը մուծված են ցորենի գենոտիպում:

Առայժմ նույնիսկ դժվար է գնահատել մոլեկուլյար հիբրիդիզացիայի մեթոդների մշակման շնորհիվ սելեկցիայի առջև բացված հեռանկարները: Սակայն, հենվելով հեռավոր հիբրիդացմանը նվիրված կլասիկ աշխատանքներում հաստատված սկզբունքների վրա (որոնք ցույց տվին հիբրիդներում օտարածին գենետիկական ինֆորմացիայի զուգակցման հնարավորությունը), կարելի է պնդել, որ այժմ միանգամայն ռեալ է տակավին վերջերս ֆանտաստիկ թվացող տարբեր գեների օրգանական ձևերի միավորումը: Եվ, քանի որ գենետիկական կարգը համակողմանի է, ապա սկզբունքորեն իրագործելի է մոլեկուլյար գենետիկական հիբրիդավորումը ցանկացած մակարդակով, անկախ տեսակների տրամախաչելիության ընձեռած հնարավորություններից՝ ընդհուպ մինչև մարդու ԴՆԹ-ի և վիրուսների ու ֆագերի գենետիկական ինֆորմացիայի տարրերի ամբողջացումը:

1971 թ. հաստատվեց, որ նույնիսկ ֆագերն ունակ են թափանցելու մար-

դու բջիջները և դրանց մեջ ներմուծելու օտարածին գենետիկական ինֆորմացիա:

Այժմ մարդու, կենդանիների և բույսերի բջիջները միկրոբների, վիրուսների և ֆագերի գեներով վերակառուցելը կարելի է համարել ռեալ խնդիր: Մարդու մաշկի նախաքաղցկեղային տեսակներից մեկը՝ պիգմենտային-քսերոդերմը, առաջանում է ռեպարացիոն ֆերմենտի սինթեզը ծրագրավորող գենի մուտացիայից: Այդպիսի հիվանդների բջիջներում անհրաժեշտ գեների ներմուծմամբ կբուժվեն մաշկի այդ ձևի քաղցկեղները:

Բերված օրինակները ակնառու ցույց են տալիս, որ գենետիկան, մշակելով ժառանգականության մոլեկուլյար հիմունքները, առավել հզորացնում է մարդու իշխանությունը կենդանի բնության նկատմամբ: Ակնհայտ է, որ մարդկության սննդանյութերի հիմքը հանդիսացող բույսերի, միկրոօրգանիզմների և կենդանիների գենոմների ողջ մոլեկուլյար գենետիկայի վերակառուցումը՝ դրանց սելեկցիայի նպատակով, ինչպես և ժառանգական հիվանդություններով տառապող մարդկանց գենոմների վերակառուցումը և՛ տեսականորեն է հետաքրքրական, և՛ բացառիկ նշանակություն ունի պրակտիկայի համար:

Բջիջների գենետիկական ապարատի վերակառուցումն ընթանում է մի շարք ուղղություններով, որպիսիք են, օրինակ, մարմնային բջիջների հիբրիդիզացիան, միջուկի պատվաստումը, փորձարարական մուտագենեզը հիբրիդներում: Այշեցուցիչ են 1970—1971 թթ. գենետիկական ինժեներիայի արդյունքները: Կարելի է ենթադրել, որ որոշ ժամանակ անց գենի խմորիչ և քիմիական սինթեզները, գեների կամ նրանց բլոկների անջատումը կենդանի բջիջներից, գենոմի ինտեգրացիան օտարածին ԴՆԹ-ի հետ, ինքնաբազմացումը արհեստական պայմաններում— այս ամենն այլևս զարմանալի չի լինի և կդառնի օրգանիզմների գենետիկայի արտադրական վերամշակման բնագավառին:

Ժառանգականության մուտացիոն կառավարման խնդրում գլխավորը գեների նպատակային մուտացիան է: Գենի մոլեկուլյար բնույթը բացահայտված է, և այժմ մեր խնդիրն է տարբեր օրգանիզմների, ընդհուպ նաև մարդու գեներում նուկլեոտիդների հաջորդականության կոնկրետ ընթերցումը: Զևականորեն գենը կարող է համարվել ԴՆԹ մոլեկուլի հատվածը: Սակայն այդ բնութագիրը չի արտահայտում նրա բազմակողմանի կապերը:

Ժամանակակից տվյալները ցույց են տալիս, որ գենը ֆիզիկապես իրոք ԴՆԹ մոլեկուլի հատվածն է և, միաժամանակ, տարբեր տարրերից կազմված բիոլոգիական բարձր ինտեգրացված սիստեմ, որն ապահովում է կոդավորումը, վերարտադրում և պահպանում է գենետիկական ինֆորմացիան: Գենի նման ըմբռնումն ուղղակի առնչվում է մուտացիոն պրոբլեմի հետ: Կապվա՞ծ է արդյոք գեների մուտացման ուղղությունը միայն դրա բաղադրության մեջ մտնող նուկլեոտիդների յուրահատկության հետ: Հազիվ թե, քանի որ այդ չորս նուկլեոտիդները կան բոլոր գեներում: Տվյալները ցույց են տալիս, որ առանձին նուկլեոտիդների կուտակումը գենի ներսում հարուցում է «տաք կետեր», սակայն մուտացման նպատակայնության և յուրահատկության ողջ պրոբլեմն այդ եղանակով չի լուծվի: Ակներև է, որ գենի մուտացիոն հատկությունները մեծ մասամբ արտացոլում են նրա՝ իբրև կենսաբանական սիստեմի, յուրահատկությունները:

## ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԷՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

1958 թ. սահմանվեց մոլեկուլյար կենսաբանության «գլխավոր դոգմա» անվանվող սկզբունքը, ըստ որի, բջջում գենետիկական ինֆորմացիայի հոսքերը ԴՆԹ-ից անցնում են ՌՆԹ-ին և սպիտակուցին: 60-ական թվականների մոլեկուլյար գենետիկայի վիթխարի նվաճումները ցույց տվին բջջում սպիտակուցի սինթեզման մեխանիզմին վերաբերող այդ դրույթի, հետևաբար և հատկանիշների սահմանման ճշմարտացիությունը: Սակայն, չնայած սպիտակուցների սինթեզի գենետիկական դետերմինացիայի մեկնաբանման ոլորտում եղած հաջողությունների նշանակությանը, պարզվեց, որ անուշադրության են



մատնվել բջջի ինտեգրացիայի հարցերը, հաշվի չեն առնվել կենդանի համակարգերին հատուկ կապերը, բարդ երևույթներն ու միջնորդավորումները:

Հարց է ծագում. արդյոք սպիտակուցներից չկա՞ն այնպիսի հետադարձ կապեր, որոնց վրա խարսխված են ողջ կյանքը և փոխներգործությունը միջավայրի հետ: Այս դեպքում կառաջանային արդի մոլեկուլյար գենետիկայի կողմից բոլորովին չնախատեսված բացառիկ լուրջ պրոբլեմներ: Հարկ է խոստովանել, որ սպիտակուցից դեպի ՌՆԹ և ԴՆԹ մոլեկուլները նույնական տառադարձային ինֆորմացիայի հաղորդում չկա: Այստեղ կան պատնեշներ՝ մոլեկուլների տարբեր այբուբենի և դրանց ստերեոքիմիական տարբերությունների տեսքով: Էվոլյուցիան օգտագործեց և ստեղծեց սպիտակուցից դեպի ԴՆԹ և ՌՆԹ մոլեկուլի հետադարձ նույնականության տառադարձական կապի դժվարությունը, որն արդյունք էր անհատական զարգացման և օրգանական ձևերի պատմական զարգացման դեպքում հաջորդականության օրենքների ամրապնդման անհրաժեշտության:

ՌՆԹ մոլեկուլակերպ մատրիցայից ԴՆԹ մոլեկուլի արտագրումը կոդավորող ֆերմենտի բացահայտումը հնարավորություն է ընձեռում լայն, համապարփակ չափերով անջատելու ուզած գենը: Դժվարը ինֆորմացիոն ՌՆԹ-ի անհատական մոլեկուլների անջատումն է: Իսկ եթե ԴՆԹ մոլեկուլի սինթեզն ապահովվի համապատասխան մատրիցաներով, ապա հնարավոր կլինի ստանալ օրգանիզմի ուզած գեները զուտ տեսքով:

Կենդանականի էական հատկությունը նրա սիստեմայնությունն է, պրոցեսների ինտեգրացածությունը, որոնց խորության և բարդության մասին որոշ պատկերացում կարող է տալ հետևյալ օրինակը: Միկրոբի բջիջը 20—30 րոպեն մեկ կրկնապատկվում է: Դրա մեջ կա սպիտակուցի $10^6$ մոլեկուլ: Այն պարունակում է 3 հազար գեն, հետևաբար յուրաքանչյուր գենը 30 րոպեում պետք է արտադրի միջին հաշվով 3300 մոլեկուլ սպիտակուց: Սպիտակուցի տարբեր տիպի մոլեկուլների թիվը տատանվում է 10-ից մինչև 500 հազարի միջև: Այժմ գենետիկական երևույթների կարգավորումը մոլեկուլյար գենետիկայի հիմնական խնդիրն է:

Ինտեգրացիան իրականացվում է բազմակողմանի, գենետիկական բարդ ապարատի օգնությամբ, որի էությունը դեռ չգիտենք: Հայտնվել է այն միտքը, թե դրոզոֆիլների պոլիտենային քրոմոսոմներում որոշ սկավառակներ զբաղեցնում են կարգավորիչ ֆունկցիա ունեցող ԴՆԹ-ները: Մինչև այժմ եզակի կառուցվածքային գեներ չկրող ԴՆԹ-ի, այսպես կոչված՝ հավելյալության մասին հորինված փաստերը բնութագրվում էին որպես գեների պոլիմերային կազմության ապացույց: Հաճախ այդ ճշմարիտ է: Սակայն ավելցուկային ԴՆԹ-ի առյուծի բաժինը հավանաբար նրա՝ գենետիկական կարգավորիչ ծրագրով զբաղված մասն է, որի բովանդակությունն ու կազմավորման ձևերը հետազոտողներին դեռևս անհայտ են:

Ակնհայտ է գենետիկական կարգավորման և ինտեգրացիայի նշանակությունը անասունների, բույսերի և միկրոօրգանիզմների սելեկցիայի բնագավառում: Այդ պրոցեսներին միջամտելը կհանգեցնի օրգանական ձևերի արդյունավետության և խորացման արմատական փոփոխությունների:

Մոլեկուլյար գենետիկայի նոր դրույթը հիմք է տալիս կարծելու, որ ժառանգականությունը՝ դա նյութափոխանակության ինտեգրացված տիպերի կառուցվածքա-բիոքիմիական վերարտադրությունն է՝ կառուցվածքային և կարգավորիչ գենետիկական ինֆորմացիայի հաղորդման հիման վրա: Ժառանգականության էությունը՝ բջջի սիստեմում ԴՆԹ-ի, ՌՆԹ-ի սպիտակուցների մոլեկուլների փոխներգործությունն է: Այն վերաբերում է նաև կյանքի ծագմանը, որպես կենդանի համակարգի ստեղծում: XX դարի առաջին կեսում գենետիկայում մենաշնորհային դերը պատկանում էր սպիտակուցին, որը համարվում էր ժառանգականության նյութական կրողը: Այնուհետև ուշադրությունը կենտրոնացվեց ԴՆԹ մոլեկուլների վրա: Սակայն այդ երկու մոտեցումների դեպքում էլ գենետիկական ինֆորմացիայի գրառումները շփոթում էին բուն ժառանգականության երևույթի հետ:

# ՄԱՐԴՈՒ ՊՐՈԲԼԵՄԸ ԵՎ ԳԵՆԵՏԻԿԱՆ

Անձի բազմակողմանի զարգացումը լիովին ապահովող հասարակարգի՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հատուկ նշանակություն ունի մարդու պրոբլեմի լուծումը՝ իր ողջ բազմազանությամբ ու բոլոր ասպեկտներով: Մարքս-լենինյան փիլիսոփայությունը մարդուն դիտում է ո՛չ թե վերացական-մարդաբանական հայեցակետով, այլ որպես պատմա-հասարակական պրոցեսի կոնկրետ արդյունք: Այս իմաստով մարդը հասարակական էակ է: Ժամանակակից գենետիկայի եզրակացություններն առավել խոր բնագիտականությամբ են հաստատում մարդու էության մարքս-լենինյան ըմբռնումը, նրա զարգացման սոցիալական և կենսաբանական գործոնների իրական փոխհարաբերությունը:

Մարդուն բնորոշ հատկանիշը նրա կենսագործունեության սոցիալական բնույթն է, նյութական ու հոգևոր կուլտուրայի կոմպլեքսի առկայությունը: Դրա հետ մեկտեղ անհատի ձևավորման ժամանակ սոցիալականի և կենսաբանականի փոխհարաբերության հարցն այնքան էլ հասարակ չէ, դրա վերլուծությունը մեծ նշանակություն ունի մարդու ողջ պրոբլեմի ըմբռնման համար: Մարքսիզմ-լենինիզմը հերքում է մարդու սոցիալական վարքագծի նկատմամբ եղած ոչ գիտական, կենսաբանացնող հայացքը, ըստ որի անհատի կենսաբանական առանձնահատկությունները ճակատագրորեն որոշում են նրա գիտակցությունը, հաշվի չառնելով մարդու՝ իբրև սոցիալական էակի, որակական յուրահատկությունը, որի գիտակցության ձևավորումը հասարակական հարաբերությունների և աշխատանքային գործունեության արդյունք է:

Հասարակության ծագումն իր յուրահատուկ, մարդու զարգացման բնույթը («սոցիալական էվոլյուցիան») որոշող օրինաչափությունները պայմանավորեցին մարդու՝ որպես տեսակի բացառիկ վիճակը. նա անջատվել է բնական կենսաբանական էվոլյուցիայի հեղեղից, որը հանգեցնում է շրջապատող միջավայրին գենետիկորեն առավել չափով հարմարվող տեսակագոյացման պրոցեսներին: Մարդը շատ դեպքերում իր համար ցանկալի ձևով ներգործում է բնության վրա, «ստեղծում» հատուկ միջավայր, որի պայմաններում մնացած բոլոր կենդանի էակների զարգացմանն ուղղություն տվող բնական ընտրությունը՝ որպես հարմարվողական առաջընթացի կենսաբանական ղեկավար ուժ, կորցնում է իր նշանակությունը: Արդյունքը լինում է այն, որ կենսաբանական հատկությունների նպատակային փոփոխումը, որը բոլոր կենդանիների մոտ կատարվում է բնական ընտրության ազդեցությամբ, մարդու մոտ արդեն չի կատարվում: Պատմության փաստերը ցույց են տալիս, որ homosapiens տեսակի ժառանգականորեն ամրապնդված կենսաբանական առկա հատկությունները, սոցիալական կոնկրետ պայմաններին համապատասխան, լիովին ապահովում են անհատի ձևավորումը:

Ոչ ոք չի կասկածում, որ մարդիկ կենսաբանորեն տարբեր են: Նրանք այլ կերպ են ենթարկվում միջավայրի ազդեցությանը, օժտված են բնական տարբեր հակումներով և այլն: Սակայն այս բոլորը վկայում են մարդկանց կենսաբանական տարբեր հնարավորությունների և ոչ թե այն մասին, իբր գեներում սևեռված է նրանց կյանքի այն ձևերի արտացոլումը, որոնք կազմավորվում են գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների ազդեցությամբ: Հայտնի է, որ պատմական յուրաքանչյուր ֆորմացիա բնութագըրվում է իր էթիկայով, կյանքի իմաստի ըմբռնմամբ, մարդկային անհատի նկատմամբ եղած վերաբերմունքով, գիտատեխնիկական, սոցիալական, քաղաքական ու փիլիսոփայական գիտելիքների ծավալով և այլն: Ակնհայտ է, որ այդ տարբերությունները չէին կարող ուղեկցվել մարդկանց ժառանգականության փոփոխություններով:

Հասարակական նոր հարաբերությունների հաստատումը չի հարուցում մարդու կենսաբանական բնածին հատկությունների նույնանշանակ փոփոխություններ: Հասարակական առաջընթացը սերնդե-սերունդ փոխանցում է ո՛չ թե կենսաբանական, այլ սոցիալական փորձը, որը կուտակվում է հոգևոր ու նյութական ծաղկող կուլտուրայում: Գենետիկայում այդ երևույթն ստացել



է «սոցիալական ժառանգականություն» անվանումը. իսկ այդ փորձի բուն բովանդակությունը, վերջին հաշվով, որոշվում է հասարակական-տնտեսական ֆորմացիայի բնույթով, սոցիալ-տնտեսական հարաբերությունների սիստեմում մարդկանց գրաված տեղով, որը կարող է կոչվել «սոցիալական ծրագիր»:

Մարդու հոգևոր կյանքը պայմանավորված է ուղեղի զարգացմամբ՝ սոցիալական պայմանների որոշիչ ներգործությամբ: Ուստի, դրա բովանդակությունը չի կարող «գրանցվել» գեներում: Մենք լավ գիտենք՝ քանի սերունդ էլ որ սովորի մաթեմատիկան, բոլոր սերունդների դպրոցականներին վիճակված է սկզբից ըմբռնել աշխարհը տեսնելու այդ վերացական համակարգը: Ուրեմն, մշտապես անհրաժեշտ է կրկին ու կրկին վերարտադրել ու զարգացնել յուրաքանչյուր անհատի գիտակցությունը: Միայն այս ճանապարհով նոր սերունդը կկարողանա ընդգրկել մարդկության պատմության ընթացքում ձեռք բերվածը և դրան կոթնած շարունակել իր զարգացումը:

Ակնհայտ է, որ «սոցիալական ժառանգականության» ուսմունքը, չժխտելով մարդկանց բնական տարբերությունները, դրա հետ մեկտեղ նշում է նոր մարդու ձևավորման վիթխարի հնարավորություններ՝ նրա կյանքի սոցիալական պայմանների փոփոխությունների ներգործությամբ: Ինչպես ապացուցեց արտացոլման լենինյան տեսությունը, մարդկային խելքն ունակ է անվերջ ճանաչելու ինչպես արտաքին աշխարհում, նույնպես և իր մեջ եղած բոլոր երևույթները: Իր գիտակցության մեջ ամրապնդելով հասարակական զարգացման արդյունքները, մարդկային հասարակությունը բարդացող «սոցիալական ծրագրի» հիման վրա վերափոխում է յուրաքանչյուր հաջորդ սերնդի անհատի հոգևոր աշխարհը: Պատմությունը հաստատում է այս եզրակացությունը: Քարե դարից սկսած, 8—9 հազար տարվա ընթացքում կուլտուրայի աներևակայելի թռիչքը, մեծ քաղաքակրթության գոյությունն Ասորեստանում, Բաբելոնում, Հնդկաստանում, Չինաստանում, Եգիպտոսում, Մեքսիկայում, Հունաստանում, Հռոմում, միջնադարյան ռեակցիան Եվրոպայում, XV դարի նոր վերելքը Վերածնության ժամանակներում, մարդու հոգևոր աշխարհում ցնցող փոփոխություններ հարուցող արդի սոցիալական ու գիտատեխնիկական հեղափոխությունը— այս բոլորը չեն ուղեկցվել գենետիկական նպատակային փոփոխություններով: Ակնհայտ է, որ մարդու գենետիկական բնույթը չի սահմանափակում նրա հասարակական զարգացումը. մարդկային մտածողության հնարավորությունները անսահման են:

Հետևաբար, նույնիսկ զուտ տեսական առումով, բնավ չի կարելի մարդու անհատական զարգացումը քննարկել այնպես, ինչպես կենդանիներինը: Նրանց ժառանգականության և միջավայրի հարաբերակցությունը միանգամայն տարբեր է, ինչպես որակապես տարբեր է մարդկանց ու կենդանիների «միջավայր» հասկացության բովանդակությունը: Չէ՞ որ կենդանիները չեն ստեղծում իրենց համար հատուկ սոցիալական միջավայր: Ուստի, խիստ գռեհիկ է մարդու սոցիալական վարքը բացատրել բնազդներով, որոնք կենդանիների մոտ ամրապնդված են ժառանգականության մեխանիզմով: Մարդու կամքը, զգացմունքները ղեկավարող գիտակցությունը ձևավորվում է հասարակական կեցության որոշակի ազդեցությամբ:

Այս պրոբլեմին այլ կերպ են մոտենում սոցիալ-դարվինիստները, ռասիստները: Նրանք գտնում են, որ մարդու վարքի սոցիալական ձևերը սևեռված են գեներում, որ գիտակցությունը՝ դա, առաջին հերթին, ոչ թե հասարակական զարգացման արդյունք է, այլ մի երևույթ, որի հիմնական կողմերը պայմանավորված են գենետիկական ծրագրի գործողությամբ: Այստեղից ի վերջո այն կեղծ եզրակացությունն է արվում, թե սոցիալական պայմանների փոփոխությունն իբր չի կարող ապահովել նոր մարդու ձևավորումը. մարդկային էության փոփոխությունը կապվում է միայն մարդու գեների վերափոխման հետ:

Մեր օրերում լայն պլանով մարդու գենետիկական բնույթին միջամտելու հարցադրումն օրինաչափ չէ: Այդ կարելի է քննել միայն՝ սերտորեն կապված

բժշկական գենետիկայի մի քանի կոնկրետ խնդիրների հետ, ինչպիսիք են՝ ձերբազերծումը ժառանգական հիվանդություններից, սրտանոթային սիստեմի, քաղցկեղի, պաթոլոգիական այլ փոփոխություններից, որոնք այս կամ այն չափով պայմանավորված են առանձին մարդկանց գենետիկական պակասություններով։ Բնականաբար այս դեպքում ևս գիտնականները պետք է պարզ ըմբռնեն, թե որքան մեծ է իրենց պատասխանատվությունը մարդկանց առաջ։

Ինչ վերաբերում է այլ նպատակներով ժառանգականությանը միջամտելուն, այսպես կոչված, «զուտ գծերի» ստեղծմանը և այլն, որ առաջարկում են մարդկային ռասաների սելեկցիայի եվգենիկները, պետք է հատկապես ընդգծել դրա վտանգավորությունն ու էթիկական անթույլատրելիությունը։ Այստեղ անհաղթահարելի արգելք են ստեղծում ամենից առաջ գոյություն ունեցող և արագ աճող մարդկանց քանակությունը, ինչպես և ժամանակակից գենետիկայի, այդ ամենաբարդ բնագավառի խիստ սահմանափակ հնարավորությունները։ Երբեք չպետք է մոռանանք մարդու՝ իբրև կենսաբանական տեսակի բացառիկությունը և պահպանենք նրա լիարժեքությունը։ Պատահական չէ, որ այժմ այդքան սուր է դրված կենսաոլորտի ապականման, դրանում մարդու ժառանգականության վրա բացասաբար ազդող և նույնիսկ նրան ոչնչացնող գործոնների առկայության հարցը։ Մեծ է մարդու գենետիկական պոտենցիալը, ամենևին սպառված չեն նրա հնարավորությունները։

Ուսմունքը «սոցիալական ծրագրի» և այն մասին, որ գենետիկական ծրագիրն ստեղծում է միայն մարդու զարգացման բարդ պրոցեսի կենսաբանական հիմքը, պարզ ցույց է տալիս, որ արդի ընդհանուր գենետիկան և մարդու գենետիկան ամբողջովին համապատասխանում է գիտակցության՝ իբրև հասարակության զարգացման արգասիքի լենինյան ուսմունքին։ Մարդու հասարակական առաջընթացի հնարավորություններն անսահմանափակ են։ Ապագայի մարդը ստեղծվում է կոմունիստական շինարարության հնոցում։

Գենետիկայի, հատկապես մոլեկուլյար գենետիկայի, բոլոր նվաճումներով հանդերձ, նրա առջև տակավին ծառացած են գիտական շատ լուրջ պրոբլեմներ։ Այն պետք է զարգանա ինչպես մոլեկուլյար, այնպես էլ ենթաբջջային, բջջային, հյուսվածքային օրգանական և պոպուլյացիոն մակարդակով, դառնալով արդի կենսաբանության գլխավոր գիտություններից մեկը։ Իր պրակտիկ եզրակացություններում գենետիկան լայնորեն և խորապես կապված է գյուղատնտեսության, բժշկության, կոսմիկական կենսաբանության, կենսաոլորտի մասին ուսմունքի հետ, մշակելով մարդու և բնության փոխհարաբերության հարցերը, էվոլյուցիայի տեսության, մարդաբանության և մարդու մասին ընդհանուր ուսմունքը։ Ուստի, և՛ տեսության մեջ, և՛ գործնականում գլխավոր, հիմնարար ուղղություններն ուսումնասիրելիս անհրաժեշտ է մոտեցումների ու մեթոդների փոխներթափանցում։ Կարևորագույն նշանակություն ունի գենետիկայի իմացության բնագավառում արագ կուտակվող գիտելիքների մեթոդոլոգիական վերլուծությունը՝ դիալեկտիկական մատերիալիզմի փիլիսոփայության հիման վրա։ Միայն դրա շնորհիվ կստեղծվի գենետիկայի ընդհանուր, գիտության զարգացման արդի մակարդակի պահանջներին համապատասխան տեսություն։

Սովետական գիտնականներն իրենց ջանքերը գործադրում են, որպեսզի գենետիկան լիովին ծառայի նոր հասարակության, կառուցվող կոմունիզմի արտադրաուժերի արագ զարգացմանը։ Մեր սելեկցիոներները, զինված գենետիկական սելեկցիայի մեթոդներով, ակտիվ մասնակցում են գյուղատնտեսության վերելքին։ Կարևորագույն ռեալ խնդիրներ են ծառացած մարդու ընդհանուր գենետիկայի և բժշկական գենետիկայի առաջ։ Գենետիկան մուտք է գործում գենետիկական ինժեներիայի հնարավորությունների կիրառման, մուտացիաների պրոցեսի գենետիկական կարգավորման ու կառավարման դարաշրջանը։ Այս հիմնարար ուղղությունների զարգացումը, վերջին հաշվով, կհանգեցնի արմատական տեղաշարժերի՝ կյանքի ճանաչման և դրա կառավարման բնագավառում։

«Коммунист», № 8, 1973.

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՕՐԵՆՍԳԻՐՔԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎՆԵՐԸ

Ի. Ա. ԱՐԱԲՅԱՆ
Իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ

*Ավելի քան 50 տարի է, ինչ Անդրկովկասյան հանրապետություններում կիրառվում է սովետական աշխատանքային օրենսգիրքը։*

*ՌՍՖՍՀ և միութենական մյուս հանրապետությունների դաշինքի համաձայն, 1922 թ. դեկտեմբերի 30-ի որոշմամբ ՌՍՖՍՀ աշխատանքային օրենսգիրքը տարածվեց ու ճանաչվեց նաև Անդրկովկասի հանրապետություններում՝ որպես ԱՍՖՍՀ աշխատանքային օրենսգիրք։ Լենինն անձամբ մասնակցել է այդ օրենսգրքի մշակմանը և դրա գործադրումը համարել սովետական իշխանության մեծ նվաճումը (տե՛ս Երկեր, հ. 33, էջ 469—470)։ Աշխատանքային այդ օրենսգիրքը, որոշ փոփոխումներով ու լրացումներով հանդերձ, էական դեր է խաղացել բանվոր-ծառայողների աշխատանքային իրավունքի և նրանց օրինական շահերի պաշտպանության, սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում։*

*Վաղուց հասունացել էր նոր օրենսգիրք ընդունելու ժամանակը։ 1970 թ. հուլիսի 15-ին ՍՍՀՄ Գերագույն սովետն ընդունեց օրենք ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների աշխատանքային օրենսդրության հիմունքների հաստատման մասին։ Միութենական հանրապետությունների համար այն դարձավ իրենց օրենսդրության կատարելագործման, հետագա զարգացման և իրավական ամրապնդման հիմքը։*

*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի երրորդ սեսիայի որոշմամբ 1972 թ. հոկտեմբերի 1-ից կիրառվեց Հայկական ՍՍՀ աշխատանքային նոր օրենսգիրքը։ Նույնպիսի օրենսգրքեր ընդունեցին նաև միութենական մյուս հանրապետությունները։ Աշխատանքային նոր օրենսգրքով ո՛չ միայն համակարգվեց գործող օրենսդրությունը, այլև, լրջորեն հաշվի առնելով դատարանների և պետական ու հասարակական մյուս կազմակերպությունների օրենսդրության կիրառման պրակտիկան, ընդունվեցին իրավական մի շարք նոր դրույթներ ու նորմեր, որոնք, մի կողմից՝ բխում էին «Հիմունքներից», մյուս կողմից՝ լրացնում աշխատանքային օրենսդրության թերի կողմերը։ Սոցիալ-տնտեսական քաղաքականության ոգով մշակված սկզբունքային նոր դրույթները բխում են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից և նպաստում աշխատավորական կո-*

լեկտիվների իրավունքների ընդլայնմանը, նրանց դերի բարձրացմանը, բանվոր-ծառայողների աշխատանքային իրավունքի ու շահերի առավել դեմոկրատացմանը։

Դրանով միաժամանակ բարձրանում է ձեռնարկությունների ղեկավարների, արհմիության պատասխանատվությունը։ Նրանք պետք է գործադրեն բոլոր ջանքերը, որպեսզի կոլեկտիվ պայմանագրերը բխեն աշխատանքային օրենսդրությունից, վերահսկողություն սահմանեն պայմանագրային պարտավորությունների կատարման վրա, իսկ ընթացքի մասին կողմերը պարբերաբար հաշիվ տան բանվորների ու ծառայողների կոլեկտիվի առջև։ Այս ամենն աշխատավորական կոլեկտիվի ընդլայնված իրավունքների վկայությունն է։ Օրենսգրքում շեշտվում է, որ ադմինիստրացիան իրավունք չունի աշխատանքային պայմանագրով չնախատեսված գործ պահանջելու աշխատողից. այդ սկզբունքի կիրառումն այսօր առավելապես անհրաժեշտ է, քանի որ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն անհրաժեշտ է արագացնել սոցիալիստական արտադրության զարգացման տեմպերը, բարձրացնել դրա արդյունավետությունը, աշխատանքի արտադրողականությունը, նոր զարկ տալ գիտատեխնիկական առաջընթացին, առավել չափով ներդնել տեխնոլոգիական նոր, էլեկտրոնիկայի օգտագործման վրա հիմնված պրոցեսներ։

Նման պայմաններում աշխատանքային պարտականությունների արագ կողմնորոշումը, հստակ ու ճիշտ կատարումը անհրաժեշտություն են։ Այդ գործում մեծ անելիքներ ունի դիրեկցիան։ Բանվորին կամ ծառայողին աշխատանքի ընդունելիս այն պետք է կանխորոշի նրա անելիքները և հետագայում աշխատանքային օրենսգրքից որևէ շեղում թույլ չտա։ Դատական պրակտիկայում պատահել է, որ դիրեկցիան պահանջել է կատարել այնպիսի գործ, որը կոլեկտիվ կամ անհատական երկկողմանի պայմանագրով ու տիպային կանոններով նրա աշխատանքային պարտականությունների մեջ չի մտնում (բանվորից պահանջել է կատարել ավտովարորդի, պարատավարից՝ դազգահի բանվորի պարտականությունը և այլն)։ Դա սոցիալիստական օրինականության կոպիտ խախտում է և կարող է վնասակար հետևանքներ ունենալ թե՛ աշխատողի և թե արտադրության համար։

Օրենքը հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին տվել է լայն իրավունքներ։ Իր նախաձեռնությամբ, ֆաբգործտեղկոմի նախնական համաձայնությամբ, բացառությամբ ՍՍՀ Միության օրենսդրությամբ նախատեսված դեպքերի, նա իրավունք ունի աշխատանքից ազատելու, այսինքն՝ աշխատանքային պայմանագիրը միակողմանի լուծելու այն աշխատողի նկատմամբ, որն անհարգելի պատճառներով իր վրա դրված աշխատանքային պարտականությունները սիստեմատիկաբար չի կատարում (եթե նրա նկատմամբ մինչ այդ կիրառվել են կարգապահական կամ հասարակական տույժի միջոցներ. 36 հոդ. 3-րդ կետ)։ Մինչև «Հիմունքներ»-ի ընդունումը օրենսգրքով նախատեսված էր միայն դիրեկցիայի տված տույժը, իսկ պրակտիկայում երբեմն հաշվի էին առնվում նաև հասարակական տույժերը. բայց դրանք, ունենալով բարոյական, ներգործող բնույթ, իրավաբանորեն ձևակերպված չէին։ ՍՄԿԿ XX—XXIV համագումարների որոշումներից հետո այնքան են բարձրացել աշխատավորական կոլեկտիվների, արհմիութենական, կոմերիտական ու հասարակական այլ կազմակերպությունների դերն ու հեղինակությունը, նրանց պատասխանատվությունն իրենց կազմակերպության անդամի աշխատանքային գործու-



նեության, վարքագծի և ընդհանրապես նրա բախտի նկատմամբ, որ արդեն
անհրաժեշտ էր իրավական բնույթ տալ նրանց կողմից կիրառվող ներգործող
միջոցներին, հավասարազոր դարձնել դրանք դիրեկցիայի հրամանով տրվող
տույժերին։ «Հիմունքներով», ապա նաև աշխատանքային նոր օրենսգրքով
այդպես էլ սահմանվեց. իր պարտականություններն անհարգելի պատճառով
սիստեմատիկաբար չկատարող աշխատողին ազատելու հարցը քննելիս նկատի
ունենալ ո՛չ միայն դիրեկցիայի, այլև հասարակական կազմակերպությունների
տված տույժերը։ Հասկանալի է, որ խոսքն այն դեպքերի մասին է, երբ աշ-
խատողի հարցը քննվել է աշխատանքային կարգապահության խախտման
առիթով և կայացվել է որոշում՝ նրա նկատմամբ հասարակական ներգործու-
թյան միջոց կիրառելու մասին, իսկ եթե աշխատողի հասցեին կազմակեր-
պության կամ կոլեկտիվի ժողովներում եղել են քննադատական ելույթներ,
կամ նրա վատ աշխատանքի մասին գրվել է պատի թերթում և այլն, ապա
դրանք հասարակական տույժ չեն համարվում. աշխատողի կարգապահական
խախտումը պետք է քննարկվի կոլեկտիվում և համապատասխան որոշմամբ
խախտումը հիմնավոր պիտի ճանաչվի ու տույժ սահմանվի։ Իրավական
բնույթ ունեն նաև ընկերական դատարանի, որպես կոլեկտիվի կամքն արտա-
հայտող օրգանի, վճռով սահմանված տույժերը. Նման հարցերը քննելիս
պետք է հաշվի առնել և դրանք՝ իբրև հասարակական տույժ։ `Այդ տույժերի
ներգործության վաղեմությունը պետք է հավասարազոր դարձնել դիրեկցիայի
տույժերի համար սահմանված մեկ տարվա վաղեմության ժամանակաշրջանին։
Օրենքն ամենևին չի զիջում գործալիքներին ու հարբեցողներին։ Այդ գոր-
ծում ևս մեծ անելիքներ ունեն աշխատավորական կոլեկտիվները։ Արտադրա-
կան-աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու նպատակով, արտա-
դրության շահերից ելնելով, հիմնարկ-ձեռնարկության դիրեկցիան իրավունք
ունի աշխատողին թեկուզ միայն մեկ օր անհարգելի պատճառով աշխատանքի
չներկայանալու համար, որպես գործալիքի, ազատելու աշխատանքից. գործա-
լքություն է համարվում հարբած վիճակում աշխատանքի ներկայանալը, կամ
աշխատանքի ժամին ոգելից խմիչք օգտագործելը։ Այս դեպքում ևս դիրեկ-
ցիան թույլ չի տալիս նման աշխատողին աշխատանքի անցնել և իրավունք
ունի հեռացնելու նրան՝ որպես գործալիքի։ Նման դեպքերում էական ազդե-
ցություն ունի աշխատավորական կոլեկտիվը, որը պետք է միջոցներ ձեռք
առնի, նախ՝ հարբեցողության պատճառներն ու նպաստող պայմանները վե-
րացնելու, ապա՝ թույլ չտա, որ գործը լուծվի միայն աշխատողին հեռացնե-
լով. չէ՛ որ դա շատ ավելի հեշտ է, քան նրան դաստիարակելը։ Այդ առնչու-
թյամբ նոր օրենսդրությամբ օրինականացված է նաև պրակտիկայում հասու-
նացած և աշխատավորական կոլեկտիվներում կիրառվող այն սկզբունքը, ըստ
որի դիրեկցիան, ֆաբգործտեղկոմի հետ միասին, իրավունք ունի արտադրու-
թյունը կազմալուծողներին լրիվին կամ մասնակիորեն զրկելու պարգևատրու-
մից, հանգստյան տների ու սանատորիաների ուղեգրից, ինչպես նաև հերթա-
ձգելու բնակարան ստանալու հերթը[1]։ Մյուս կողմից, օրենսգրքով խրախուս-
վում է աշխատավորական կոլեկտիվի անդամների պետական կամ հասարա-
կական բարեխիղճ գործունեությունը, սահմանվում նոր դրույթ՝ տալով նրանց
արտոնություններ ըստ աշխատավայրի. ՍՍՀՄ Միության ու Հայկական ՍՍՀ

1 Տե՛ս ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության 1972 թ. սեպտեմբերի 18-ի հրամանա-
գիրը՝ հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարն ուժեղացնելու մասին, հոդ. 3։

օրենսդրության համաձայն (75 հոդ.) կարող են տրվել լրացուցիչ արձակուրդներ, եթե նրանք անչափահասների դաստիարակ են, կամավոր հրշեջ խմբերի, հասարակական կարգը պահպանող կամավոր դրուժինայի անդամներ և այլն։

Կուսակցության XXIV համագումարի որոշումների կատարման առումով կարևոր է նաև հասարակայնության ընդգրկումը աշխատանքային գործերը քննելիս, որը չափազանց էական նշանակություն ունի և պետք է լայնորեն կիրառվի դատարանների և դատախազության աշխատանքում։ Դատարանների և դատախազության վիճակագրական հաշվետվությունների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ 1969 թ. աշխատանքում վերականգնելու գործերով եղել են ընդամենը 13, աշխատավարձի պահանջի՝ 8, 1970 թ., համապատասխանաբար 29 և 4, 1971 թ.՝ 18 և 6 արտագնաց նիստեր։

Ինչպես տեսնում ենք, տոկոսային հարաբերությամբ Հայաստանում խիստ նվազել են արտագնաց դատական նիստերը։ Եթե 1971 թ. Միության մասշտաբով աշխատանքում վերականգնելու վերաբերյալ լսված և վճռված գործերի 9,2 տոկոսն է լսվել արտագնաց նիստերում, ապա մեր հանրապետությունում միայն 3,8 տոկոսը։ Այս գործում զգալի անելիքներ ունեն շրջանային և քաղաքային դատախազները. նրանք պարտավոր են նախապատրաստական աշխատանք կատարել, դատարանների հետ մեկտեղ ընտրել, թե ո՛ր գործերը կարելի է քննել արտագնաց նիստում։ Աշխատանքի արդյունավետ կազմակերպման համար անհրաժեշտ է սերտ կապ հաստատել, նիստի հրավիրման ժամկետները համաձայնեցնել աշխատավորական կոլեկտիվների, կուսակցական, արհմիութենական և հասարակական այլ կազմակերպությունների հետ։ Այսպիսով, աշխատողները հնարավորություն կունենան առանց գործից կտրվելու մասնակցելու իրենց հիմնարկ-ձեռնարկություններում հրավիրվող դատական նիստերին։

Ընտրովի, զննված գործերի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ աշխատանքում վերականգնելու վերաբերյալ լսված և վճռված 428 գործերից ոչ մեկը չի լսվել արտագնաց դատական նիստում։ *Մինչդեռ այդպիսի նիստերում լսվելու հարմար գործեր շատ կային։ Այդ նիստերը դաստիարակչական խոշոր նշանակություն կունենային աշխատանքային օրենսդրության դրույթների պրոպագանդման, կիրառման ու ըմբռնման համար։ Ահա թե ինչ է գրել այդ մասին Վ. Ի. Լենինը դեռևս 1922 թ., իր* «Երկակի» ենթարկման և օրինականության մասին՝ *քաղբյուրոյի համար գրված նամակում։ «Եթե մենք ամբողջ ֆեդերացիայում, ինչ էլ ուզում է լինի, միասնական օրինականություն սահմանելու այս ամենատարրական պայմանը չկենսագործենք, ապա ոչ մի խոսք չի կարող լինել կուլտուրականության ոչ մի պաշտպանության և ոչ մի ստեղծման մասին» (Երկեր, հ. 33, էջ 431)։*

Պակաս կարևոր նշանակություն չունի հասարակայնության ներկայացուցիչների մասնակցությունը կոնկրետ գործերի դատաքննությանը։ *Մինչդեռ դատարանների վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ 1969 թ. հասարակայնության ներկայացուցիչները աշխատանքային և ոչ մի գործի քննության չեն մասնակցել, իսկ 1970 և 1971-ին մասնակցել են մեկական գործի դատավարության։ Դատական քննության ժամանակ աշխատավորական կոլեկտիվների, հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչների կարծիքը հայտնելը խոշոր նշանակություն ունի ինչպես հարցի ճիշտ լուծման, նույնպես և դատական նիստում ներկա գտնվողների դաստիարակության հա-*



*մար։ Աշխատավորական կոլեկտիվի ներկայացուցչի մասնակցությունը դատական նիստին, ըստ էության, ժողովրդական մասսաների վերահսկողության եղանակներից մեկն է։*

*Դատախազությունը և դատական մարմինները պետք է ջանան ապահովել հասարակայնության ներկայացուցիչների ակտիվ մասնակցությունը դատական, հատկապես աշխատանքային գործեր քննող նիստերին։ Այդ առավելապես վերաբերում է արհեստակցական միությունների լիազորների մասնակցությանը. ՀՍՍՀ քաղ. դատ. օր. 44 հոդվածով նրանք իրավունք ունեն հանդես գալու դատարանում, պաշտպանելու իրենց կազմակերպության անդամի իրավունքներն ու շահերը։ Սակայն պրակտիկայում այդպես չէ։ Նույնիսկ երբ, խախտելով ՀՍՍՀ աշխ. օր. 38 հոդվածի պահանջը, առանց ֆաբգործտեղկոմի նախնական համաձայնության դիրեկցիան ազատել է քաղաքացուն աշխատանքից, ֆաբգործտեղկոմները հայց չեն հարուցել դատարանին և իրենց լիազորված անձի միջոցով չեն պաշտպանել քաղաքացու աշխատանքային իրավունքները։*

*Աշխատանքային գործերի վերաբերյալ դատարանների կայացրած մաս-
նավոր որոշումների ուսումնասիրությունը և դրանց վերահսկումը ևս պետք է
արժանանան ժողդատարանների, շրջանային և քաղաքային դատախազություն-
ների մշտական ուշադրությանը. բայց, ինչպես ցույց է տալիս հետազոտու-
թյունը, այդ կարևոր գործը դուրս է մնացել ժողդատարանների, շրջանային և
քաղաքային դատախազների ուշադրությունից։*

*Աշխատանքային գործերին վերաբերող մասնավոր որոշումների ուսում-
նասիրությունը ցույց տվեց, որ մեծ մասամբ խախտվում է ՀՍՍՀ քաղ. դատ.
օր. 224 հոդվածը։ Դատարանը, գործեր քննելիս հայտնաբերելով օրինակա-
նության կամ սոցիալիստական համակեցության կանոնների խախտումներ
կամ էական թերություններ, պարտավոր է կայացնել մասնավոր որոշում, այն
ուղարկել համապատասխան հիմնարկ-ձեռնարկություններին, կազմակերպու-
թյուններին, պաշտոնատար անձանց կամ աշխատավորական կոլեկտիվներին,
որպեսզի նրանք միջոցներ ձեռք առնեն դրանց վերացման համար և 1 ամսվա
ընթացքում արդյունքների մասին հաղորդեն դատարանին։ Սակայն նման որո-
շումներ չեն կայացվել։ Շատ հաճախ կայացված մասնավոր որոշումներն
ունեն սոսկ նկարագրական, ոչ-ոքի ոչինչ չպարտավորեցնող բնույթ, և ար-
դյունքը լինում է այն, որ ոչինչ չի արվում աշխատանքային օրենսդրության
խախտման պատճառներն ու նպաստող պայմանները վերացնելու համար։
Ուսումնասիրված ոչ մի գործի վերաբերյալ պատասխան չկա, թե մասնավոր
որոշումն ստանալուց հետո ինչ է արվել օրինախախտման պատճառներն ու
նպաստող պայմանները վերացնելու նպատակով։ Բնականաբար, դատախա-
զությունը, որպես օրինականության հսկողությունն իրականացնող բարձրա-
գույն օրգան, չի կարող անցնել այս հարցերի կողքով, այլ պետք է ակտիվ
մասնակցի դատարանում աշխատանքային գործերի քննարկմանը, օգնի դա-
տարանին՝ բացահայտելու իրավախախտումներն ու թերությունները, դրանց
պատճառներն ու նպաստող պայմանները։ Պարտավոր է նաև նման դեպքե-
րում միջնորդել՝ մասնավոր որոշում կայացնելու։ Իսկ երբ ժող. դատարանը
անորոշ, օրենքին չհամապատասխանող որոշում է կայացնում, շրջանային և
քաղաքային դատախազը պարտավոր է մասնավոր բողոք ներկայացնել ՀՍՍՀ
Գերագույն դատարանին, մի բան, որ մինչ այդ չի արվել, չնայած դրա հետևո-*

ղական կիրառումն այնքան անհրաժեշտ է։ Լավ կլինի, որ ՍՍՀՄ Գերագույն դատարանը տա ղեկավար ցուցում մասնավոր որոշումների կայացման բովանդակության ու կարգի վերաբերյալ, կամ այդ հարցը օրենքով կարգավորվի (տե՛ս Тезисы докладов по научной конференции, секция I—5, 1971)։

Ինչպես տեսանք, ժողդատարանները, շրջանային և քաղաքային դատախազությունները դեռևս իրենց հնարավորություններն ու միջոցներն ինչպես հարկն է չեն օգտագործում՝ հասարակայնությանը լայն չափով ընդգրկելու օրինախախտումների դեմ մղվող պայքարում։ Մինչդեռ կուսակցությունը պահանջում է համակողմանի զարգացնել սոցիալիստական դեմոկրատիան, ուժեղացնել աշխատանքային օրենսդրության կատարման, աշխատավորների իրավունքների ու էական շահերի պաշտպանման վերահսկողությունն ու բարձրագույն հսկողությունը։ Ահա ինչու աշխատանքային իրավունքի հարցերը ենթակա են կուսակցական կազմակերպությունների, աշխատավորների դեպուտատների սովետի, գործկոմների և, հատկապես, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության վերահսկողությանը. վերջինս ամեն տարի քննարկում է այդ հարցերը և նախատեսում միջոցառումներ դրությունը բարելավելու նպատակով։ Կուսակցության որոշումների լույսի տակ աշխատավորական կոլեկտիվներում զգալի գործ է արվում նրանց իրավական դաստիարակության համար. պրոպագանդվում են սովետական և աշխատանքային իրավունքները, աշխատավորներն ավելի բանիմացորեն են պաշտպանում իրենց օրինական շահերը, ջանում վերականգնել խախտված իրավունքները։

Պրակտիկան ցույց է տալիս, որ որոշ ղեկավարներ դեռևս չգիտեն աշխատանքային օրենսդրության նորմերը, և նրանց իրավաբանական անգրագիտությունը հասնում է այն աստիճանի, որ աշխատողին ազատելու հրամանում միաժամանակ սահմանում են քրեական պատիժ, այն է՝ զրկել նրան հետագայում առևտրի կամ լուսավորության ցանցում աշխատելու իրավունքից. մինչդեռ այդպիսի պատիժ սահմանելու իրավազոր է միայն դատարանը։ Միամտություն կլինի կարծել, թե բոլոր դեպքերում մեր հիմնարկ-ձեռնարկություններին ղեկավարները օրենքը չիմանալու հետևանքով են թույլ տալիս այդ իրավախախտումները։ Ուսումնասիրություններից պարզվել է, որ 1969 թ. դատարանի վճռով աշխատանքում վերականգնվել է բանվոր-ծառայողներից 44,3, իսկ 1971 թ. 28,5 տոկոսը դիրեկցիայի կողմից աշխատանքից ազատվել են՝ առանց ֆաբգործտեղկոմների նախնական համաձայնության, խախտելով ֆաբգործտեղկոմների իրավունքների կանոնադրության 18-րդ հոդվածի պահանջները։ Եվ, եթե նույն հիմնարկ-ձեռնարկությունում կրկնվում են այդ օրինախախտումները, ուրեմն ղեկավարները ոչ թե օրենքը չգիտեն, այլ չեն ցանկանում հասարակական օրգանի հետ հաշվի նստել, կիրառել օրենքը։ Ղեկավարները պատասխանատու են և՛ օրենքը չիմանալու, և՛ օրենքն իմանալով՝ այն չկիրառելու համար։ Սակայն պրակտիկայում շրջանային դատախազներն ու ժողդատարանները և արհմիության ղեկավարները հազվադեպ են նրանց պատասխանատվության ենթարկում։ Այս ասպարեզում ևս խիստ կարևոր է իրավական կարգավորումը։ Իրավունքի ծառայական դերը կհանգեր ոչնչի, եթե նրա կոնկրետ դրսևորումներն արդյունավետ չլինեին։ Այդ արդյունավետությունը պայմանավորված է մի շարք հանգամանքներով, տնտեսական և սոցիալական գործոններով։ Աշխատանքային նորմերի պահպանման համար



անհրաժեշտ է բոլոր հիմնական ազդակների կոմպլեքսային, ճիշտ ու ներդաշնակ զուգորդում։

Հիմնարկ-ձեռնարկությունների դիրեկցիան, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների հետ մեկտեղ, պետք է ջանա վերացնել աշխատանքային օրենսդրության խախտումները, բարելավել «սոցիալական կլիման» կոլեկտիվում, ամեն ինչ անել տեխնիկա-կազմակերպչական պատճառներով պարապուրդներ չտալու, կարգապահության խախտումները բացառելու համար։

Փորձը ցույց է տալիս, որ կոմունիստական աշխատանքի բրիգադանե-
րում, արտադրամասերում և նույնիսկ ամբողջ ձեռնարկություններում հազվա-
դեպ են աշխատանքային կարգապահության խախտումները, իսկ եթե լինում
էլ են, ապա կոլեկտիվն իր վրա է վերցնում աշխատողի դաստիարակությունը,
ջանում վերացնել դրա պատճառները։ Այդ գործում մեծ վաստակ ունեն Երե-
վանի Կիրովի անվան քիմիական կոմբինատը, կաբելի գործարանը։ Այդ բազ-
մահազարանոց կոլեկտիվներում վերջին 5—6 տարում աշխատանքից անօրեն
ազատելու և ոչ մի դեպք տեղի չի ունեցել։ Նշված ձեռնարկությունների կոլեկ-
տիվները ծագած վեճերը լուծում են առանց դատարանի ու դատախազի։

Մեր հանրապետությունում գործում են 1.550 ընկերական դատարաններ։
Նրանց հասարակական-իրավական գործունեությունը կարող է վիթխարի դեր
խաղալ աշխատանքային կարգապահության ամրապնդման գործում։ Սակայն
մինչև օրս ուսումնասիրված չէ ընկերական դատարանների գործունեության
արդյունավետությունը, լրջորեն չի ամփոփվել նրանց աշխատանքի դրական
փորձը։

Կոչված լինելով ապահովելու աշխատանքային օրենսդրության ճշգրիտ
կատարման բարձրագույն հսկողությունը, դատախազությունը կարող է կոոր-
դինացնել դատախազության ու դատարանների, ֆաբգործտեղկոմների ու ըն-
կերական դատարանների և հասարակական այլ կազմակերպությունների գոր-
ծունեությունը։ Անհրաժեշտ է համատեղ ու համակողմանի պայքար ծավալել
պետական ու աշխատանքային կարգապահությունը խախտողների, ինչպես
և բանվոր-ծառայողներին աշխատանքից անօրեն ազատողների դեմ. ակտի-
վացնել դատախազության կողմից կազմակերպվող ստուգումները, տեղերում
կազմակերպել բանվոր-ծառայողների ընդունելություն, բացահայտել աշխա-
տանքային օրենսդրության խախտման պատճառներն ու դրան նպաստող պայ-
մանները. աշխատանքային օրենսդրության խախտումներն ուսումնասիրել ըստ
ժողովրդական տնտեսության ճյուղերի, շրջանների, առանձին ձեռնարկություն-
ների, կազմակերպությունների, իրավա-տնտեսական, սոցիոլոգիական տե-
սանկյունից ուսումնասիրել կոլեկտիվի հոգեբանությունը, բանվորների հոգե-
կան պահանջմունքները՝ կուլտուրական, կրթական մակարդակը։ Ճիշտ կլինի
նաև կազմել իրավախախտողների սոցիալական քարտ։

Մեր հանրապետությունում ժամանակն է, որ որոշ մինիստրություններ,
առանձին ձեռնարկություններ փիլիսոփաների, սոցիոլոգների, տնտեսագետների
և իրավաբանների հետ, համատեղ ուսումնասիրությունների հիման վրա, կազ-
մեն արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման պլանը։

Այս ամենը լրջորեն կնպաստի զարգացած սոցիալիստական հասարա-
կարգից կոմունիստական հասարակարգին անցնող քաղաքացու ձևավորմանը,
նրա բարոյական կերպարի ամբողջացմանը։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԻ ԵՎ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՄԱՐ

**Կ. Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար

*Երբ 1973 թվականը հայտարարվեց հնգամյակի վճռական տարի, կուսակցության Սիսիանի շրջկոմում անմիջապես բազմակողմանի քննարկվեց այդ հարցը։ Կոլտնտեսությունների ու սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները մշակեցին ժողովրդական տնտեսության զարգացման միջոցառումների պլան, որն ամփոփվեց կուսշրջկոմի պլենումում։ Խնդիրը դրվեց այնպես, որ 1971—1972 թթ. բաց թողածը լրացվի ընթացիկ տարում, ստեղծվեն ամուր հիմքեր՝ հնգամյակի վերջին տարիներին պլանների կատարումն անվերապահորեն ապահովելու համար։*

*Եվ այսօր, երբ ամփոփում ենք նախնական արդյունքները, պարզվում է, որ սիսիանցիները առաջընթաց լուրջ քայլեր են արել, հասել որոշակի հաջողությունների։ Կոլտնտեսություններն ու սովխոզները, ամբողջությամբ վերցրած, զգալիորեն գերակատարել են կաթի, մսի, ձվի պետական գնումների երկուսուկես տարվա առաջադրանքները։ Առաջընթացի ճանապարհին շրջադարձային էր իններորդ հնգամյակի վճռական տարվա առաջին կիսամյակը. կաթի արտադրության պլանը շրջանը կատարեց 117,4, մսինը՝ 123,3, ձվինը՝ 177,4 և բրդինը՝ 129,1 տոկոսով։ Դրականն այն է, որ կոլտնտեսությունների գերակշռող մասը կատարեց կիսամյակի առաջադրանքները։ Առավել բարձր ցուցանիշների հասան Գետաթաղի, Սալվարդի, Դարբասի, Բարձրավանի կոլտնտեսությունները, Սիսիանի սովխոզը։*

*Սակայն ձեռք բերածը մեզ համար սահման չի կարող լինել, քանի որ մեր առջև ծառացած է բնակչության հարաճուն պահանջմունքները բավարարելու կարևոր խնդիրը։ Իսկ դրա լուծման համար մենք պետք է օգտագործենք բոլոր հնարավորություններն ու ռեզերվները, որոնք, մասնավորապես գյուղատնտեսության բնագավառում, մեզ մոտ շատ են։ Ընդ որում, այդ ամենը պետք է իրականացնենք ո՛չ թե գյուղատնտեսության վարման նախկին մեթոդներով, այլ գյուղատնտեսության ինտենսիվացման ճանապարհով։*

*ՍՄԿԿ XXIV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ ամբողջ էկոնոմիկայի վերելքի տեմպերը, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման տեմպերը մեծապես կախված են գյուղատնտեսության հաջող զարգացումից։ Համագումարը նշեց այդ զարգացման հիմնական ուղղությունները՝ ցեղի բարելավում, կերի բազայի ամրապնդում, նոր սորտերի և կերատեսակների ներդրում, մեքենայացում, մելիորացիա, ոռոգում և այլն։ Ղեկավարվելով այդ պահանջներով՝ մենք մեծ կարևորություն ենք տալիս գյուղատնտեսության զարգացման հարցերին, ձգտում ավելի լրիվ օգտագործել եղած հնարավորությունները, բացահայտել ու գործադրել թաքնված ռեզերվները։*

*Մինչև այժմ շրջանային օրգաններն արտադրության զարգացման զանազան միջոցառումներ են իրականացրել։ Մենք ձգտում ենք, որպեսզի նախաձեռնությունները ծնունդ առնեն ներքևից և պաշտպանություն գտնեն շրջանային օրգանների կողմից։ Այդ դեպքում է միայն հնարավոր մոբիլիզացնել թաքնված հնարավորություններն ու ռեզերվները, ապահովել արտադրության աննախադեպ զարգացումը։*

*Քիչ չեն դեպքերը, երբ, վերլուծելով իրենց հնարավորությունները, շրջանի կուսկազմակերպությունները հանդես են գալիս այնպիսի նախաձեռնություններով, որոնց նպատակն է հայտաբերել նոր ռեզերվներ։ Այդպիսի նախաձեռնություններ հաճախակի են ծնվում Սիսիանի շրջկենտրոնի պետական տնտեսությունում (դիրեկտոր՝ Վ. Մարտիրոսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Հ. Հարությունյան)։ Կաթնանասնապահական այս սովխոզը վերջին տարիներին մեծ չափերով գերակատարում է պետությանը միս հանձնելու առաջադրանքները։ Որպես մսի արտադրության լրացուցիչ ճյուղեր, այստեղ մեծ կարևորություն է տրվում խոզաբուծությանն ու թռչնաբուծությանը։ Արդյունքը, ինչ խոսք, գոհացուցիչ է. եթե մի քանի տարի առաջ այս տնտեսությունում խոզի և թռչունի միս ընդհանրապես չէր արտադրվում, ապա այժմ մսի արտադրության հաշվեկշռում այդ ճյուղերն զգալի բաժին ունեն։*

*Սիսիանի սովխոզում արմատավորվել է նաև ոռոգումը անձրևացման եղանակով կատարելու մեթոդը։ Դա հնարավորություն է ընձեռում զգալիորեն անտեսելու բանվորական ուժը, պայքարելու ջրաողողման դեմ, որից մեր հողատեսքերը շատ են տուժում։ Եվ, վերջապես, այս տնտեսությունում լուրջ քայլեր են արվում կերի արտադրության առաջավոր մեթոդների ներդրման պարեզում։ Խոսքը վերաբերում է սենաժի պատրաստմանը։*

*Արտադրության վերելքին նպաստող հիանալի գործերի հեղինակ են նաև Բռնակոթի կոլտնտեսության աշխատողները (նախագահ՝ Մ. Հովհաննիսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Վ. Քոչարյան)։ Այստեղ արդեն մի քանի տարի է, ինչ իրականացվում են գյուղատնտեսության կոմպլեքսային մեքենայացման միջոցառումներ։ Այժմ կաթնապրանքային ֆերման լրիվ մեքենայացված է, ընդ որում, կաթի ագրեգատներ և աղբահանման ժապավենային սարքեր են տեղադրվել նաև ամառանոցների գոմերում։ Այս տարի բռնակոթցիները հանդես եկան նոր նախաձեռնությամբ. ստեղծեցին հացահատիկի և բազմամյա խոտաբույսերի մշակության կոմպլեքսային, մեքենայացման օղակ, որի գործունեության նախնական արդյունքները խոստումնալից են թե՛ բերքա-*

տվության բարձրացման և թե՛ ինքնարժեքի իջեցման տեսակետից։ Որո՞նք են այս հաջողությունների պատճառները։ Նախ այն, որ սկզբնական կուսկազմակերպությունները մոտիկից են զբաղվում արտադրության կատարելագործմամբ, խորանում են դրա էության մեջ, կուսժողովներում պարբերաբար քննարկում հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանն առնչվող հարցեր, օգնում են սովխոզի դիրեկցիային և կոլտնտեսության վարչությանը՝ հայտաբերելու և գործադրելու գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնապահական մթերքների աճին նպաստող նոր հնարավորություններ և ռեզերվներ։

Սիսիանի շրջկենտրոնի սովխոզի և Բռնակոթի կոլտնտեսության օրինակը շրջանում եզակի չէ։ Բայց արտադրության ռեզերվների որոնման, այդ առթիվ ծնված նախաձեռնությունների արդյունավետությունն առավել մեծանում է, երբ դրանցից լավագույնները դառնում են մյուս տնտեսությունների սեփականությունը։ Հաշվի առնելով այդ՝ կուսշրջկոմը բյուրոյի նիստերում հաճախակի քննարկում ու ընդհանրացնում է արտադրական լավագույն փորձը, պրոպագանդում այն, առաջավոր տնտեսություններում կազմակերպում սեմինարներ, որոնց մասնակցում են տնտեսությունների ղեկավարները, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները, գյուղատնտեսության մասնագետները։ Կուսշրջկոմի բյուրոն հավանություն է տվել Սիսիանի սովխոզի թռչնաբուծական ֆերմայի և Բռնակոթի կոլտնտեսությունում կովերի մեքենայական կթի կազմակերպման առաջավոր փորձին, դրանց վերաբերյալ հրապարակել հատուկ թերթիկներ և տարածել տնտեսություններում։

Սակայն ներքին ռեզերվները կյանքի կոչելու խնդիրները չեն կարող սահմանափակվել միայն ներքևից բարձրացվող հարցերի լուծմամբ։ Ունենալով ժողովրդական տնտեսության և հատկապես գյուղատնտեսության վարման ինտենսիվ մեթոդների իրականացման որոշակի ծրագիր՝ կուսշրջկոմը մշակում և իրականացնում է ավելի արդյունավետ միջոցառումներ, որոնք նպաստում են շրջանի էկոնոմիկայի զարգացմանը։ Արտադրության հարուստ ռեզերվներ են պարունակում նաև գիտության նվաճումները։ Դրանց պրոպագանդումն ու տարածումը շրջանի կուսկազմակերպության անհետաձգելի խնդիրներից են։ Հենց վերջերս Սիսիանում գիտաարտադրական կոնֆերանս անցկացվեց հանրապետության երկրագործության գիտահետազոտական ինստիտուտի գիտնականների և կուսշրջկոմի նախաձեռնությամբ։ Կոնֆերանսում արծարծվեցին գյուղատնտեսության զարգացման հնարավորություններն ու ռեզերվները տեղին և ռացիոնալ օգտագործելու խնդիրները։ Երկրագործության և հողագործության ու ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտները մեզ մոտ ունեն իրենց հենակետերն ու փորձակայանները, որոնք արդեն լուրջ քայլեր են կատարում գիտության և արտադրության մերձեցման համար։ Այս ամենը, անշուշտ, նպաստում է ո՛չ միայն արտադրության խելացի կազմակերպմանը, այլև ներքին ռեզերվների հայտաբերմանը։

Որպես անասնապահական շրջան, մեզ համար ամենակարևոր խնդիրը կերի կայուն բազայի ամրապնդումն է, այդ ասպարեզում նոր ռեզերվների հայտաբերումն ու օգտագործումը։ Այս կապակցությամբ մեծ հույսեր ենք կապում կուլտուրական արոտավայրերի սիստեմի ստեղծման հետ։ Դրանք, նախ, զգալիորեն ավելացնում են կերի արտադրությունը. խոտախառնուրդի ընտրությունը ճիշտ կազմակերպելիս ստացվում է լիարժեք, բարձրորակ կեր, որի



ռացիոնալ օգտագործմամբ կարելի է հասնել մեծ արդյունավետության։ Երկրորդ, կովերը կուլտուրական արոտավայրում պահելու դեպքում հնարավոր է լինում հեշտությամբ լուծել դրանց ցեղայնության բարելավման հարցը, որը մինչև այժմ մեզ մոտ հարմարեցվում էր բնական պայմաններին։ Այդ պատճառով շրջանի բնական վատ պայմաններ ունեցող տնտեսություններում, օրինակ, Լոր, Լծեն, մեկ կովի տարեկան կաթնատվությունը կազմում է 1.100—1.200 կգ, մինչդեռ Որոտանի և Սառնակունքի տնտեսություններում՝ 2.200—2.300 կգ։ Երրորդ, արոտային շրջանում կովերի համար առանձնացվում են ամենալավ արոտավայրերը։ Չորրորդ, կուլտուրական արոտավայրեր ունենալու դեպքում անասնապահության մեքենայացման աստիճանը կհասնի առավելագույնի։ Եվ, վերջապես, կուլտուրական արոտավայրերի ստեղծմամբ կլուծվեն նաև անասնապահների աշխատանքի, կենցաղի և հանգստի ճիշտ կազմակերպման հարցերը, քանի որ դրանք կլինեն գյուղամերձ հողակտորներում։

Հաշվի առնելով կաթի և մսի արտադրության ավելացման հույժ կարևորությունը՝ կուսշրջկոմը հարց հարուցեց Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության առջև՝ Շաքիի, Դարբասի, Լորի, Հացավանի և Որոտանի կոլտնտեսությունների համար կազմել կուլտուրական արոտավայրերի նախագծեր։ Հարցը լուծվեց, և այժմ գործնական աշխատանք է կատարվում այդ ասպարեզում։

Մսի արտադրության ավելացման համար կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների մշակած միջոցառումներում կարևոր տեղ են տրվում շրջանի տնտեսություններում խոզաբուծական և թռչնաբուծական նոր ֆերմաների ստեղծմանը և եղածների խոշորացմանը։ Այդ առթիվ քննարկել ենք մի շարք հրատապ հարցեր, որոնց լուծումը, անտարակույս, նպաստել է կոլտնտեսություններում և սովխոզներում խոզաբուծական ու թռչնաբուծական ֆերմաների ստեղծմանը, գլխաքանակի ավելացմանը, մսի և ձվի արտադրության ու վաճառքի աճին։ Վերջին մեկուկես տարում 10 տնտեսություններում ստեղծվել են խոզաբուծական ֆերմաներ, Սիսիանի, Ախլաթյանի, Նորավանի սովխոզներում, Դարբասի և Բռնակոթի կոլտնտեսություններում խոշորացվել են թռչնաբուծական ֆերմաները։ Եթե անցած հնգամյակի վերջին տարում շրջանի տնտեսությունները պահում էին 488 գլուխ խոզ և 67.800 գլուխ թռչուն, ապա այժմ համապատասխանաբար՝ 2.070 և 177 հազար։ Այլ խոսքով, հնարավոր եղավ պետությանը մսի վաճառքի հաշվեկշռում զգալիորեն ավելացնել խոզի և թռչնի մսի տոկոսը։ Միայն 1972 թ. մթերակայան է հանձնվել 956 ցենտներ թռչնի, 761 ցենտներ խոզի միս կամ մեծ չափով ավելի, քան նախորդ տարիներին։ Այս տարի կվաճառվի ավելի շատ։

Խոզաբուծության և թռչնաբուծության զարգացման հարցով այսուհետև նույնպես հետևողական աշխատանք պետք է տանենք, ավելացնենք անասունների այդ տեսակների գլխաքանակը։ Սակայն մսի արտադրության և վաճառքի ասպարեզում հիմնական տեղում դարձյալ մնալու է խոշոր եղջերավոր անասնապահությունը, որտեղ չօգտագործված շատ ռեզերվներ ունենք։ Յուրաքանչյուր տարի շրջանի տնտեսությունները մթերակայան են հանձնում մոտ 7.000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն։ Դրանց միջին քաշը անցյալ տարի կազմեց 235 կգ։ Եթե կարողանանք մթերակայան հանձնվող անասունների միջին կենդանի քաշը հասցնել 300—400 կգ-ի, ապա կհաջողվի ամեն տարի պետու-

*թյանը լրացուցիչ վաճառել ավելի քան 7.000 ցենտներ միս։ Այդ խնդրի լուծ-
ման համար այժմ շրջանի տնտեսություններում կիրառվում է մատղաշի աճեց-
ման ու գիրացման արդյունավետ եղանակ։ Այդ եղանակով այժմ աճեցվում է
1.150 գլուխ մատղաշ։ Առաջին ամիսների արդյունքները գոհացուցիչ են և
ցույց են տալիս, որ մենք այդ ռեզերվից մեծ օգուտ կքաղենք։*

*Գյուղատնտեսության բնագավառում կուսշրջկոմի և սկզբնական կուսկազ-
մակերպությունների մյուս միջոցառումը վերաբերում է ջրատնտեսական կա-
ռույցների շինարարությանն ու շահագործմանը։ Սիսիանում տարեկան միջին
տեղումների քանակը չի անցնում 360 մմ-ից, հետևաբար, ոռոգման սիստեմի
ստեղծման միջոցով է միայն հնարավոր լուծել յուրաքանչյուր տնտեսությու-
նում կերի բազայի ամրապնդման խնդիրը։*

*Ներկայումս ջրաշինարարական աշխատանքները մեծ ծավալ են ստացել։
Այս տարի շահագործման կհանձնվի Բնունիսի 900 հեկտար ջրելու կարողու-
թյամբ ջրհան կայանի առաջին հերթը, որով հնարավոր կլինի ջրովի դարձնել
100 հեկտար հողատարածություն։ Կառուցվում են Ուզի ջրհան կայանի երկ-
րորդ հերթը՝ 1.600 հեկտար ջրելու կարողությամբ, Սպանդարյանի ջրանցքի
ներքին ցանցը, Սիսիանի գյուղերի ջրարբիացման սիստեմը՝ 9.000 հեկտարի
համար։ Շատ կարևոր է հողերի մեխանիկական ջրումը։ Մեզ մոտ արդեն 350
հեկտարի վրա կիրառվում են անձրևացման ագրեգատներ, որոնք լավ ար-
դյունք են տալիս։ Սակայն, այնուամենայնիվ, ջուրն անկորուստ բույսին հաս-
ցընելու գործում կան որոշակի դժվարություններ, որոնք կարելի է հաղթահա-
րել ջրատնտեսական կառույցների շահագործմամբ։ Երկրորդ, մենք պետք է
ամենակարճ ժամկետում լուծենք Որոտանի կասկադի ջրամբարների ջրերը
ոռոգման նպատակով օգտագործելու խնդիրը։ Այս տեսակետից կարևոր նշա-
նակություն ունի Ջանգեզուրի ջրանցքի ոռոգման սիստեմի կառուցումը, որը
պետք է ձգվի Բազարչայից մինչև Գորիսի շրջանի տերիտորիան և ոռոգի ավելի
քան 12 հազար հեկտար տարածություն։ Սա մեծածավալ աշխատանք է, և եթե
հենց եկող տարվանից ձեռնարկվի այդ գործին, ապա հազիվ թե հիդրոշինա-
րարները կարողանան ավարտել տասներորդ հնգամյակի տարիներին։ Դրանով
հնարավոր կլինի Սպանդարյանի ջրամբարի ջրերն օգտագործել ոռոգման նպա-
տակով։*

*Կուսշրջկոմը ջրաշինարարական աշխատանքը մշտապես պահում է ուշա-
դրության կենտրոնում, պարբերաբար քննարկում դրա հետ առնչվող խըն-
դիրները։ «Լոռի և Որոտանի կոլտնտեսությունների ջրհան կայանների շինարա-
րության ընթացքի մասին» և «Սպանդարյանի ջրանցքի երեսպատման աշխա-
տանքի ընթացքի մասին» հարցերի քննարկումը մեծ բեկում մտցրեց ոռոգման
գործի կազմակերպման մեջ։*

*Մեր շրջանի յուրօրինակ ռելիեֆի պատճառով լուրջ դժվարություններ են
ստեղծվում գյուղատնտեսական մեքենաների օգտագործման համար։ Ուստի,
կարևոր նշանակություն ունեն հողերի բարելավումը, մելիորատիվ մյուս մի-
ջոցառումների անցկացումը։ Վերջին երկու տարում 1.307 հեկտարի վրա նման
աշխատանք է կատարվել, սակայն արտադրության զարգացման շահերը պա-
հանջում են առաջիկայում ավելի ուժեղ թափով առաջ տանել այդ գործը։ Ընդ
որում, առավել ուշադրություն ենք նվիրելու Բազարչայ, Բորիսովկա, Աշոտա-
վան և Տոլորս գյուղերի տնտեսությունների համար հողերի իրացմանն ու հար-
թագծմանը, որովհետև Որոտանի կասկադի ջրամբարների ստեղծման պատ-*



*ճառով նրանց ավելի քան 1.800 հեկտար հողատարածություն մնալու է
ջրի տակ։*

*Անասնապահական մթերքների արտադրության ավելացման համար շըր-
ջանի տնտեսություններում շատ անելիքներ կան, թեև վերջին տարիներին այդ
ասպարեզում լուրջ տեղաշարժեր են եղել։ Բանն այն է, որ շրջանում դեռևս
ունենք մի շարք փոքր տնտեսություններ, որոնք տարիներ շարունակ գտնվում
են, այսպես կոչված, ետ մնացողների ցուցակում և շրջանի միջինից զգալի-
րեն ցածր արդյունք են ստանում։ Բարձր ցուցանիշների հասնելու համար ան-
հրաժեշտ է այդ տնտեսություններում լուծել մի շարք հարցեր։ Նախ՝ դրանք
պետք է խոշորացնենք, ինչպես արդեն մի քանի տեղերում արել ենք, երկ-
րորդ՝ մշակել ենք միջոցառումների պլան, որն ուղղված է արտադրական խըն-
դիրների լուծմանը։ Այսպես, օրինակ, Վաղուդիի կոլտնտեսության էկոնոմի-
կայի՝ 1972—1973 թթ. զարգացման միջոցառումներով նախատեսվում է «Հա-
վուզի» կոչվող հանդամասից 35 հեկտար հատկացնել առվույտին, երեսպատել
2,5 կմ երկարությամբ ոռոգման առուն, կառուցել ջրհան նոր կայան ու ռչխա-
րանոցներ, մեքենայացնել գոմերը, կատարել 30 հեկտար մելիորացիոն աշ-
խատանք, բարելավել ցեղաբուծական գործը, խոշորացնել խոզաբուծական
ֆերման, հանրային հոտի համար ստեղծել ջրի նոր պաշարներ։ Գործնական
են նաև մյուս տնտեսությունների էկոնոմիկայի զարգացման նպատակով մշակ-
ված միջոցառումները։ Դրանց իրականացմամբ կոլտնտեսություններն ու սով-
խոզները ամրապնդում են իրենց էկոնոմիկան, հետագա վերելքի համար
ստեղծում նպաստավոր պայմաններ։*

*Դաշտավարության ինտենսիվացման բնագավառում մեծ ուշադրություն
ենք նվիրում հանքային և օրգանական պարարտանյութերի օգտագործմանը,
ինչպես նաև հացահատիկի և մյուս կուլտուրաների նոր սորտերի արմատա-
վորմանը։ Այս կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի.
Բրեժնևը կուսակցության XXIV համագումարին տված զեկուցման մեջ ասաց.
«Կոլտնտեսություններն ու սովխոզները, գյուղատնտեսական մարմինները
պետք է հետևողականորեն հասնեն ցանքատարածությունների կառուցվածքի
բարելավմանը, նախապատվությունը տալով այն կուլտուրաներին ու սորտե-
րին, որոնք առավելագույն բերք են տալիս» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյու-
թերը, էջ 64)։ Ելնելով կուսակցության այս պահանջից՝ կուսշրջկոմի բյուրոն
համագումարից հետո քննարկեց «Շրջանում հացահատիկի արտադրությունն
ավելացնելու միջոցառումների մասին» հարցը և որոշեց աշնանացանին հատ-
կացված դաշտերի ճնշող մասում ցանել բարձր բերքատու սորտեր («Բեզոստա-
յա—1», «Ավրորա», «Կավկազ»)։ Անցյալ տարի շրջանի տնտեսությունները
«Բեզոստայա—1», «Ավրորա» և «Կավկազ» բարձր բերքատու սորտերին հատ-
կացրին 3.500 հեկտար, որը կազմում է աշնանացանի մոտ 50 տոկոսը։ Մեր
առաջնահերթ գործն է այդ սորտերը ներդնել բոլոր տնտեսություններում և
ապահովել հացահատիկի արտադրության վերելքը։ Նախատեսվում է ընթացիկ
տարվա աշնանն այդ սորտերով ցանել ավելի քան 5.000 հեկտար։*

*Մեր կարծիքով, վերոհիշյալ միջոցառումների իրականացմամբ հնարա-
վորություն կստեղծվի շրջանում զգալիորեն ավելացնել նաև անասնապահա-
կան մթերքների արտադրությունը։ Սակայն դրանք համարում ենք գյուղա-
տնտեսության զարգացման խնդիրների լուծման առաջին էտապը։ Գյուղատըն-
տեսության ինտենսիվացման հաջորդ փուլում մենք ավելի մեծ խնդիրներ*

կլուծենք, որոնք նոր աստիճանի կբարձրացնեն մթերքների արտադրության մակարդակը։

Ուշադրությունը կենտրոնացնելով գյուղատնտեսական արտադրության զարգացման վրա՝ կուսշրջկոմը վերջին տարիներին եռանդով է զբաղվում նաև շրջանի էկոնոմիկայի երիտասարդ ճյուղերի՝ արդյունաբերության և շինարարության, հարցերով։ Անկասկած, շրջանի էկոնոմիկայի վերելքը պայմանավորված է բոլոր ճյուղերի համամասնական զարգացմամբ։ Նախ, նշենք, որ մեր արդյունաբերական ձեռնարկությունները կատարել են երկուս ու կես տարվա համախառն արտադրանքի թողարկման, ինչպես նաև իրացման պլանները։ Դա մեծապես նպաստում է նրանց կոլեկտիվների արդյունավետ գործունեության ու ամրապնդմանը։

Սակայն հեռանկարի տեսակետից մեզ հրապուրում են մի շարք խնդիրներ, որոնց լուծմամբ հնարավոր է օգտագործել նոր ռեզերվներ։ Ամենից առաջ անհրաժեշտ է արդյունավետ օգտագործել այն արտադրական տարածությունները, որոնք ազատվել են զանազան պատճառներով։ «Հայէլեկտրալույս» միավորման մասնաճյուղը, որտեղ այժմ աշխատում են 300 բանվորներ, տեղավորվել է հենց այդպիսի շենքերում։ Այսպիսի արտադրական տարածության օգտագործմամբ է սկսել իր գործունեությունը նաև շրջկենտրոնի արդյունաբերական կոմբինատը։ Նման ձևով արդյունաբերական ձեռնարկությունների ստեղծման հնարավորությունները ո՛չ թե սպառվում, այլ մեծանում են։ Արտադրական և բնակելի մեծ տարածություններ կան Դաստակերտ և Շամբ ավաններում, որտեղ առաջիկայում նույնպես պետք է արտադրություն կազմակերպել։ Բանն այն է, որ Դաստակերտի պղնձա-մոլիբդենային կոմբինատի արտադրանքի ծավալի կրճատման պատճառով արտադրական տարածություններն ազատ են մնացել։ Անհրաժեշտ է դրանց տեղերում ձեռնարկություններ ստեղծել ո՛չ միայն արտադրանք տալու, այլև եղած բանվորական ուժը տեղում պահելու համար։

Դաստակերտի օրինակն այժմ մեզ ստիպում է Շամբ ավանում արտադրական ձեռնարկությունների ստեղծման մասին մտածել հենց այսօրվանից։ Այդտեղ թեև բնակվում են Շամբի հիդրոկայանի շինարարները, սակայն մի քանի տարի հետո ավանի բնակիչների համար անհրաժեշտ կլինի աշխատանքի ասպարեզ։ Չի բացառվում, որ Շամբը կարելի է դարձնել արդյունաբերական մի այնպիսի ավան, որտեղ հնարավոր կլինի եղած մասնագետների և բանվորների միջոցով ո՛չ միայն արտադրություն կազմակերպել, այլև, օգտագործելով տեղի բնակլիմայական պայմանները, ստեղծել հիանալի հանգստյան գոտի։

Մեծ ռեզերվներ ու հնարավորություններ կան շինարարության ծավալման ասպարեզում։ Սիսիանում կապիտալ շինարարության տասնամյա պատմությունը կապվում է Որոտանի կասկադի կառուցման հետ։ Այդ ընթացքում ձևավորվել են շինարարների մի շարք լավագույն կոլեկտիվներ, որոնք իրենց ձեռագիրն են թողել շրջանի ամբողջ պատմության վրա։ Նախկին մի քանի հազար ռուբլու փոխարեն Սիսիանը ներկայումս կատարում է 19 միլիոն ռուբլու շինարարություն։

Մեծ շրջադարձ կատարելով շինարարության բնագավառում՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները միաժամանակ փնտրում են շինարարության վարման ավելի արդյունավետ միջոցներ, օգտագործում տեղական հնարավորությունները։ Ամենից առաջ լուրջ ուշադրություն ենք նվիրում շինարարական նյութերի տեղական ռեսուրսների օգտագործմանը։ Սիսիանի բազալտը իր որակական հատկանիշներով չի զիջում այդ տեսակի շինանյութերի լավագույն նմուշներին, սակայն մեզ մոտ կառուցվող շենքերի երեսպատումը հաճախ նախատեսվում է այլ նյութերով։ Այդ հարցը վերջնականորեն կլուծվի, երբ կգործի շինանյութերի արդյունաբերության մինիստրության կազմակերպությունը, որի ստեղծման համար կատարված է որոշակի աշխատանք։ Եվ մենք ոչ միայն շինանյութերով կապահովենք մեր կազմակերպություններին, այլև դրանք կարտահանենք հարևան շրջաններ և մայրաքաղաք։

Շինարարության բնագավառում կա նաև երկրորդ կարևոր խնդիրը։ Դա տեղում երկաթբետոնե կառուցվածքների արտադրության կազմակերպումն է։ Շրջանում շինարարության համար օգտագործվող բոլոր տիպի կառուցվածքների զգալի մասը ստացվում է մայրաքաղաքից կամ քաղաքամերձ շրջաններից։ Դա չի կարող բացասաբար չանդրադառնալ ո՛չ միայն շինարարության տեմպերի, այլև շինարարական կազմակերպությունների ֆինանսական վիճակի վրա։ Եվ եթե դրան ավելացնենք, որ շինարարությունում ընդհանրապես ցածր է պատրաստի երկաթբետոնե կառուցվածքների օգտագործման տոկոսը, ապա պարզ կլինի, թե տեղում դրանց արտադրության կազմակերպումը որքան կարևոր է։ Շինարարության շահերից ելնելով՝ այժմ շրջկենտրոնում հիմնադրում ենք երկաթբետոնե կառուցվածքների բազա, որի արտադրողականությունը տարեկան կհասնի 3.200 խմ-ի։ Այդ ձեռնարկության շահագործմամբ վերոհիշյալ հարցերն ավելի դյուրին կլուծվեն։

Շրջանի ժողովրդական տնտեսության մեջ թաքնված ռեզերվներ ու հնարավորություններ շատ կան։ Դրանց բացահայտման ու օգտագործման խնդիրները գտնվում են կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների և տնտեսական մարմինների տեսադաշտում։ Մեր կազմակերպական ու քաղաքական ամբողջ գործունեությունը նպատակամղված է այդ կարևոր խնդրի լուծմանը։ Այդ ասպարեզում շոշափելի են մեր հաջողությունները, որոնք ձեռք ենք բերել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ 1972 թ. չորրորդ եռամսյակում և 1973 թ. առաջին կիսամյակում անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները ավելացնելու համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության ակտիվորեն մասնակցելու շնորհիվ։ Մեր շրջանի գյուղատնտեսության աշխատողների սրտերն օրինական հպարտությամբ են լցվում այն բանի համար, որ հաղթող են ճանաչվել այդ մրցության մեջ՝ ինն ամսում (1972 թ. հոկտեմբեր—1973 թ. հունիս) ստանալով 2.026,8 տոննա միս կամ 34,5 տոկոսով ավելի, քան նախորդած համապատասխան ժամանակամիջոցում, 8.305,7 տոննա կաթ (16,7 տոննայով ավելի), 2.813 հազար հատ ձու։ Ընդ որում, կովերի միջին կաթնատվությունն աճել է 2,6, հավերի ձվատվությունը՝ 12,3 տոկոսով։

Գործադրելով նոր հնարավորություններ և ռեզերվներ՝ շրջանի կոլտնտեսությունների և սովխոզների անասնապահները ձգտում են մինչև ընթացիկ տարվա վերջը սոցիալիստական պարտավորություններից դուրս արտադրել 400 տոննա կաթ, 500 տոննա միս, 500 հազար հատ ձու։ Իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա նվաճումները արժանի պատասխան կլինեն մեր աշխատանքի ու ջանքերի բարձր գնահատականին։

# ՈԳԵՇՆՉՈՂ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

**Գ. Ս. ՆԱԽՇՔԱՐՅԱՆ**
ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար

## 1. ՎԵՐԸՆԹԱՑԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

*Զարգացած այգեգործության շրջան է Նոյեմբերյանը։ Այստեղ 5.300 հեկ-
տարի վրա ձգվում են պտղատու և խաղողի այգիները։ Դա հողի մարդկանց
լավագույն ստեղծագործությունն է, որն առանձնապես կատարելության հա-
սավ վերջին տասնամյակի ընթացքում, երբ կուսակցության հոգատարության
շնորհիվ ծավալվեցին աներևակայելի չափերի հասնող ջրաշինարարական աշ-
խատանքներ։ Նոյեմբերյանի բազմաստիճան ջրհան կայանների կառուցմամբ
նոր յուրացված հողերի վրա հիմնվեցին այգիներ։ Շրջանն այսօր տալիս է
հանրապետությունում մթերվող պտղի 30 տոկոսը։*

*Վերջին տասնամյակում ոռոգելի դարձած 6.000 հեկտար հողատարածու-
թյունները, այգեգործության զարգացմանը զուգընթաց, լայն հնարավորու-
թյուններ ընձեռեցին հացահատիկի, ծխախոտի, բանջարեղենի ու կերային
կուլտուրաների արտադրությունն ավելացնելու համար։ Դա, բնականաբար,
հզորացրեց նաև այն բազան, որը նպաստում է ժամանակակից անասնապա-
հության զարգացմանը։ Այս բնագավառը ևս շրջանի գյուղատնտեսության կա-
րևոր ճյուղերից է և տալիս է դրամական եկամուտների 30 տոկոսը։*

*ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները և «ՍՍՀՄ կազմա-
վորման 50-ամյակի մասին» զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քար-
տուղար Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած տնտեսավարման արդի խնդիրների վերա-
բերյալ դրույթները գործողության ծրագիր են շրջանի կոմունիստների, կուս-
կազմակերպությունների համար։ Նրանք գլխավորում են գյուղատնտեսության
բնագավառի աշխատողների սոցիալիստական մրցությունը, մոբիլիզացնում
նրանց ջանքերը արտադրական խնդիրները հաջողությամբ լուծելու համար։
Այդ ամենի արդյունքը աննախադեպ հաջողություններն են։ Հաղթահարելով
դժնդակ կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով ստեղծված դըժ-
վարությունները՝ մեր մարդիկ անցած տարի հաջողությամբ կատարեցին գյու-
ղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի պետական առաջա-
դրանքները։ Այգեգործները հավաքեցին և պետությանը հանձնեցին 13 հա-
զար տոննա պտուղ՝ յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը, նախատես-
ված 57 ցենտների փոխարեն, հասցնելով 70 ցենտների։ Անցյալ տարի շրջանի*



*սովխոզների դրամական եկամուտների կեսը, որը կազմում է 5,4 մլն ռուբլի,
ստացվեց պտղաբուծությունից։*

*Բարձր ցուցանիշների հասան ծխախոտագործները։ Պլանով նախատես-
ված 760-ի փոխարեն նրանք պետությանը հանձնեցին 860 տոննա ծխախոտի
բարձրորակ հումք։*

*Նշանակալի էին նաև անասնապահների հաջողությունները։ Նրանց քըրտ-
նաջան աշխատանքի շնորհիվ շրջանը պետությանը մսի հանձնման պլանը
կատարեց 144,7 տոկոսով, կաթինը՝ 103,3, բրդինը՝ 106,4, ձվինը՝ 112,8 տո-
կոսով։ Պետական առաջադրանքները հաջողությամբ կատարեցին նաև խոզա-
բույծները, ոչխարաբույծներն ու թռչնապահները։ Առանձնակի ուշադրություն
նվիրեցինք հատկապես արտադրության արդյունավետության բարձրացմանը։
Ահա այս ամենի արդյունքը. 16 սովխոզներից 13-ը տարին փակեցին օգու-
տով։ Նրանց դրամական օգուտները միասին կազմեցին 2 մլն 335 հազար
ռուբլի։*

*Իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա խնդիրները հաջողու-
թյամբ լուծելու համար կուսակցության և կառավարության կոչով ծավալված
համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ակտիվորեն ներգրավ-
վեցին նաև մեր շրջանի աշխատավորները։ Նրանք խոստացան մրգի համա-
խառն արտադրանքը հասցնել 13.500 տոննայի, մսինը՝ 1.950, կաթինը՝
6.000, բրդինը՝ 33 տոննայի, ձվինը՝ 1 մլն 800 հազար հատի։ Այս ցուցանիշ-
ներն զգալիորեն գերազանցում են պլանները և անցած տարվա մակարդակը։*

*Նախնական արդյունքները վկայում են, որ մեր մարդիկ պատվով դուրս
կգան սոցիալիստական մրցությունից։ Բավական է ասել, որ շրջանի տնտե-
սությունները, ամբողջությամբ վերցրած, արդեն կատարել են ձվի և բրդի ար-
տադրության և դրանք պետությանը հանձնելու տարեկան առաջադրանքները։
Օգոստոսի մեկի դրությամբ շրջանը, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի
համեմատությամբ, ավելի է արտադրել 295 տոննա կաթ։ Արգասաբեր է և պըտ-
ղաբույծների գործունեությունը։ Նրանք օրական 250 տոննայից ավելի պտուղ
են հավաքում։ Ամեն օր Նոյեմբերյանից 15 վագոն է դուրս գալիս Մոսկվայի և
Լենինգրադի հասցեով։ Արդեն վերամշակման և վաճառքի ենք հանձնել 500
տոննա պտուղ։*

## 2. ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆԸ

*Հաջողությունները ձեռք են բերվում կուսակցական-կազմակերպական և
քաղաքական աշխատանքի համադրությամբ, արտադրության մարդկանց ե-
ռանդով ու ստեղծագործությամբ։ Իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական
տարվա բնագծերը նվաճելու համար վերջիններիս մղած պայքարը գլխավորում
են կոմունիստները։ Շրջանի կուսկազմակերպության գործունեության հիմնա-
կան բովանդակությունն արտադրության կազմակերպումն է, նրա արդյունա-
վետության բարձրացումը, ամեն մի տեղամասում կոմունիստների ավանգար-
դային դերի ապահովումը։ Հանձնարարված գործի նկատմամբ կադրերի պա-
տասխանատվության բարձրացումն իրականացվում է էկոնոմիկայի բոլոր տե-
ղամասերի վրա գործուն վերահսկողությամբ։ Շրջանի պետական տնտեսու-
թյուններում կոմունիստների 70 տոկոսն անմիջապես զբաղված է նյութական
բարիքների արտադրության ոլորտում։*

*Արտադրության գիտական կազմակերպման համար հարկ է խորությամբ*

վերլուծել կոլեկտիվների գործունեությունը, մանրակրկիտ հաշվարկներ կատարել ամեն մի խնդրի լուծման ժամանակ, արդյունավետ կազմակերպել առաջավորների փորձի ուսումնասիրությունն ու տարածումը։ Կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար անդրադառնում են այդ խնդիրներին։ Որպես կանոն, շրջկոմի բյուրոների նիստերում հարցերի կոնկրետ քննարկումից հետո, ղեկավար և մասնագետ կադրերը խմբովի լինում են շրջանի որևէ պետական տնտեսությունում, նրա առաջավոր ֆերմայում, բրիգադայում և տեղամասում, մոտիկից շփվում ու ծանոթանում արտադրության առաջավորներին, ուսումնասիրում գործերի վիճակը, ընդհանրացնում նորն ու առաջավորը, ամփոփում դրանց արմատավորման արդյունքները։

Կուսշրջկոմը շերտավորված աշխատանք է տանում գյուղատնտեսության մասնագետների հետ, նրանց համար կազմակերպում գիտա-արտադրական սեմինարներ ու գիտա-պրակտիկ կոնֆերանսներ, ուր ինչպես տեղի, այնպես էլ հանրապետության առաջավոր մասնագետները հաճախ հանդես են գալիս արտադրության արդյունավետության բարձրացմանը նվիրված զեկուցումներով։ Այսպես, վերջերս այգեգործության բնագավառի մասնագետների ու ղեկավար կադրերի համար կազմակերպված գիտա-պրակտիկ կոնֆերանսում՝ դարավանդված թեք հողերում խաղողի աճեցման և պտղատու ու խաղողի այգիներում վնասատուների դեմ պայքարի միջոցառումների մասին հետաքրքրական զեկուցումներ կարդացին գյուղատնտեսական գիտությունների դոկտորներ Ռ. Երգեսյանն ու Ա. Առաքելյանը։ Իրենց այգեգործների առաջավոր փորձի մասին պատմեցին Հաղթանակի սովխոզի բրիգադավար Ս. Բեջանյանը և Պտղավանի սովխոզի գլխավոր գյուղատնտես Տ. Ազատյանը։ Շրջանի կուսկազմակերպությունները նմանօրինակ միջոցառումներ են անցկացրել նաև անասնապահության բնագավառի աշխատողների՝ բրիգադավարների, ֆերմաների վարիչների, անասնաբույծների և մյուս ղեկավար կադրերի համար։

Կուսշրջկոմը ուշի-ուշով հետևում է, որպեսզի աշխատավորական կոլեկտիվում ծնված յուրաքանչյուր լավ նախաձեռնություն պաշտպանվի կուսկազմակերպությունների կողմից, լայնորեն տարածվի նաև մյուս տնտեսություններում։ Այստեղ հարկ է նշել հետևյալ օրինակը։ Լալվարի սովխոզի կուսկազմակերպությունը, քննարկելով առաջավոր կթվորուհի Մարիա Պանարինայի աշխատանքի փորձը, նախաձեռնեց դրա ուսումնասիրությունը։ Պարզվեց, որ ամեն մի կովից 2.000 կգ կաթ կարող են ստանալ նաև մյուս կթվորուհիները։ Սովխոզում ծնված այս հայրենասիրական նախաձեռնությունն արժանացավ կուսշրջկոմի հավանությանը։ Այն երկու տարի առաջ քննարկվեց շրջկոմի բյուրոյում, և 2000-ականների շարժումն սկսեց պրոպագանդվել շրջանով մեկ։ Արդեն երեք տարի է, որ սկզբնական կուսկազմակերպությունները և շրջանային թերթը պարբերաբար անդրադառնում են այս խնդրին։ Եվ ահա արդյունքը։ Եթե երեք տարի առաջ 2000-ականների թիվը չէր անցնում 20 մարդուց, ապա անցյալ տարի մեկ կովից 2.000 կգ կաթ ստացան Լալվարի, Ձեյթունի, Պտղավանի, Ոսկեպարի, Արճիսի սովխոզների կաթնապրանքային ֆերմաների տասնյակ կթվորուհիներ։

Անասնապահության զարգացման վճռական պայմանը կերի կայուն բազայի ամրապնդումն է։ ՍՄԿԿ XXIV համագումարը կոլտնտեսությունների ու սովխոզների, նրանց կուսկազմակերպությունների առջև խնդիր դրեց ամենից առաջ ամրապնդել անասնապահության վերելքի հիմքը կազմող կերի բազան։



Կերի կուտակումը կուսկազմակերպությունների համար հարվածային ճակատ է։ Կուսշրջկոմի կողմից մեծ հավանության են արժանացել և շրջանի բոլոր գյուղերում արմատավորվել ու ավանդույթ են դարձել ընտանեկան շաբաթօրյակները։ Դրանք Նոյեմբերյանի աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունն են։ Անցած տարի կուտակվեց 1,5 տարվա խոտ, կատարվեցին նաև սիլոսի և ծղոտի կուտակման պլանները։ Այս հաջողությունների համար մեր շրջանը հանրապետության գյուղատնտեսության բնագավառի աշխատողների մրցությունում գրավեց մրցանակային տեղ։ Հաշվի առնելով անցյալ տարվա դրական փորձը՝ այս տարի նույնպես ամեն ինչ արվում է կերի կուտակման տարեկան պլանը կատարելու համար։ Ուրախալի է, որ տնտեսություններում արդեն հաջողությամբ արմատավորվում է սենաժը։ Այդ արժեքավոր կերակրատեսակից, նախատեսված 1.800-ի փոխարեն, պատրաստվել է 6.500 տոննա։

Հանրահայտ է, որ գործի հաջողությունը հիմնականում վճռում են մարդիկ, հատկապես ղեկավար կադրերը։ Նրանց իմացությամբ ու ձեռներեցությամբ է պայմանավորված առաջադրված խնդիրների ճիշտ լուծումը։ Այս սկզբունքով էլ ծավալում են իրենց գործունեությունը շրջանի կուսկազմակերպությունները, որոնց հիմնական հոգսերից մեկը կադրերի ճիշտ տեղաբաշխումն ու դաստիարակումն է, նրանց նկատմամբ պահանջկոտության բարձրացումը։ Հին աշխատողների հարուստ փորձը օգտագործելու հետ մեկտեղ՝ առաջ ենք քաշում երիտասարդ, բանիմաց ու գործարար կադրեր։ Այժմ սովխոզների դիրեկտորները, գյուղատնտեսության մասնագետներն ունեն բարձրագույն կրթություն, բրիգադներն ու ֆերմաները ղեկավարում են գյուղատնտեսության մասնագետները, որոնց զգալի մասը նույնպես ունի բարձրագույն կրթություն։ Նրանցից շատերը հմուտ կազմակերպիչներ են, բարձր բերքի ճանաչված վարպետներ։

Կուսշրջկոմը, կազմակերպական աշխատանքում եղած նորն ու առաջավորը տարածելու, արմատավորելու նպատակով, ամիսը մեկ անգամ սեմինար պարապմունք է անցկացնում սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների համար։ Վերջիններս հանդես են գալիս իրենց աշխատանքի առաջավոր ձևերի ու մեթոդների մասին հաղորդումներով։ Դա մեծապես նպաստում է արտադրության կազմակերպման գործում կուսկազմակերպությունների մարտունակության աճին, կոմունիստների ավանգարդային դերի ապահովմանը, գործերի վիճակի համար յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության բարձրացմանը։

Քիչ չեն այն կազմակերպությունները, որոնց աշխատանքային փորձն անընդհատ հարստանում է նորություններով, կոմունիստների ուժերի համախմբման օրինակելի եղանակներով ու մեթոդներով։ Չէ որ, ինչպես շեշտեց ՍՄԿԿ XXIV համագումարը, «Կուսակցությունը միշտ աշխատողների մեջ բարձր է գնահատում այնպիսի հատկությունը, ինչպիսին է նորի զգացումը։ Ունենալ նորի զգացում, նշանակում է տեսնել զարգացման հեռանկարը, հայացքն ուղղել դեպի ապագան, գտնել ծագող խնդիրների լուծման առավել ճշգրիտ ուղիներ» (նույն տեղը, էջ 132—133)։ Արտադրության կազմակերպման, նորի և առաջավորի արմատավորման հարուստ փորձ է կուտակել Պտղավանի սովխոզի կուսկազմակերպությունը։ Այստեղ գործող ագրոզոոխմբակների ու տնտեսագիտական դպրոցների պարապմունքներում առաջավոր բրիգադավարներ

Հ. Զախուրյանն ու Ս. Պարանյանը պատմել են իրենց բրիգադների ուսանելի փորձի և ձեռք բերած նվաճումների մասին: Գլխավոր անասնաբույժ Հր. Ղազարյանը, գլխավոր գյուղատնտես Տ. Ազատյանն ու դիրեկտոր Շ. Աղաջանյանը զեկուցումներ են կարդացել աշխատանքի ճիշտ կազմակերպման մասին: Առաջավորների փորձն ուսումնասիրելու և տարածելու հետ մեկտեղ կուսկազմակերպությունը պարբերաբար քննարկում է նաև ետ մնացող բրիգադների հարցը, միջոցներ ձեռնարկում գործերի վիճակը շտկելու համար: Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում սոցիալիստական մրցության կազմակերպմանը: Յուրաքանչյուր աշխատող ունի կոլեկտիվ պարտավորություններից բխող իր անհատական պլանը: Մրցության մասնակիցներին խրախուսելու նպատակով կուսկազմակերպությունն ու դիրեկցիան սահմանել են փոխանցիկ հուշադրոշներ և դրամական պարգևներ, որոնք եռամսյակը մեկ շնորհվում են առաջավոր բրիգադներին և աշխատողներին: Սոցիալիստական մրցության լայն ծավալման շնորհիվ առանձին բրիգադներ յուրաքանչյուր հեկտարից ստանում են 250—300 ցենտներ պտուղ:

Եթե մի ժամանակ սովխոզը տևականորեն ետ էր մնում, ապա այժմ բռնել է անշեղ վերելքի ուղին: Այգիների վերակառուցման և բարձր բերքատու սորտերի արմատավորման միջոցով այստեղ տարեցտարի աճում է բերքատվությունը: Այսպես, եթե 1965 թ. այն յուրաքանչյուր հեկտարի հաշվով կազմում էր 25—30 ցենտներ, ապա այժմ՝ չորս անգամ ավելի: Անցյալ տարի սովխոզի պտղաբույծները 1.810 տոննա մրգի հանձնման առաջադրանքը գերակատարեցին 500 տոննայով: Իսկ կաթնապրանքային ֆերմայի աշխատողներն անցան 2000-ականների շարքը: Սովխոզը տարին փակեց 400 հազար ռուբլի օգուտով: Բերքահավաքի եռուն օրերին, կուսկազմակերպության նախաձեռնությամբ, լույս են տեսնում կայծակ-թերթիկներ, ակումբի ինքնագործ խմբերը համերգներ են տալիս այգիների աշխատողների համար, նրանց հաճախակի հյուր է լինում նաև շրջանային կուլտուրայի տան ագիտբրիգադը:

Հետաքրքրական շատ բան կարելի է գտնել նաև Ջեյթունի, Շավարշավանի, Արճիսի սովխոզների կուսկազմակերպությունների գործունեության մեջ: Նրանց առօրյան իմաստավորվում է արտադրության բարձրացման համար տարվող արդյունավետ աշխատանքով, նրանք անմիջականորեն գլխավորում են աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, մոտիկից ղեկավարում արտադրությունը:

## 3. ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

Իններորդ հնգամյակի երրորդ, վճռական տարում բարձր ցուցանիշներ ձեռք բերելու համար շրջանի աշխատավորների առջև լուրջ խնդիրներ են ծառացած: 1975 թ. արդեն պետք է արտադրվի 21 հազար տոննա պտուղ, 6.500 տոննա խաղող, ավելանալու է նաև բանջարա-բոստանային կուլտուրաների և անասնապահական մթերքների արտադրությունը:

Պետական տնտեսություններում ստեղծված նյութատեխնիկական հզոր բազան լիարժեք հնարավորություն է ստեղծում շրջանի գյուղատնտեսությունը վարելու արդյունաբերական այգեգործության և բարձր մթերատու անասնապահության զարգացման ուղիով:

Վերջին տասնամյակում մեծ մասշտաբի ջրաշինարարության, բազմաթիվ ջրհան կայանների կառուցմամբ այգեգործության նոր բազայի ստեղծման



շնորհիվ հիրավի վերափոխվել է Նոյեմբերյանը, դարձել մեր հանրապետության պտղաբուծության խոշոր կենտրոններից մեկը: Գյուղատնտեսության այդպիսի զարգացումը շրջանի կուսկազմակերպությունների գործունեության նպատակն է: Այն իրականանում է քայլ առ քայլ: Եղած ջրհան կայանների հետ կառուցվում են նաև նորերը: Այս տարի շահագործման հանձնվեց Հաղթանակ—Ջեյթուն ջրհան կայանների երկրորդ հերթը, որի շնորհիվ լրացուցիչ ջրովի դարձավ 1.200 հեկտար այգի: Այժմ նոր ջրհան կայաններ են կառուցվում Արճիսի և Ջեյթունի սովխոզների համար: Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, ճիշտ եզրակացություն հանգելով մելիորացիոն աշխատանքի բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա օգոստոսին ընդունած որոշումից, օգնում են գյուղատնտեսական մարմիններին ու սովխոզների դիրեկցիաներին՝ մելիորացիոն աշխատանքներ ծավալելու, ոռոգման լայն ու կատարյալ ցանց ստեղծելու գործում:

Այգեգործության համար մեծ նշանակություն ունի բարձր բերքատու սորտերի արմատավորումը: Բարձրորակ սորտերի տնկիների հաշվին հիմնադրվում են բոլորովին նոր այգիներ, իսկ վերակառուցման միջոցով հները փոխում են իրենց դեմքը: Բարձրարժեք տնկիներ աճեցնելու նպատակով տնտեսությունների մի մասն ստեղծել է իր սեփական տնկարանը:

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն իրենց գործունեության մեջ մեծ տեղ են հատկացնում անասնապահության զարգացման հարցերին՝ լուրջ ուշադրություն նվիրելով նրա զարգացման կարևոր պայմաններից մեկին՝ ցեղի բարելավմանը: Կուսշրջկոմը և կուսկազմակերպությունները մշակում և իրագործում են այնպիսի միջոցառումներ, որպեսզի առաջիկա տարիներին ամբողջ անասնագլխաքանակը փոխարինվի բարձր մթերատու ցեղով: Տարիներ շարունակ Շավարշավանի և Ղոշղոթանի սովխոզներում անասնապահության վիճակն անմխիթար էր, մոռացության էին տրվել ցեղի բարելավումն ու արհեստական սերմնավորումը, մեկ կովի կաթնատվությունը շրջանի միջինից 200—300 կգ-ով պակաս էր, բարձր էր ստերջության տոկոսը: Այս ամենը լրջորեն անհանգստացրեց մեզ: Կուսշրջկոմը գյուղատնտեսության մասնագետների հետ հանգամանորեն ուսումնասիրեց և 1971 թ. սեպտեմբերին բյուրոյի նիստում քննարկեց «Անասունների ցեղային կազմի բարելավման և արհեստական սերմնավորման կազմակերպման վիճակը շրջանի տնտեսություններում» հարցը: Շրջկոմի բյուրոն միջոցառումներ մշակեց հատկապես այդ տնտեսություններում ստեղծված վիճակը շտկելու, անասնապահության զարգացման գործում եղած խոչընդոտները հաղթահարելու համար: Մասնավորապես հանձնարարվեց առանձնացնել բարձր մթերատու կովերից ստացված մատղաշները և հատուկ խնամք տանել դրանց նկատմամբ, ստեղծել տոհմային կորիզ, մայրական կազմը համալրել բարձրարժեք երինջներով, բարձրացնել կադրերի պատասխանատվությունը ցեղաբուծական գործի կազմակերպման նկատմամբ:

Կենսագործելով շրջկոմի բյուրոյի որոշումը՝ նշված սովխոզների ղեկավարները և կուսկազմակերպությունները մեծ ջանքեր գործադրեցին անասնապահության ետ մնալը հաղթահարելու համար, սկսեցին ավելի կոնկրետ զբաղվել զարգացող անասնապահության հասունացած հարցերով: Բյուրոյի մյուս պահանջները կատարելու հետ միասին նրանք վերանայեցին ֆերմա-

ների ղեկավար կազմը, այնտեղ գործուղեցին մի շարք կոմունիստների և գյուղատնտեսության մասնագետների։

Ինչպես այգեգործության, այնպես էլ ամբողջ բուսաբուծության ինտենսիվ վարման անհրաժեշտ միջոցներից են պարարտացումն ու մեքենայացումը։ Այժմ տարեկան օգտագործվում է 3.500 տոննա հանքային և 25.000 տոննա օրգանական պարարտանյութ, զգալիորեն ավելի, քան նախորդ տարիներին։ Շրջանի տնտեսություններում ամբողջովին մեքենայացվել են վարը, ցանքը, հացահատիկային ու սիլոսային կուլտուրաների մշակությունն ու բերքահավաքը, այգիների բուժումը, պարարտացումն ու միջշարային տարածությունների մշակումը, կիսով չափ՝ խոտհնձի, հավաքման ու կուտակման աշխատանքները, անասնապահական շենքերի ջրամատակարարումն ու գոմաղբի հեռացումը։ Նախատեսվում է առաջիկայում առավելագույն չափով մեքենայացնել աշխատատար մյուս պրոցեսները։

Տարեցտարի հարստանում է սովխոզների մեքենայական պարկը. միայն 1971—1972 թթ. նրանք ստացել են 103 թրթուրավոր ու անիվավոր տրակտոր, 40 ավտոմեքենա, 12 կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։ Մեծանում է նաև տնտեսությունների էլեկտրազինվածությունը։ Այժմ գյուղամերձ անասնապահական շենքերը լրիվ էլեկտրիֆիկացված են, իրականացվում է դրանց աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ծրագիրը։ Շրջանում եղած գոմերի 85 տոկոսը կառուցվել է տիպային նախագծով։

Ուշադրության կենտրոնում ենք պահում արտադրական նշանակություն ունեցող օբյեկտների կառուցումը։ Դա ևս անասնապահության զարգացման կարևոր պայմանն է։

Վերջին տարիներին շահագործման հանձնեցինք մրգի պահեստներ ու չորանոցներ Հաղթանակի, Պտղավանի և Ջեյթունի սովխոզներում։ Դա հնարավորություն ընձեռեց բերքի կորուստները հասցնել նվազագույնի և տարվա բոլոր ամիսներին ազգաբնակչությանը մատակարարել թարմ միրգ։

Առաջավոր և բարձր եկամտաբեր սովխոզների կուսկազմակերպությունները, յուրաքանչյուր միջոցառում իրականացնելիս, ելնում են գյուղատնտեսությունը արդյունաբերական եղանակով վարելու սկզբունքից։ Այդ սկզբունքով են հիմնվել և այժմ էլ ստեղծվում են նորանոր այգեստաններ, ուր հաշվի է առնվում պտուղների միատարր տեսակների և միաժամանակ հասունացող սորտերի բաշխումն ըստ այգեմասերի։ Բոլոր տնտեսություններում էլ գործն այնպես է կազմակերպված, որ երբ ավարտվում է մի սորտի բերքահավաքը, մյուսը նոր է հասունանում։ Եվ այդպես, հնարավորություն է ստեղծվում անկորուստ հավաքելու բերքը, արդյունավետ օգտագործելու բանվորական ուժն ու տեխնիկայի միջոցները։

### 4.ՂԵԿԱՎԱՐԵԼ, ՆՇԱՆԱԿՈՒՄ Է ԿԱՆԽԱՏԵՍԵԼ

Կանխատեսելով գյուղատնտեսության զարգացման հեռանկարները՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ուշադրությունը կենտրոնացնում են ինչպես օրվա հրատապ և անհետաձգելի, այնպես էլ մոտակա ժամանակում լուծելիք խնդիրների վրա, գործուն միջոցներ ձեռնարկում կուսակցության առաջադրանքները անթերի կատարելու համար։ Այսպես, կուսշրջկոմին լրջորեն մտահոգում էր այն հարցը, թե ինչու Հոկտեմբերի, Ջուջևանի և



Նոյեմբերյանի սովխոզները 1972 թ. փակեցին վնասով։ Դրա պատճառները պարզելու և արտադրության արդյունավետության բարձրացմանն ուղղված միջոցառումներ մշակելու նպատակով՝ շրջկոմը գյուղատնտեսության մասնագետների միջոցով ուսումնասիրեց ետ մնացող սովխոզների վիճակը և քննարկեց բյուրոյի նիստում։ Մենք նրանց գործունեության մեջ բացահայտեցինք լուրջ թերություններ. որոշ ղեկավար կադրեր իրենց տեղերում չէին, հարկ եղավ տեղաշարժել ու փոխել այդ տնտեսությունների դիրեկտորներին։ Արտադրական տեղամասերում առաջ քաշեցինք բանիմաց ու ձեռներեց կոմունիստների, գյուղատնտեսության հմուտ մասնագետների։

Խաղողագործության զարգացումը մեր առաջնահերթ խնդիրներից ու մշտական հոգսերից է։ Ընթացիկ տարվա փետրվարին կուսշրջկոմի պլենումը, անդրադառնալով այդ հարցին, մշակեց խաղողի այգիների բերքատվության բարձրացման միջոցառումներ։ Գարնան սկզբին շրջկոմի բյուրոն քննարկեց պլենումի որոշման կատարման ընթացքը Նոյեմբերյանի, Կողբի, Ղալաչայի և Դովեղի սովխոզներում։ Պարզեցինք, որ մարդիկ անհրաժեշտ եզրակացություն են հանել պլենումի պահանջներից, ժամանակին բուժել, խնամել ու պարարտացրել են խաղողի այգիները։

Շրջկոմի պլենումի և բյուրոյի նիստերում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում հաճախ են քննարկվում եղած ռեզերվների նպատակային օգտագործմանը և հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը վերաբերող հարցեր, որոնք պահանջում են կոնկրետ լուծումներ։ Անցյալ տարի, օրինակ, կուսշրջկոմի պլենումը հարց բարձրացրեց գյուղմինիստրության առջև Կողբի սովխոզի Ղիասի ու Քարի, Արճիսի սովխոզի Ղուռուշայի այգեզանգվածներում նոր տեղամասեր հիմնելու, այնտեղ մի շարք բնակելի շենքեր կառուցելու մասին։ Այդ պահանջն այժմ իրականացվում է։

Մսի արտադրության ռեզերվների օգտագործման նպատակով վերջերս կուսշրջկոմի բյուրոն քննարկեց շրջանի սովխոզներում կաթնամսային անասնապահության հետագա զարգացման հարցը։ Բյուրոն իր որոշմամբ խնդիր դրեց սովխոզների դիրեկցիաների առջև՝ խոշոր եղջերավոր անասունների կազմում զգալի չափով ավելացնել կովերի տեսակարար կշիռը և այն եղած 34-ից հնգամյակի վերջում հասցնել 40 տոկոսի։ Իբրև մսի արտադրության դիմաց մթերման արդյունավետ միջոց և կարևոր ռեզերվ՝ ուշադրություն ենք նվիրում մթերվող յուրաքանչյուր գլխի միջին քաշի ավելացմանը։ Շրջանի սովխոզներում լայն արձագանք է ստացել մատղաշների ինտենսիվ բտման, նրանց խնամքի և պահպանման՝ Հրազդանի շրջանի Մեղրաձորի կոլտնտեսության փորձը։ Այն քննության ենք առել շրջկոմի բյուրոյում, կազմակերպել էքսկուրսիա այդ տնտեսությունը։ Ղալաչայի, Լալվարի, Ջեյթունի, Արճիսի և Ոսկեպարի սովխոզները կազմակերպել են մատղաշների ինտենսիվ բտումը և որոշել դրանք պետությանը հանձնել 350—380 կգ կենդանի քաշով։ Դա մսի արտադրության ավելացման մեծ ռեզերվ է, ձեռնտու և շահավետ միջոց. յուրաքանչյուր գլխից ստացվող օգուտը կկազմի 450—470 ռուբլի։ Միջոցներ ենք ձեռնարկում, որպեսզի այս տարի, կաթնային շրջանի վերջում, բոլոր 1973 թ. ծնված 1.450 գլուխ մատղաշները, որոնք հաջորդ տարի 300-ական կիլոգրամ և ավելի միջին քաշով կհանձնվեն պետությանը։

Փորձը ցույց է տալիս, որ մեր պայմաններում նոյեմբերին ծնած կովը, նույն լակտացիայի՝ մարտ ամսին ծնած կովի համեմատությամբ, 80—100 կգ

կաթ ավելի է տալիս: Պատճառն այն է, որ շրջանի հեռավոր ամառային արոտավայրերն օգոստոսին համարյա լրիվ չորանում են, և 4—5 ամիս առաջ ծնված կովերը մեխանիկորեն ցամաքում են: կամ շատ չնչին կաթ տալիս, մինչդեռ վաղ ծնի նախապատրաստած կովերի ցամաքման շրջանը համընկնում է օգոստոս-սեպտեմբեր ամիսներին: Կուսշրջկոմը անասնապահության բնագավառի աշխատողների առջև խնդիր դրեց արհեստական սերմնավորումը կազմակերպել այնպես, որ կովերի ծինը հիմնականում ավարտվի հունվար-փետրվար ամիսներին:

Անասնապահության զարգացման և կերի բազայի ամրապնդման կարևոր ռեզերվ է արոտավայրերի ու խոտհարքների մակերեսային ու հիմնական բարելավումը: Ընթացիկ տարում, օրինակ, Կողբի սովխոզում խոտհարքները սնուցելու միջոցով խոտի բերքատվությունը, նախորդ տարիների համեմատությամբ, զգալիորեն բարձրացել է:

Մեր շրջանի անասնապահությունն ունի առանձնահատուկ պայմաններ: Ամռան ամիսներին բոլոր անասնապահները տեղափոխվում են սար, այնտեղ է արտադրվում մթերքների զգալի մասը: Հետևաբար, հարկ է, որ սարերում ստեղծվեն անհրաժեշտ պայմաններ ինչպես հանրային հոտի խնամքի, այնպես էլ մարդկանց աշխատանքի ու կենցաղի համար: Այդ խնդիրները կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների տեսադաշտում են: Դրանց լուծման ասպարեզում մենք ձեռք ենք բերել որոշակի հաջողություններ: Երկու տարի առաջ շահագործման հանձնեցինք Նոյեմբերյան—Կարմիր գյուղ հեռավոր ամառանոցը տանող 30 կիլոմետրանոց ճանապարհահատվածը: Էլեկտրական լուսավորություն են ստացել Նոյեմբերյանի, Դովեղի, Ոսկեպարի ամառանոցները: Բայց և այնպես անելիքները շատ են. դրանք մեզ համար հեռանկարային խնդիրներ են, որոնց լուծման համար հարկավոր է նաև հանրապետական կազմակերպությունների աջակցությունը: Շրջանի անասնապահության հետագա վերելքի համար վճռական նշանակություն ունի Կարմիր գյուղ—Ջիբլու 20 կիլոմետրանոց ճանապարհի կառուցումը: Դրանով շրջկենտրոնը կկապվի Շավարշավանի, Դովեղի, Ղալաչայի, Կողբի, Նոյեմբերյանի հեռավոր սարերի հետ: Առաջնային խնդիր է Շավարշավանի, Ջուջևանի, Ղոշղոթանի, Ղալաչայի, Կողբի հեռավոր արոտավայրերին կից ամառանոցների էլեկտրիֆիկացումը: Գյուղատնտեսության, ավտոճանապարհային շինարարության և շահագործման մինիստրությունները, էներգետիկայի գլխավոր վարչությունը պետք է միջոցներ տրամադրեն:

Այգեգործության զարգացման շահերը պահանջում են լուծել սովխոզները բանվորական ուժով ապահովելու խնդիրը: Այստեղ ևս զգացվում է գյուղատնտեսության մինիստրության օգնությունը: Մինիստրությունը պետք է անհրաժեշտ գումար հատկացնի Ջեյթունի, Պտղավանի, Հաղթանակի, Արճիսի, Կողբի սովխոզներում բնակելի տների կառուցման համար: Դրանով հնարավոր կլինի մարդկանց կապել հանրային արտադրությանը:

Եվ, վերջապես, նորից ոռոգման հարցը: Դրա լուծումը կենսական նշանակություն ունի մեզ համար: Անհրաժեշտ է ավելացնել ջրի ռեսուրսները, ընդարձակել ոռոգման ցանցը: Նախատեսվում է մեծացնել ջրհան կայանների հզորությունը, նոր հզոր պոմպերի տեղադրմամբ նույն քանակի խողովակներով ավելի շատ ջուր մղել դաշտերն ու այգիները: Սա ևս մեր հեռանկարային խնդիրներից է, ամեն ինչ անում ենք այն լուծելու համար: Որքան գոհացուցիչ են մեր շրջանի գյուղատնտեսության արդյունքները, այնքան ոգեշնչող են նրա զարգացման հեռանկարները:

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ԽՍՏՈՐԵՆ ՊԱՀՊԱՆԵԼ ՀԱՆՐԱՅԻՆ ՀՈՂԸ՝ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆԸ

Երկրի տնտեսական հզորության և կուլտուրական մակարդակի վերելքի հիմք հանդիսացող հողային և այլ բնական հարստությունների պաշարներն անսպառ չեն: Հետևապես, դրանց պահպանումն ու արդյունավետ օգտագործումը ոչ թե խորհուրդ ու ցանկություն են, այլ սոցիալ-տնտեսական լուրջ պրոբլեմ, կոմունիստական կուսակցության ծրագրային պահանջ:

Կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ ինչպես Սովետական Միության շատ հանրապետություններում, այնպես էլ Հայաստանում խոշոր աշխատանքներ են կատարվել հողային ֆոնդի պահպանման ու արդյունավետ օգտագործման բնագավառում: Բավական է նշել, որ նախորդ հնգամյակի (1966—1970 թթ.) ընթացքում հանրապետության ոռոգելի հողատարածություններն ավելացել են 32 հազար հեկտարով, անտառապատվել են մոտ 30 հազար հեկտար էրոզիայի ենթարկված հողատարածություններ: Զգալի գործ է արվել դարերով չմշակված սոդային աղուտների և զառիթափ լանջերի օգտագործման նպատակով:

Հողի պահպանման և արդյունավետ օգտագործման համար իններորդ հնգամյակում նախատեսվում է իրականացնել հակաէրոզային և կուլտուրտեխնիկական միջոցառումների լայն ծրագիր, որը պետք է կատարվի հիմնականում պետական կապիտալ ներդրումների միջոցով: Նոր հնգամյակում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում ոռոգելի հողատարածությունների ընդարձակմանը: Այդ նպատակով հանրապետությունում կապիտալ ներդրումները կազմելու են ավելի քան 276 մլն ռուբլի:

Մեր կարծիքով, «Լենինյան ուղիով» ամսագրում (1973 թ. № 6) քննարկման կարգով տպագրված Ն. Մ. Մանասերյանի՝ Ճիշտ կարգավորել հանրային հողօգտագործումը հոդվածը միանգամայն տեղին է ու ժամանակին: Այն բխում է բնության պահպանության և բնական ռեսուրսների օգտագործման բարելավման վերաբերյալ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ընդունած որոշումների հաջող կենսագործման անհրաժեշտությունից:

Հայաստանում օգտագործելի հողատեսքերի պահպանման և արդյունավետ օգտագործման լայն ծրագրի իրականացումը բխում է հանրապետության հողային ֆոնդի առանձնահատկություններից: Նշենք միայն, որ մեզ մոտ բնակչության մեկ շնչին ընկնում է ավելի պակաս հողատարածություն, քան, միջին

հաշվով, ամբողջ Միությունում: Այստեղից դժվար չէ համոզվել, թե որքան կարևոր է շատ խիստ հաշվառման և հսկողության տակ պահել հողի յուրաքանչյուր հեկտարը:

Երկրի հողային ֆոնդի օգտագործումը կարգավորելու նպատակով 1968 թ. ՍՍՀՄ Գերագույն սովետն ընդունեց ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների համար հողային օրենսդրության հիմունքները, ուր մեծագրություն է հրավիրվում հողերի ճիշտ ու նպատակահարմար օգտագործման, պահպանման ու բերրիության բարձրացման վրա: Այդ նույն պահանջը նշված է նաև կոլտնտեսությունների օրինակելի կանոնադրության մեջ:

Հողային օրենսդրության հիմունքների ընդունումից հետո անցել է մոտ հինգ տարի: 1972 թ. սեպտեմբերին ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիան, քննարկելով բնության պահպանության հարցը, նշեց, որ վերջին տարիներին երկրում զգալի աշխատանք է կատարվել երկրագործության կուլտուրայի բարձրացման, հողային օրենսդրության հիմունքների պահպանման համար: Միաժամանակ ընդգծվեց, որ դեռևս քիչ չեն հողային օրենսդրության հիմունքների խախտման դեպքերը:

ՀՍՍՀ ութերորդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ սեսիան այս տարի մայիսին, քննության առնելով մեր հանրապետությունում բնության պահպանության հետագա բարելավման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին հարցը, ամբողջ սրությամբ ընդգծեց այդ գործի կարևորությունը:

Հանրապետության պաշտոնական տվյալների համաձայն միայն քսան տարվա (1950—1970 թթ.) ընթացքում գյուղատնտեսական օգտագործելի հողատարածությունները կրճատվել են 24,3, այդ թվում վարելահողերը՝ 22,4 տոկոսով: Այդ նույն ժամանակաշրջանում մի շարք շրջաններում (Աբովյանի, Ապարանի, Իջևանի, Ախուրյանի, Ղափանի, Գորիսի, Սիսիանի և այլն) գյուղատնտեսական շրջանառությունից դուրս են գրվել 3—4 հազար հեկտար վարելահողեր, իսկ առանձին քաղաքամերձ շրջաններում (Շահումյանի) կրճատվել են գրեթե կիսով չափ:

Հանրապետության հողային ֆոնդի այդպիսի կրճատումը հիմնականում տեղի է ունեցել անտնտեսվար վերաբերմունքի հետևանքով: Փաստ է, որ շինարարական և այլ ոչ գյուղատնտեսական նպատակների համար հատկացվել են տասնյակ հազար հեկտար արգավանդ հողատարածություններ: Ճիշտ է նկատել Ն. Մ. Մանասերյանը, որ մեր հանրապետության արգավանդ հողերի հետագա կրճատման վտանգը դրանով չի վերանում: Գոյություն ունեցող հաշվարկների համաձայն մինչև 2000 թ. ազգաբնակչության, արդյունաբերության, տրանսպորտի, շինարարության և այլ ոչ գյուղատնտեսական կարիքների համար լրացուցիչ կպահանջվեն մի քանի տասնյակ հազար հեկտար օգտագործելի հողատարածություններ: Ըստ որում, եթե նկատի ունենանք, որ Հայաստանում նոր հողերի յուրացման հնարավորությունները գրեթե սպառվում են կամ խիստ սահմանափակ են, ապա միանգամայն պարզ է եղած հողային ռեսուրսների պահպանման, բարելավման և հաշվենկատ ու ինտենսիվ օգտագործման տընտեսական նշանակությունը:

Հանրապետությունում բազմիցս քննարկվել են հողերի արդյունավետ օգտագործման հարցերը: Սակայն որոշումների կատարման նկատմամբ անհրաժեշտ վերահսկողության բացակայության և հողօգտագործողների անտնտես-



վարության հետևանքով հանրապետության հողային ռեսուրսները ո՛չ միայն անընդհատ կրճատվում են, այլև հողատարվում են դաշտերը: Գիտական տվյալների համաձայն, Աբովյանի, Սիսիանի, Սպիտակի, Հրազդանի, Եղեգնաձորի, Ստեփանավանի և լեռնային մյուս շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում այդպիսի հողատարածություններից նվազ բերք են ստանում:

Հակաէրոզային միջոցառումների ծրագրի իրականացումը կուսակցությունը և կառավարությունը դիտում են որպես համաժողովրդական գործ, պետական անհետաձգելի խնդիր: Ահա թե ինչու, ինչպես ընդգծվեց ՀՍՍՀ ութերորդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ սեսիայում, մեր հանրապետությունում լայնորեն իրագործվում են հակաէրոզային ագրոտեխնիկական միջոցառումներ, որոնք այժմ կիրառվում են մոտ 315 հազար հեկտար հողմահարված տարածության վրա:

Հողային օրենսդրության հիմունքների ընդունումից հետո հանրապետությունում նշանակալի գործ է արվել հողատարման պրոցեսների կանխման, հողօգտագործման կուլտուրայի հետագա բարձրացման ասպարեզում: Այդ նպատակով լավ աշխատանքներ են կատարվել հատկապես Շամշադինում, Իջևանում, Թումանյանում և Գուգարքում: Այստեղ ծառապատվել են հարյուրավոր հեկտար լեռնալանջեր:

Անհրաժեշտ է նշել, որ արդեն կազմվել է հանրապետության հողերի հակաէրոզային համալիր միջոցառումների գլխավոր սխեման, որի հիման վրա պետական բյուջեից կհատկացվեն անհրաժեշտ միջոցներ: Խնդիրն այն է, որ այդ միջոցներն օգտագործվեն լիովին ու առավել արդյունավետ:

Հողային օրենսդրության ընդունումից հետո էլ դեռևս շարունակվում է հողօգտագործման հին պրակտիկան: Գյուղատնտեսական մի շարք ձեռնարկություններում, վերահսկողության բացակայության և անտնտեսավարության հետևանքով, վարելահողերի զգալի մասը չի օգտագործվում: Բացի այդ, առկա են հանրային հողերի վատնումներ (փչացումներ), ապօրինի օգտագործման փաստեր: Այսպես, պիտանի, բայց անուշադրության հետևանքով չօգտագործվող վարելահողերը հանրապետությունում 10 հազար հեկտարից ավելի են: Չօգտագործվող հողերի մեծ տարածություններ կան հատկապես Աբովյանի, Աշտարակի, Մարտունու, Թալինի, Գորիսի, Նոյեմբերյանի և այլ շրջաններում: Վատ են օգտագործվում ոռոգելի հողատարածությունները: Ջրովի հողերի 10—14 տոկոսը տարբեր պատճառներով չի մշակվում: Ըստ որում, սխալ է, երբ ամեն տարի հանրապետությունում ավելի քան ութ հազար հեկտար ջրովի հողեր թողնվում են որպես ցել: Մեր կարծիքով, սակավահողության և ինտենսիվ երկրագործության պայմաններում նպատակահարմար չէ ջրովի հողերը թողնել որպես ցել: Ոռոգելի հողատարածությունները վատ են օգտագործվում հատկապես Հրազդանի, Ղուկասյանի, Ազիզբեկովի և այլ շրջաններում:

Հայաստանի երկրաբանական խիստ բարդ պայմաններում կատարվող ջրատնտեսական աշխատանքները պահանջում են առավել արդյունավետ օգտագործել ջրովի հողերը: Հանրապետության գյուղատնտեսության, մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությունները, նրանց տեղական օրգանները լուրջ աշխատանք են կատարել այդ բնագավառում, սակայն չեն խուսափել թերություններից: Ջրովի հողատարածություններն ընդլայնվում են, բայց շատ դանդաղ են յուրացվում. հաճախ պատահում է այնպես, որ ոռոգ-

ման սիստեմները ժամանակին և լրիվ չեն օգտագործվում (օրինակ, Թալինի ոռոգման սիստեմում գտնվող հողերը): Երբեմն էլ ոռոգելի ջրի կորուստը կազմում է ավելի քան 50 տոկոս: Դրա հիմնական պատճառն այն է, որ գյուղատնտեսական ձեռնարկություններում չկա մելիորատիվ լիարժեք սպասարկում: Բացի այդ, անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում ոռոգման ջրատարների նորոգման և երեսպատման աշխատանքներին: Այսպես, հանրապետությունում ոռոգման ջրանցքների երկարությունը կազմում է ավելի քան 12 հազար կմ, որի միայն 21 տոկոսն է երեսպատված: Այս տեսակետից վիճակը վատ է հատկապես Արարատյան հարթավայրի տնտեսություններում, որտեղ ոռոգման ջրատարների նորոգման համար անհրաժեշտ միջոցներ չեն հատկացվում կամ եթե հատկացվում են, ապա չեն իրացվում:

Մեր հանրապետության ջրային պաշարները խիստ սահմանափակ են: Ուստի, պետք է խնայողաբար և արդյունավետ օգտագործել ջուրը: Տնտեսավարկային հարաբերությունների զարգացման պայմաններում խիստ կարևոր նշանակություն ունի ոռոգելի ջուր օգտագործողների նյութական պատասխանատվության բարձրացումը, որի տնտեսական հիմքը պետք է հանդիսանա, մեր կարծիքով, ջրի գնի սահմանումը: Այդ հանգամանքը կստիպի պատշաճ ուշադրություն նվիրել ջրի յուրաքանչյուր միավորի խնայողաբար օգտագործմանն ու պահպանմանը:

ՀՍՍՀ հողային օրենսդրությամբ սահմանված է, որ արդյունաբերական ձեռնարկություններն ու շինարարական կազմակերպությունները պետք է ավելի խնայողաբար վարվեն գյուղատնտեսության արտադրության հետ չառնչվող զանազան կարիքների համար հողն օգտագործելիս: Չնայած դրան, հանրապետության մի շարք արդյունաբերական, շինարարական և այլ կազմակերպություններ, շրջանցելով և հաշվի չառնելով հողային օրենսդրության հիմունքները, շարունակում են ապօրինի օգտագործել գյուղատնտեսության համար պիտանի արգավանդ հողերը: Օրինակ, միայն 1972 թ. եղել է հողային օրենսդրության խախտման 438 դեպք: Առանց վերադաս օրգանների համաձայնության 35 կազմակերպություններ շինարարության և այլ կարիքների համար ապօրինի զբաղեցրել են շուրջ 163 հեկտար տարածություն:

ՀՍՍՀ ութերորդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ սեսիայում ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ Գ. Ա. Արզումանյանը նշեց. «Եզակի չեն այն դեպքերը, երբ նախագծային կազմակերպությունները նախագծումներ կատարելիս ավելի մեծ տերիտորիա են առանձնացնում, քան իրականում դա անհրաժեշտ է»:

Անհրաժեշտ է շեշտել, որ արդյունաբերական, շինարարական նպատակների համար զբաղեցվում են ոռոգվող հողեր, նույնիսկ խաղողի ու պտղատու այգիներ: Օրինակ, վերջին մի քանի տարիներին Շահումյանի շրջանի կուսակցության XXII համագումարի անվան կոլտնտեսության մոտ 200 հեկտար ջրովի վարելահողերը և այգիները տրամադրվել են տարբեր շինարարական կազմակերպությունների: Եթե այսպես շարունակվի, ապա առաջիկա մի քանի տարուց հետո այդ կոլտնտեսությունը թերևս զրկվի օգտագործելի հողերից: Թեև այդ տնտեսությունը ներկայումս Երևան քաղաքին մատակարարում է շուրջ 600 տոննա կաթ, 2 հազար տոննա խաղող ու պտուղ և զգալի քանակությամբ այլ մթերքներ: Կան բազմաթիվ փաստեր, երբ առանձին տնտեսությունների ղեկավարներ, խախտելով հողային օրենսդրության հիմունքները,



իրենք են նպաստում արգավանդ հողերի շռայլումներին: Նույնիսկ հողային
օրենսդրության ընդունումից հետո հանրապետության մի շարք շրջաններում
կոլտնտեսությունների ու բանվոր-ծառայողների տնամերձ հողերի ընդլայնման
հետևանքով շռայլվել է ավելի քան 200 հեկտար: Միայն Ախուրյանի շրջանի
Ախուրիկ, Ազատան, Շիրակ, Երազգավորս և մի շարք այլ տնտեսություննե-
րում ապօրինաբար հանրային հողերից որպես տնամերձ հատկացվել է 52
հեկտար: Սևանում նախատեսված նորմայից ավելի է տրվել 21, իսկ Ապարա-
նի շրջանի Արագած սովխոզում՝ 31 հեկտար: Նման վիճակ գոյություն ունի
նաև Մասիսի, Ազիզբեկովի, Իջևանի, Մեղրու, Եղեգնաձորի և մի շարք այլ շըր-
ջաններում: Անհրաժեշտ է մեկընդմիշտ վերացնել այն սխալ պրակտիկան, որ
բերրի հողերն ու այգիները հաճախ տրամադրում են շինարարությանը, իսկ
դրա փոխարեն պահանջվում է վճարել չհիմնավորված, չնչին գումար կամ,
լավագույն դեպքում, իրացնել որոշ ցածրարժեք տարածություններ: Սակայն
պետք է նշել, որ այդ էլ չի արվում: 1968—1972 թթ. որպես փոխհատուցում,
նոր հողեր յուրացնելու համար տարբեր կազմակերպություններ պետք է հան-
րապետության գյուղատնտեսության մինիստրության հատուկ հաշվին փոխան-
ցեին 486 հազար ռուբլի, բայց փոխանցել են միայն 57 հազար: Արդյունաբե-
րական, շինարարական և զանազան այլ կազմակերպություններ հաշվի չեն
առնում գյուղատնտեսական արտադրության շահերը և շարունակում են մեծ
վնաս հասցնել հողագործությանը: Անհոգության հետևանքով ճանապարհների
և քարհանքերի շուրջը առաջանում են քարակույտեր, աղբանոցներ, որոնք
զբաղեցնում ու փչացնում են արգավանդ հողատարածությունները: Հողի
նկատմամբ անփույթ են վերաբերվում հեռագրական, էլեկտրական սյուներ
տեղադրելիս և տարբեր կոմունիկացիաներ անցկացնելիս:

Դեռևս 1968 թ. ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունն ընդունեց
հատուկ որոշում, որի համաձայն ժամանակավոր հողօգտագործողները պար-
տավոր են իրենց հաշվին վերականգնել գյուղատնտեսական արտադրության
համար պիտանի հողերը: Սակայն վերակուլտիվացումը կատարվում է միայն
աննշան հողատարածություններում:

Գյուղատնտեսական ձեռնարկություններում մի քանի հեկտար հողի կո-
րուստը կամ օտարումը դեռևս լուրջ քննարկման առարկա չի դառնում և կոնկ-
րետ միջոցներ չեն ձեռնարկվում որևէ մեկին պատասխանատվության ենթար-
կելու համար: Հայտնի է, նյութական արժեքների վատնման, փչացման հա-
մար խիստ պատժվում են մեղավորները, նրանց ստիպում հատուցել վնասը:
Բայց, արդյոք, որևէ մեկը պատժվե՞լ է հարյուրավոր, հազարավոր հեկտար
արժեքավոր հողեր փչացնելու համար... Կոլտնտեսականների համամիութե-
նական III համագումարում նշվեց, որ հողի ամեն մի փչացում, ինչպես նաև
անփույթ վերաբերմունքը հողի բերրիությունը բարձրացնելու նկատմամբ
պետք է դիտել որպես հակահասարակական արարք, որպես ժողովրդի բարե-
կեցության նյութական հիմքի խարխլում: Սակայն հողի փչացման ու անփույթ
վերաբերմունքի համար ոչ ոք անձնական, նյութական կամ քրեական պա-
տասխանատվության չի ենթարկվում, կարծես թե հողը ժողովրդական հարըս-
տություն չէ:

Օգտագործելի հողերի շռայլման և դրա նկատմամբ անտնտեսվար վերա-
բերմունքի հիմնական պատճառն այն թյուր կարծիքն է, թե հողը բնության
պարգևն է: Հետևապես «ձրի» է: Նման մտածելակերպի հետևանքով, գյուղա-

տնտեսական արտադրության հետ առնչություն չունեցող տարբեր կազմակերպություններ, ելնելով միայն իրենց շահերից, հողի նկատմամբ անհոգի, երբեմն հանցագործության հասնող վերաբերմունք են ցույց տալիս։

Հայտնի է, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մեկընդմիշտ ոչնչացրեց հողի մասնավոր սեփականությունը, ամբողջ հողը դարձավ համաժողովրդական սեփականություն և անվճար օգտագործման հանձնվեց ժողովրդին։ Այլ խոսքով, հողը որպես արտադրամիջոց անհատույց և առհավետ տրված է աշխատավորությանը արդյունավետ օգտագործելու համար։ Մեծ Հոկտեմբերի տնտեսական ու քաղաքական ամենախոշոր նվաճումներից մեկն է այդ։ Հենց դրանում է հողի ձրի հասկացության էությունը։

Այսօր գյուղատնտեսության ոլորտում օգտագործվող հողերը բազմաթիվ սերունդների աշխատանքի արդյունք են, ուստի, դրանք ունեն որոշակի տնտեսական արժեք։ Հետևապես հողը և հողօգտագործումը ձրի չէ, ինչպես ձրի չի կարող լինել հասարակական արտադրության որևէ արտադրամիջոց։ Նշելով հողի դերը գյուղատնտեսության մեջ՝ Վ. Ի. Լենինն ընդգծել է, որ այն «... անկասկած, արտադրության գլխավոր միջոցն է...»։

Հողային օրենքով սահմանված է, որ այն հիմնարկ-ձեռնարկությունները, որոնց շինարարության և ոչ գյուղատնտեսական այլ կարիքների համար հատկացվում են օգտագործելի հողեր, պարտավոր են լիարժեք փոխհատուցել գյուղատնտեսական արտադրության կորուստները և հողօգտագործողներին պատճառած վնասը։

Տվյալ դեպքում անհրաժեշտ է հաշվի առնել ապրանքային տնտեսության այնպիսի կատեգորիաներ, ինչպիսիք են՝ այս կամ այն հողից ստացվող զուտ եկամուտը, շահութաբերությունը, հողի գինը։ Այս կապակցությամբ հատուկ ուշադրության է արժանի սոցիալիստական մի շարք երկրների հարուստ փորձը։ Այսպես, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում շինարարության և այլ կարիքների համար օգտագործելի հողերն առանձնացնելիս հաշվարկվում է հողի գինը։ Իսկ հողի և այլ բնական հարստությունների նկատմամբ անփույթ վարվելու կամ փչացնելու դեպքում հանցավորները տուգանվում են 10—10.000 մարկ։ Ըստ որում, տուգանքը գանձվում է ոչ թե հիմնարկության հաշվից, այլ անմիջականորեն այն անձից, ով մեղավոր է։

Այժմ Սովետական Միության առանձին հանրապետություններում զգալի գործ է արվել հողի գնի և գնահատման բնագավառում։ Սակայն մեր հանրապետությունում այդ ուղղությամբ դեռևս շատ քիչ գործ է կատարվել։

Տնտհաշվարկային հարաբերությունների զարգացման պայմաններում հողի գնի և գնահատման հարցերի ճիշտ լուծումը սկզբունքային նշանակություն ունի, որը կհանդիսանա հողի խնայողաբար ու արդյունավետ օգտագործման տնտեսական հիմքը։ Միաժամանակ այն կնպաստի հողային օրենսդրության տնտեսական արդյունավետության բարձրացմանը։

Հողային օրենքն ունի իրավական մեծ ուժ. ուստի, անհրաժեշտ է խստորեն պահպանել օրենսդրության հիմունքները և վճռականապես բարձրացնել հողօգտագործողների նյութական պատասխանատվությունը։ Քանի որ հողը, որպես բացառիկ ու անփոխարինելի արտադրամիջոց, պատկանում է ո՛չ միայն մեզ, այլև ապագա սերնդին, հետևապես, մեր անմիջական պարտքն է խնայողաբար ու արդյունավետ օգտագործել եղած հողային ռեսուրսները։

Լ. Ի. ԱԴԱՄՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՆԳԻՍՏԸ

Մինչև XX դարը մարդկությունը գիտականորեն չի զբաղվել հանգստի կազմակերպման հարցերով։ Բնակավայրերը կառուցելիս քաղաքաշինարարներին, ճարտարապետներին հիմնականում մտահոգել են բնակավայրի ստրատեգիական դիրքի, իշխանության ու կրոնի ազդեցության պահպանման, արտադրության կազմակերպման և նման այլ խնդիրներ։ Նախկինում հանգիստը տիրող դասակարգի մենաշնորհն էր։ Նրանց համար էին կառուցվում զվարճության բոլոր հարմարանքներով ապահովված դղյակներ՝ շրջապատված այգիներով, անտառներով։ Աշխատավոր դասակարգը հանգստի համար ազատ ժամանակ չի ունեցել, եթե չհաշվենք գործազրկությունը— ակամա հանգիստը։ Այժմ, աշխարհում տեղի ունեցած սոցիալ-քաղաքական խոշոր իրադարձությունների, փոփոխությունների շնորհիվ, հանգստի իրավունք են ձեռք բերել լայն մասսաները։ Ամենուրեք կրճատվել են աշխատաժամերը. շատ երկրներում շաբաթական մեկ օրվա փոխարեն երկու օր է տրամադրված հանգստին, տրվում են տարեկան արձակուրդներ և այլն։ Ներկայումս հատուկ հանգիստն առավել անհրաժեշտ է, քանի որ մարդկության զգալի մասը (մոտ 40 տոկոսը) այժմ ապրում է քաղաքներում (հատկապես մեծ), ուր հիգիենիկ պայմանների վատացման պատճառով բնակչությունը կարիք ունի հանգստի որոշակի պայմանների, թե՛ քաղաքում և թե դրանից դուրս։

Տեխնիկայի աննախընթաց զարգացումը, մարդկության համար ստեղծելով մեծ առավելություններ՝ արտադրության, տրանսպորտի, կենցաղի և այլ բնագավառներում, հատկապես մեծ քաղաքներում ապրողների համար հարուցեց նաև բացասական երևույթներ՝ մթնոլորտի, ջրի, հողի ապականումը քիմիական թունավոր նյութերով, աղմուկը, փոշին և այլն, որոնց հետևանքով ամենուրեք վատանում են հանգստի պայմանները։ Ահա ինչու հանգստի կազմակերպումը ժամանակի կարևոր խնդիրներից է և սերտ ու անմիջականորեն առնչվում է ճարտարապետության, քաղաքաշինության հետ։

Մարդն այժմ հիմնականում ապրում է իր ստեղծած արհեստական միջավայրում, ուր արտադրատեղը, բնակարանը, հասարակական շենքերը, ինչպես և հանգստի հարմարանքները և այլն, ստեղծվում են ճարտարապետության, քաղաքաշինության միջոցներով։ Ուստի, պատահական չէ «Ճարտարապետությունը և հանգիստը» պրոբլեմի քննարկումը ճարտարապետների միջազգային միության XI կոնգրեսում (որը տեղի ունեցավ 1972 թ. աշնանը Բուլղարիայի ծովափնյա առողջավայրում՝ Վառնայում)։ Կոնգրեսին մասնակցում էին 54 երկրների ներկայացուցիչներ, այդ թվում և Սովետական Միությունը։ Հայաստանի պատվիրակներն էին՝ ճարտարապետներ Կ. Հակոբյանը, է. Պապյանը, Ա. Կանայանը և տողերիս հեղինակը։ Հակոբյանի ելույթը նվիր-

ված էր Հայաստանին, նրա հանգստարանային ու տուրիստական հնարավորությունների։ Զեկուցումն ուղեկցվում էր գունավոր կինոֆիլմի ցուցադրմամբ։

Հանգստի պրոբլեմն այստեղ քննարկվեց 3 տարբեր ասպեկտներով— ամենօրվա, շաբաթական և տարեկան։

**Ամենօրյա հանգիստ**— առավել կարևոր ու բարդ է դրա բովանդակությունը։ Այն ընդգրկում է ո՛չ միայն հատուկ հանգստին նվիրվող ժամանակը, այլև կյանքի բոլոր մյուս պրոցեսները։ Այսպես, օրինակ, եթե աշխատատեղում լավ պայմաններ են (լավ լուսավորություն, օդափոխություն, ջերմություն, հաճելի ձևավորում, չկան աղմուկ և այլ տհաճ երևույթներ), աշխատողը համեմատաբար քիչ է հոգնում, աշխատանքը լինում է հաճելի, արտադրողականությունը՝ բարձր։ Եթե աշխատանքի գնալու համար մարդը կորցնում է երկար ժամանակ՝ ավտոբուսում, մի կերպ խցկված (հաճախ երկու տարբեր մարշրուտով), ապա նա աշխատավայր է հասնում հոգնած։ Մարդը կարող է հաճույք ստանալ և ինչ-որ չափով հանգստանալ, եթե ընդմիջման ժամին նախաճաշի լավ սպասարկվող ճաշարանում։ Այդ տեսակետից ավելի մեծ դեր են խաղում մարդու բնակարանային պայմանները։ Ի՞նչ հանգստի մասին կարող է խոսք լինել, երբ բնակելի տան կողքով, նեղ փողոցով (առանց կանաչապատ շերտի) անցնում է տրանսպորտը, հարևան բնակարանների աղմուկը լսվում է ձեր բնակարանում, բակն անբարեկարգ է, աղմկոտ և... կարելի է անվերջ թվարկել նման երևույթներ, որոնք ստեղծում են բնակարանային անհանգիստ վիճակ։ Բնակարանում, բնակելի թաղամասում այնպիսի պայմաններ պիտի լինեն, որ մարդը սիրի իր բնակարանը, բակը, շրջապատը. հիմնականում այդ կապված է քաղաքաշինական ու ճարտարապետական խնդիրների ճիշտ լուծման հետ։ Բավական չեն միայն կենցաղի համար անհրաժեշտ պայմանները, անհրաժեշտ է նաև, որ բնակելի միջավայրը էսթետիկական հաճույք պատճառի։ Քաղաքի բնակիչների՝ հիմնականում նստակյաց կյանքի հետևանքով անհրաժեշտ է բնակելի թաղամասում ունենալ սպորտով զբաղվելու հարմարանքներ։ Առանձին սպորտային բազաներում մարզվել կարող են միայն հատուկ սպորտով զբաղվողները՝ սպորտսմենները։ Այսպես, օրինակ, Երևանում, վաղ առավոտյան, կարելի է տեսնել՝ ինչպես «կանաչ գոտու» ծառուղում (Մռավյան և Խանջյան փողոցների միջև ընկած այգիները) ամեն տարիքի շատ քաղաքացիներ (նաև հարևան թաղամասերից), մարզվում են, վազում, վարժություններ կատարում, որովհետև իրենց տներին կից համապատասխան հարմարություններ չկան։ Անհրաժեշտ է բոլոր միկրոշրջաններն ու թաղամասերն ապահովել դրանցով։ Անշուշտ, մեծ նշանակություն ունի նաև իրենց՝ բնակիչների նախաձեռնությունը. եթե ընդհանուր բակերում՝ մասնավոր այգիների, բանջարանոցների, գարաժների, լվացքի և այլ հարմարանքների ստեղծման համար գործադրվող ջանքերը նվիրվեն բակերի բարեկարգմանը, դրանք օրինակելի տեսք կունենան։ Տնային կառավարչությունները մեծ մասամբ բակերը «բարեկարգում» են ձևականորեն. պատրաստում են տաղավարներ և պասսիվ հանգստի նման այլ միջոցներ. երեխաների համար խաղերի, սպորտի հարմարանքների փոխարեն ամառվա ամիսներին, այսպես կոչված՝ «պիոներական ճամբարներ» են կազմակերպում։ Տեղի է ունենում «ճամբարի» բացումը ու դրանով ամեն ինչ ավարտվում է։

Ինչ խոսք, եթե այդ ճամբարները ծառայեին իրենց նպատակին, պատշաճ ձևով կազմակերպեին քաղաքում մնացող երեխաների ամառային հանգիստը,



այդ մասին չէինք էլ հիշի, միանգամայն խրախուսելի համարելով նման նախաձեռնությունը։ Բայց, քանի որ դրանք միայն ձևական բնույթ ունեն, չենք կարող մեր քաղաքացիների, ինչպես և ճամբարները կազմակերպողների ուշադրությունը մեկ անգամ ևս չհրավիրել այս կարևոր խնդրի վրա։

Երեխաներին անհրաժեշտ է վազել, թռչել, լողալ, զբաղվել սպորտային զանազան խաղերով, ծախսել իրենց մեջ կուտակված էներգիան։ Մեծահասակների համար ևս պետք է ստեղծել ակտիվ հանգստի ձևեր, չսահմանափակվելով նարդիով ու շախմատով։ Բակերում անհրաժեշտ է ավելի ակտիվ պայքարել հակահասարակական երևույթների դեմ։ Այժմ հարյուրավոր ընտանիքներ են ապրում մի բակում, և բնակիչներն իրենց ապրելակերպը պետք է համապատասխանեցնեն կոլեկտիվ բնակեցման կանոններին։ Մեր հանրապետությունում անելիքներ շատ կան կոլեկտիվ բնակեցման կուլտուրայի մակարդակի բարձրացման մարզում։

Ինչպես վերը նշեցինք, ամենօրյա հանգստի ապահովման գործոններից են և հասարակական տրանսպորտի, առևտրի, սննդի, կենցաղսպասարկման պատշաճ կազմակերպումը և այլն։ Մեր կարծիքով հարմար կլինի, որ կաթնամթերք վաճառող խանութներն իրենք գնորդներին մատակարարեն կաթնամթերք, հատուկ գործակատարների միջոցով առաքելով այն տները։ Գնորդների ժամանակի տնտեսման հետ մեկտեղ այդ ձևը կապահովի նաև վաճառքի կարգավորումը և կնպաստի այն բանին, որ խանութն ունենա վաճառքի կայուն պլան։ Նույն ձևով կարելի է կազմակերպել և հացի վաճառքը։ Ինչո՞ւ պետք է Նորքի զանգվածի բնակիչը հաց գնի Կիրովի փողոցի վրա գտնվող խանութից։

Հասարակական սննդի բավականին զարգացած ցանցն այժմ հիմնականում սպասարկում է շատ քիչ հաճախորդների. անգամ հիմնարկություններին կից բուֆետները, սրճարանները և ճաշարանները հաճախ չեն բավարարում տվյալ հիմնարկության աշխատողներին. նրանք գերադասում են ընդմիջման ժամին տուն հասնել նախաճաշելու համար, կամ աշխատատեղում մի կերպ կազմակերպել նախաճաշը։

Ավելի վատ է դրությունը կուլտուրական սպասարկման բնագավառում։ Մինչև օրս էլ կուլտուրական սպասարկման օբյեկտները (ակումբներ, կուլտուրայի տներ) կառուցվում են ո՛չ թե միկրոշրջաններում, բնակչության որոշակի մասի համար, այլ քաղաքի որոշ տեղերում (հիմնականում կենտրոնում) բոլորի համար։ Կուլտուրայի միկրոշրջանային օջախներն անհրաժեշտ են բնակչության ո՛չ միայն կուլտուրական սպասարկման, այլև հասարակական ակտիվության, նրա ինքնագործունեության զարգացման նպատակով. դրանք միաժամանակ ամենօրյա հանգստի կազմակերպման հարմար օբյեկտներ են և լուրջ ուշադրություն պետք է նվիրել այս մարզում տարվող աշխատանքներին։

**Շաբաթվա հանգստի** պրոբլեմը համեմատաբար նոր երևույթ է մեր հանրապետության բնակչության համար։ Հանգստի այդ ձևը չի դարձել մեր ժողովրդի սովորույթը։ Անցյալում եղել են ժողովրդական տոների (մեծ մասամբ կրոնական) հետ կապված սովորույթներ, դեռ հեթանոսական ժամանակներից եկող ուխտագնացություններ և այլն։ Բնակավայրից դուրս կազմակերպվող այդ յուրահատուկ հանգստին ուղեկցում էին զանազան ժողովրդական խաղեր, մրցություններ... Հետզհետե, կրոնի ազդեցության թուլացման բերումով այդ ուխտագնացությունները վերածվեցին բնության գրկում զվարճանալու սովորույթի։ Այժմ թե՛ անհատական մեքենաների և թե՛ հասարակական տրանսպոր-

տի զարգացումը հնարավորություն է ընձեռում բնակչության զգալի մասին՝ շաբաթ և կիրակի օրերին քաղաքից դուրս գտնվող հանգստավայրերում վերականգնելու իր ուժերը, աշխատունակությունը։ Ավելացել է հյուրանոցների, պանսիոնատների, հանգստյան տների թիվը, ստեղծվել են հասարակական սննդի կազմակերպման նորանոր ձևեր։

Դեպի բնության գեղեցիկ վայրերը, պատմական հուշարձաններն են ձգվում նոր, բարեկարգ ճանապարհներ։ Սակայն այդ հնարավորությունները դեռևս լիովին չեն կարող ապահովել մեր բնակչության շաբաթական (շաբաթ և կիրակի օրերի) հանգիստը։ Խիստ օրինաչափ է ութ հարյուր հազարանոց բնակչությամբ մեր մայրաքաղաքի, ինչպես և Արարատյան դաշտավայրի մյուս բնակավայրերի աշխատավորների պահանջը՝ և՛ ամառային, և՛ ձմեռային հանգստի, սպորտի կազմակերպման համար պայմաններ ապահովելու տեսպարեզում։

Շաբաթական հանգստի համար մեզ մոտ շատ հարմար են նախալեռնային և լեռնային վայրերը, Սևանի ավազանը. վերջինս վիթխարի պոտենցիալ հնարավորություններ ունի ջրային սպորտի համար. այն նպաստավոր է և բուժական առումով. ահա թե ինչու Սևանի մակերեսը պետք է ծածկվի առագաստանավերով, մակույկներով, իսկ արևաշատ եզերքը դառնան հարմարավետ լողափեր՝ սպորտային ամեն տեսակ հարմարանքներով։ Սևանի ավազանի ձյունաշատ և արևոտ կլիման մեծ հնարավորություններ է ընձեռում կազմակերպելու նաև ձմեռային սպորտի զանազան ձևեր։ Սակայն, եթե մինչև վերջերս մտահոգիչ էր Սևանի ափերի ամայությունը, ապա այժմ կարևորագույն խնդիր է դարձել Սևանն անկազմակերպ, պատահական կառույցներով շրջապատելու պրակտիկայի արգելումը։ Բազում կազմակերպություններ ցանկանում են Սևանի ափին կառուցել առողջարաններ, հանգստի տներ, պանսիոնատներ և այլն, և այդ ամենն անպայման ափի երկայնքով։ Նման պրակտիկան կհանգեցնի այն բանին, որ լճի ափերին ի վերջո չի մնա ոչ մի կտոր անաղարտ, ազատ բնական տարածություն։

Այժմ մշակվում են զանազան նախագծեր թե՛ Սևանի ավազանի ընդհանուր հատակագծի և թե հատուկ հանգստի գոտիների ստեղծման նպատակով։ Շինարարության ընթացքը կարգավորելու, աննախագիծ կամ անորակ նախագծերով կատարվող շինարարությունն արգելելու համար հարկ է, որ Սևանը հնարավորին չափ շուտ կառուցապատվի այդ նախագծերին համապատասխան։ Շաբաթական հանգստի համար հարմարավետ են լեռնային անտառապատ վայրերը, որոնցով հարուստ է մեր հանրապետությունը։ Նման վայրերը տարածությամբ մեծ չեն, ուստի և հարկ է լավ, սրտացավ խնամել, պահպանել դրանք, չօգտագործել այլ նպատակներով՝ թողնելով դրանք իբրև բնության անձեռնմխելի արգելոցներ։ Հանգստավայրերում անհրաժեշտ է ստեղծել սպասարկման հարմարավետ օբյեկտներ, հյուրանոցներ և այլ կառույցներ, չվնասելով բնական միջավայրի ինքնատիպ տեսքին։ Այսպես, երբ ավտոխճուղին մոտեցավ Դիլիջանի անտառներում գտնվող Պարզ լճին, այն կորցրեց իր հմայքը. նրա շուրջն այժմ ավտոբուսներ են, աղմուկ, անմաքրություն...

Այսպիսով, հանգստավայրերի օգտագործումը, դրանց բարեկարգումը և սպասարկման անհրաժեշտ օբյեկտների կառուցումը շատ պատասխանատու գործ է, և նախագծումները պետք է կատարվեն ինչպես հարկն է։ Զուր չէ, որ հիշատակված կոնգրեսում պատվիրակություններից մեկի ներկայացուցիչը,



անդրադառնալով այդ պրոբլեմին, ասաց. «Մեզ այժմ ավելի շատ մտահոգում է ոչ այնքան կառուցելու, որքան չկառուցելու, անմտածված կառուցումներից բնության հրաշալիքները պահպանելու խնդիրը»։ Ինչ խոսք, հաճելի է, երբ ճարտարապետական կառույցը տեղադրվում է գեղեցիկ բնական միջավայրում. ամեն մի ճարտարապետ ձգտում է դրան. բայց կան տեղեր, որ պետք է թողնել անձեռնմխելի. չի կարելի ամեն մի գեղեցիկ բլրի, ժայռի գագաթին, լճի, գետի ափին շենք կառուցել. թերևս ավելի հարմար կլինի այն բլրի ստորոտում, լճից, գետից փոքր-ինչ հեռու։ Հատուկ նախանձախնդրություն է պահանջվում բնության պահպանության գործում. որոշ հանգստացողներ անփույթ են վերաբերվում, կեղտոտում են շրջապատը, կոտրատում ծառերի ճյուղերը, փչացնում կանաչը... Ամենուրեք հարկ է ստեղծել սպասարկման բարեկարգ, բոլորին մատչելի անհրաժեշտ հարմարություններ, և մարդիկ ստիպված չեն լինի իրեր, սննդամթերք քարշ տալ հետները, կամ անտեղի ժամանակ վատնել դրա համար։ Մեր հանրապետությունում բոլոր պայմանները կան շաբաթվա հանգիստն ինչպես հարկն է կազմակերպելու համար։

**Տարեկան հանգիստը** մասամբ առնչվում է շաբաթական հանգստի ձևերի հետ այն առումով, որ նույն վայրերը կարող են օգտագործվել և այդ նպատակներով։ Այս հանգստի ամենատարածված, լավագույն ձևերից է տուրիզմը. այն ո՛չ միայն հանգիստ է, այլև մեծ հաճույք և օգնում է ուրիշ ժողովուրդների, նրանց մշակույթին ծանոթանալուն, հարստացնում մարդու գիտելիքները, ընդլայնում հետաքրքրասիրությունների շրջանակը, նպաստում այլ երկրների միջև բարեկամական հարաբերությունների հաստատմանն ու ծավալմանը, խաղաղասիրական գաղափարների տարածմանը։ Պատահական չէ, որ վերջին ժամանակներս ամենաբարձր մակարդակով տեղի ունեցող բանակցություններում համաձայնագրեր են կնքում տուրիզմի ընդարձակման վերաբերյալ։

Կոնգրեսում հրապարակվեցին հետաքրքրական շատ նյութեր տուրիզմի մասին։ Այժմ տարեկան 120 մլն մարդ տուրիստական ուղևորության է մեկնում։ Նրանց մեծ մասն այցելում է Եվրոպա։ Կոնգրեսից հետո, շրջագայելով Բուլղարիայում Զլատի պեսկի (Ոսկե ավազներ), Սոլնեչնի բրյագ (Արևի ափ) և այլ վայրերում, մենք ականատես եղանք տուրիզմի ծավալման ասպարեզում կատարվող շատ աշխատանքների. աչքի էին զարնում դրանց քաղաքաշինական ու ճարտարապետական բարձր մակարդակն ու նուրբ ճաշակը։ Առանձնապես ուշագրավ էր այն հանգամանքը, որ Բուլղարիայի հին, պատմական նշանակություն ունեցող բնակավայրերում (Վելիկո-Տրնովո, Նեսեբեր և այլուր) հին բնակելի տները վերանորոգելիս և անգամ նորերը կառուցելիս բնակիչները ջանում էին պահպանել գոյություն ունեցող ճարտարապետական կոլորիտը, զուգակցել նորն ու հինը, կրկնելով պատշգամբների, սյունաշարերի յուրահատուկ ձևերը, կղմինդրածածկ տանիքները, ոճային ընդհանուր գծերը։ Այնտեղ անձեռնմխելի են նաև բոլոր ժամանակների պատմական հուշարձանները՝ իրենց շրջապատով։

Պատմական հուշարձաններով հարուստ երկրներից մեկն է Հայաստանը։ Մեզ մոտ, մի կողմից, մեծ միջոցներ ու ջանք են գործադրվում հուշարձանների պահպանման, մյուս կողմից՝ թե՛ անցյալում և թե այժմ, որոշ մարդկանց՝ հուշարձանների նկատմամբ սխալ հայեցակետի, դրանց նշանակությունը չհասկանալու հետևանքով, ինչպես հարկն է չեն պահպանվում այդպիսիք։ Այս առնչությամբ նշենք, որ մեր հանրապետության պատմական հուշարձանների

պահպանման (ինչպես և բնության պահպանության) ընկերությունը ինչպես հարկն է չի կատարում այն ամենը, ինչ անհրաժեշտ է մեր ժողովրդի կուլտուրայի պահպանության այս հույժ կարևոր բնագավառում։

Մեր հանրապետությունն ունի տարեկան հանգստի հարմար շատ հանգըստավայրեր։ Ծովի մակերևույթից 1200 մետր բարձր գտնվող բոլոր բնակավայրերում կարելի է կազմակերպել առողջարաններ, հանգստի տներ։ Ամենուրեք կլիմայական գործոններին զուգակցվում է հանքային բուժիչ ջրերի առկայությունը։ Առողջավայրերից օգտվելու համար շատ մեծ նշանակություն ունեն մասսայական տրանսպորտի հատուկ ձևերը։ Այսպես, Եվրոպայի լեռնային առողջավայրերի և տուրիզմի ամենազարգացած երկրներից մեկում՝ Ավստրիայում, կան 81 լեռնային երկաթուղիներ («ատամնավոր երկաթուղի») և հարյուրավոր վերելակներ ու ճոպանուղիներ, որոնցով ուղևորվելը և՛ ժամանակն է տնտեսում, և՛ հարմար է։ Ճոպանուղիները պետք է լայնորեն կիրառվեն նաև մեզ մոտ։ Ծաղկաձորի՝ բարձր լեռան գագաթը տանող ճոպանուղու նմանը կարելի է կառուցել նաև Ալավերդուց Սանահին գյուղը գնալու համար (խճուղով այդ ճանապարհը մոտ 15 կմ է, իսկ վերելակով՝ ընդամենը 250 մ)։ Որքա՜ն հարմար կլինի ճոպանուղին նաև Դեբետի կիրճում, ինչպես և Սանահինից դեպի Աքորի գյուղը։ Հանգստի և տուրիզմի զարգացման նպատակով անհրաժեշտ է ավտոերթևեկության ճանապարհներին կառուցել հատուկ հյուրանոցներ, պանսիոնատներ։ Առողջավա՛յրերի մեծ պահանջի, տուրիզմի զարգացման շնորհիվ վերջին տարիներս Հայաստանում զգալիորեն արագացել է առողջավայրերի, պանսիոնատների, սպորտային, մանկական ճամբարների կառուցումը։ Թեև այժմ հանգստի կազմակերպման հիմնական միջոցը հատուկ հանգըստարանների ստեղծումն է, սակայն հովեկներին, տուրիստներին հյուրընկալելու հանգամանքը նույնպես պետք է միշտ նկատի ունենալ։ Այդ ձևն այժմ ևս ընդունված է եվրոպական կուրորտներում։ Հետևապես առողջարանային վայրերում բնակելի տները պետք է կառուցվեն նաև այդ նպատակին համապատասխան հարմարություններ ունեցող շենքերի նախագծերով։

Ընտրելով առողջարանի, հանգստի տան կամ ճամբարի տեղը, նախագծողները բնականաբար փնտրում են հանգստավայրերի անտառապատ, ծաղկաշատ, ամենագեղեցիկ տեղերը, արդեն կառուցված օբյեկտներից որքան կարելի է հեռու, որքան կարելի է մեծ տարածությամբ։ Այս երևույթը ևս կհանգեցնի վատ հետևանքների (ինչպես Սևանում), վերացնելով բնության ազատ, գեղեցիկ տարածությունները, ի վերջո զրկելով մեզ կուսական միջավայրից։ Նման ցրված դասավորությունը, բացի նշվածից, զգալի չափով թանկացնում է շինարարության և, մանավանդ, բարեկարգման աշխատանքները։ Ամեն մի օբյեկտ իր համար կառուցում է ճանապարհներ, ջրմուղ և այլ հարմարանքներ։ Ցանկանում ենք անդրադառնալ նաև մի այլ շատ կարևոր հանգամանքի։ Հայաստանում անտառները գերազանցապես պահպանվել են հյուսիսային լանջերում, իսկ հարավայինները լերկ են։ Մինչդեռ կառուցելով այդ լերկ լանջերին, կարելի է ոռոգման միջոցներ ստեղծելով անտառապատել, գեղեցկացնել դրանք ևս, աջափնյա անտառները թողնելով զբոսանքի, արշավների համար։

Գեղեցիկ է Հայաստանի բնությունը՝ հարուստ կուլտուրայի հուշարձաններով, բայց, քանի որ փոքր են դրանք, պետք է շատ զգույշ լինել դրանց հանդեպ, պահպանել։ Ամեն մի հայրենասերի նվիրական պարտքն է այդ, իսկ ամենից առաջ՝ քաղաքաշինարարների ու ճարտարապետների։

Հ. Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԺԱՄԱՆԱԿԱՎԱՐՁԱՅԻՆ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐՄԱՎՈՐՈՒՄԸ*

Գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ արտադրության ոլորտում ավելի լայն մասշտաբներով են ներդրվում ապարատուրային պրոցեսները, հետևաբար բանվորի հիմնական խնդիրը արտադրության տեխնոլոգիայի խիստ պահպանումն ու արտադրանքի որակի բարելավումն է։ Այդ պայմաններում անհրաժեշտ է վարձատրությունը սահմանել ժամանակավճարով։ Արտադրապրոցեսների մեքենայացմամբ և ավտոմատացմամբ ավելանում են ժամանակավարձով աշխատողները։ Սովետական Միության արդյունաբերության մեջ ժամանակավարձային բանվորները կազմում են սև մետալուրգիայի ձեռնարկությունների բանվորների 82,7, քիմիական արդյունաբերության՝ 89, մեքենաշինության՝ 43, թեթև արդյունաբերության՝ 44, սննդարդյունաբերության՝ 36 տոկոսը։ Մեր հանրապետության սննդարդյունաբերության ձեռնարկություններում այն կազմում է 41,7 (1972 թ.) տոկոս, իսկ դրա մի շարք ճյուղերում՝ կեսից ավելին։

Սննդարդյունաբերության բանվորների ընդհանուր թիվը 1971 թ., 1968 թ. համեմատությամբ, աճել է 14,5, իսկ ժամանակավարձով աշխատողներինը՝ 21,7 տոկոսով։ Բնական է, որ այս պրոցեսը պետք է անընդհատ զարգանա։ Այստեղից էլ՝ բանվորների թվի նորմավորման կարևորությունը։ Դրանով պետք է որոշվեն աշխատանքի անհատական արդյունքները, յուրաքանչյուր բանվորի ավանդը կոլեկտիվի աշխատանքի ընդհանուր արդյունքում։ Սակայն դա չի նշանակում, որ պետք է հրաժարվել գործավարձային աշխատանքից, այն դեռ պահպանվում է և հետագայում երկար ժամանակ գոյություն կունենա։ Խիստ կարևոր է, որ ժամանակավարձի դեպքում օգտագործվեն գործավարձային վարձատրության որոշակի էլեմենտներ։ Մեր կատարած ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ վերջին ժամանակներս սննդարդյունաբերության մի շարք ձեռնարկություններում, մասնավորապես ձեթ-օճառի կոմբինատում, Սպիտակի շաքարի գործարանում, որտեղ գերազանցապես ապարատուրային պրոցեսներ են, հիմնական բանվորների մեծ մասը վարձատրվում է ժամանակավարձով։ Այստեղ լավ է կազմակերպված այդպիսի բանվորների աշխատանքի նորմավորումը, յուրաքանչյուր բանվորական տեղի համար սահմանված են տեխնիկապես հիմնավորված հերթափոխային առաջադրանքներ, և գործը ժամանակին ու որակով կատարելիս նրանք պարգևատրվում են։ Նորմավորված է գինու, գարեջրի, ոչ-ալկոհոլային խմիչքների և հանքային ջրերի լցման հոսքային գծերը սպասարկող խոտանողների աշխատանքը, որոնք ժամանակավարձային

* Տպագրվում է հարցադրման կարգով։— Խմբ.։

բանվորների ընդհանուր թվում նշանակալի տեսակարար կշիռ ունեն։ Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ժամանակավարձատրությունն անհրաժեշտ է կիրառել հիմնական արտադրության այնպիսի տեղամասերում, որտեղ արտադրանքի թողարկման տեխնոլոգիական պրոցեսները խիստ չափավորված են, և թողարկվող արտադրանքի քանակը կայուն է։

Արտադրապրոցեսի նորմալ և արդյունավետ գործունեության համար անհրաժեշտ է խստորեն պահպանել տեխնոլոգիական ռեժիմը, որով պայմանավորված է արտադրանքի որակը։ Չափավորված տեխնոլոգիական պրոցեսներից են պահածոների գործարաններում՝ տոմատ-մածուկի եփման, պահածոների պաստերիզացման, գարեջրի գործարաններում՝ գարեջրի ածիկացման, եփման ու խմորման գործողությունները։ Սակայն բանվորներին բարձր աշխատավարձ վճարելու համար ինչպես այստեղ, այնպես էլ ուրիշ ձեռնարկություններում, մարդկանց աշխատանքները չհիմնավորված կարգով վարձատրում են գործավճարով և բանվորների համար սահմանում են ցածր լարվածության նորմաներ։

Սննդարդյունաբերության խոշոր ճյուղերից մեկը հացի արտադրությունն է. այստեղ աշխատում են ավելի քան 3.500 բանվորներ, որոնք կազմում են մինիստրության ձեռնարկություններում աշխատող բանվորների 22 տոկոսը։ Հացի գործարաններում հիմնական բանվորները վարձատրվում են գործավարձով։ Սակայն պահանջարկի սահմանափակության պատճառով գործարանների գերակշռող մասը աշխատում է թերբեռնվածությամբ։ Այդ պատճառով նույնատիպ վառարանների համար առանձին գործարաններում սահմանված են արտադրական տարբեր նորմաներ։ Դրա հետևանքով ձեռնարկություններում նույն կարգի բանվորները հավասար աշխատանքի դեպքում ստանում են տարբեր աշխատավարձ, որը և հակասում է ըստ աշխատանքի վարձատրության օրենքին։

Մեր կարծիքով, անհրաժեշտ է հացի և հացաբուլկեղենի արտադրության ձեռնարկություններում կիրառել միայն վարձատրության ժամանակավճարային պարգևատրման սիստեմը։ Դրա համար պետք է գործարաններում մշակել հիմնական և օժանդակ բանվորների թվի հիմնավորված նորմաներ, դրանից ելնելով կարգավորել պարգևատրման սիստեմը, այն հարմարեցնելով արտադրանքի որակական ցուցանիշներին։ Նույն ձևով պետք է վարձատրել նաև պահածոների և գարեջրի գործարաններում տոմատ-մածուկի եփման, պահածոների պաստերիզացման, գարեջրի ածիկացման, եփման ու խմորման պրոցեսներում զբաղված բանվորներին։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ սննդարդյունաբերության ձեռնարկություններում արտադրապրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը մեծ մասամբ կատարվում են հիմնական տեղամասերում, մինչդեռ օժանդակ աշխատանքների մեքենայացման մակարդակը ետ է մնում դրանցից։ Այդ պատճառով ձեռնարկությունների բանվորների կազմում օժանդակ աշխատողները նշանակալի տեսակարար կշիռ ունեն։ Այսպես, Երևանի ծխախոտի փորձարարական կոմբինատում նրանք կազմում են բանվորների ընդհանուր թվի մոտ կեսը, գինու կոմբինատում և շամպայն գինիների գործարանում՝ կեսից քիչ պակաս, պահածոների գործարաններում՝ մոտ 40 տոկոսը։ Նրանց զգալի մասը զբաղված է սարքավորումների ընթացիկ և կապիտալ վերանորոգումով։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ աշխատանքների



համար հնարավոր չէ սահմանել հիմնավորված նորմաներ։ Ուստի, վերանո-
րոգմամբ զբաղվողները պետք է վարձատրվեն ժամանակավարձով։
Մի շարք ձեռնարկություններում, հատկապես Երևանի ձեթ-օճառի, գինու
կոմբինատներում, կոնյակի, շամպայն գինիների և գարեջրի գործարաններում
լավ է կազմակերպված մեխանիկական ծառայության բանվորների աշխատան-
քի նորմավորումը։ Յուրաքանչյուր բանվորական տեղի համար սահմանված են
տեխնիկապես հիմնավորված հերթափոխային առաջադրանքներ, ժամանակա-
վարձային բանվորները պարգևատրվում են այդ առաջադրանքները ժա-
մանակին և որակով կատարելու համար։ Սակայն առանձին ձեռնարկու-
թյուններում բանվորներին բարձր աշխատավարձ վճարելու նպատակով վերա-
նորոգման աշխատանքները վարձատրվում են գործավարձով։ Երևանի հրու-
շակեղենի-մակարոնի կոմբինատում սարքավորումների ընթացիկ և կապիտալ
վերանորոգմամբ զբաղվող մեխանիկական ծառայությունների բանվորները
վարձատրվում են գործավարձով՝ չունենալով համապատասխան նորմաներ։
Ծխախոտի փորձարարական կոմբինատում, Երևանի և Հոկտեմբերյանի պա-
հածոների գործարաններում սահմանել են այնպիսի նորմաներ, որ աշխա-
տողներն իրենց առաջադրանքները կատարում են 150—250 տոկոսով, իսկ
միջին աշխատավարձը հասնում է 200—250, առանձին դեպքերում՝ նույնիսկ
400 ռուբլու։
Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ժամանակավարձային բան-
վորների աշխատանքի նորմավորումը մեծ մասամբ կրում է սիմվոլիկ բնույթ
և հեռու է բավարար լինելուց։ Շատ դեպքերում արտադրողականության և աշ-
խատանքի պայմանները փոխվում են, սակայն ժամանակավարձային սպա-
սարկման նորմաները մնում են անփոփոխ, մինչդեռ արտադրության տեխնի-
կայի, տեխնոլոգիայի և աշխատանքի կազմակերպման կատարելագործումը
պահանջում է վերանայել ժամանակավճարային նորմաները։ Ձեռնարկու-
թյունների մեծ մասում, հերթափոխային առաջադրանքների կատարման հա-
մար հաշվարկ չի տարվում. առանց հաշվի առնելու նրանց կոնկրետ աշխա-
տանքի արդյունքները, աշխատողները պարգևատրվում են մաքսիմալ չափով,
որը դարձել է ժամանակավարձային բանվորների աշխատավարձի անբաժանե-
լի մասը։
Պահածոների, շաքարի, գարեջրի, ոչ-ալկոհոլային խմիչքների գործարան-
ներում, ձեթ-օճառի ու հրուշակեղենի-մակարոնի կոմբինատներում ժամանա-
կավարձային օժանդակ բանվորների համար կան նրանց թվի տիպային նոր-
մաներ։ Դրանք մշակված են արտադրության տեխնիկայի, տեխնոլոգիայի ժա-
մանակակից մակարդակի և աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձի
օգտագործման հիման վրա, որոնց կիրառումը հնարավորություն կստեղծի կա-
տարելագործելու մոտ 2.000 բանվորների աշխատանքի նորմավորման ու վար-
ձատրության պայմանները և ստանալու տնտեսական մեծ արդյունք։ Սակայն
ձեռնարկություններում այն չի կիրառվում, և բանվորների թիվը սահմանվում է
մոտավոր։
Սննդարդյունաբերության զարգացումը պահանջում է ժամանակավարձա-
յին աշխատանքի ոլորտի անընդհատ ընդլայնում, որը պայմանավորված է
առանձին պրոցեսների մեքենայացման, ավտոմատացման, հոսքային արտա-
դրության առավել լայն արմատավորման և աշխատանքի բարդությամբ։
Ժամանակավարձի կիրառումը չի նշանակում հրաժարվել նորմաներից։

Այս դեպքում վարձատրությունը պետք է սահմանել այնպես, որ նյութապես խթանի արտադրանքի աճը, առավել արդյունավետ օգտագործվեն արտադրաֆոնդերը։ Ժամանակավարձային բանվորների աշխատանքի նորմավորումը պահանջում է ճիշտ գնահատել բանվորի կամ բրիգադայի աշխատանքի արդյունքների համար հաշվարկված միջոցները։ Ելնելով արտադրական կոնկրետ պայմաններից, անհրաժեշտ է ժամանակի միավորի համար մշակել նորմավորված առաջադրանքներ, որոնք պետք է սահմանվեն նորմա-ժամերով կամ հատերով։ Պլանային հանձնարարությունը ժամանակին կատարելիս անհրաժեշտ է խրախուսել անհատական նորմավորված առաջադրանքներ կատարողներին։ Փորձը ցույց է տալիս, որ դժվար է ճիշտ որոշել օժանդակ բանվորների ամսական առաջադրանքի չափերը. ուստի, այն պետք է սահմանել ամեն օր, իսկ պարգևատրումը կատարել ամսվա համար։ Արտադրության այն տեղամասերում, որտեղ հնարավոր չէ ամսական առաջադրանքները պլանավորել (օրինակ, սարքավորումների ընթացիկ վերանորոգումներով զբաղվող մեխանիկական ծառայության բանվորների համար), պետք է սահմանել հերթափոխային առաջադրանքներ և պարգևը վճարելիս հիմք ընդունել ամսվա ընթացքում այդ առաջադրանքների կատարումը։ Ուստի, հարկավոր է որակական ցուցանիշներով հաշվի առնել բանվորի օրվա առաջադրանքը և ամբողջ ամսվա հանձնարարականն իրագործելիս պարգևատրել լրիվ չափով։ Ժամանակավարձային վճարման նման կարգն ապահովում է բանվորների նյութական շահագրգռվածությունը։ Քանի որ պարգևը վճարվում է ամսական պլանների կատարման համար, ապա բանվորը մի հերթափոխում առաջադրանքը չկատարելու դեպքում կարող է մյուսում լրացնել։ Ժամանակավարձային պարգևատրումը, որն օգտագործվում է արտադրական առաջադրանքները կատարելիս, գործարքային վարձատրությունից արդյունավետ է և բանվորների մոտ ո՛չ միայն նյութական շահագրգռվածություն է ստեղծում արտադրանքի թողարկման ու որակի բարելավման համար, այլև նպաստում է վերացնելու գործարքային աշխատավարձի մի շարք թերություններ. նախ՝ հեշտացնում է նորմաների պարզեցման ու վերանայման հետ կապված գործը, այնուհետև բացառվում է աշխատավարձի չհիմնավորված աճը, որը ցածր նորմաներ սահմանելու հետևանք է։ Ժամանակավարձով վճարվող բանվորների մեծ մասը պարգևատրվում է արտադրության հիմնական ցուցանիշների կատարման համար։ Այդ ունի որոշիչ նշանակություն, քանի որ միայն դրանով է հնարավոր գնահատել օժանդակ բանվորների աշխատանքի որակը։ Այն օժանդակ բանվորները, որոնց աշխատանքի արդյունքները որոշակի և անմիջական ազդեցություն են գործում հիմնական արտադրության վրա, իրենց սպասարկած բրիգադայի, հերթափոխի ու տեղամասի արտադրական պլանները չկատարելու դեպքում պետք է զրկվեն պարգևից։ Սարքավորումների ընթացիկ վերանորոգմամբ զբաղված մեխանիկական ծառայության բանվորները արտադրական հիմնական արդյունքների վրա որոշակի ազդեցություն չեն ունենում, սակայն նրանց դերը մեծ է արտադրապրոցեսների նորմալ ընթացքի համար, ուստի, արտադրական պլանը չկատարելիս, մեր կարծիքով նրանք պետք է մասնակիորեն զրկվեն պարգևից։

Արդյունաբերական ձեռնարկություններում պարգևատրման ցուցանիշներն ու պայմանները պետք է սահմանվեն այնպիսի մակարդակով, որոնց կիրառման շնորհիվ ձեռք բերվեն ամենաբարձր արդյունքները։ Ձեռնարկություննե-



րում ղեկավարության, արտադրության և աշխատանքի կազմակերպումը հիմ-
նականում պայմանավորված է ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծա-
ռայողների արդյունավետ աշխատանքով. նրանց թիվը սահմանվում է հաս-
տատված հաստիքային ցուցակներով, որը մշակվում է փորձա-վիճակագրական
մեթոդով։ Այստեղից էլ խիստ անհրաժեշտ է ինժեներա-տեխնիկական աշխա-
տանքի և ծառայողների աշխատանքի նորմավորման կատարելագործումը։ Այն
պետք է ընդգրկի ձեռնարկության բոլոր բաժիններն ու տեղամասերը, դա հատ-
կապես վերաբերում է ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների
թվի նորմաներին։ Անհրաժեշտ է մշակել ու կիրառել գիտականորեն հիմնավոր-
ված նորմաներ։ Արդյունաբերական ձեռնարկություններում գործող նորմաների
և որակի մասին ներկայացվող հաշվետվություններում արտահայտվում են
միայն գործավարձով աշխատող բանվորների վերաբերյալ տվյալները։ Մինչ-
դեռ շատ ձեռնարկություններում աշխատողների մեծ մասը ժամանակավար-
ձային բանվորներն են, ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու ծառայող-
ները, որոնց աշխատանքն ներկայումս չի նորմավորվում. ուստի, հաշ-
վետվությունները լրիվ չեն բնութագրում նորմավորման իրավիճակը։ Անհրա-
ժեշտ է հաշվետվություններում գործավարձային բանվորների հետ արտացոլել
ժամանակավարձային բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների
և ծառայողների աշխատանքի նորմավորման վիճակը։ Այդ հնարավորություն
կընձեռի լրիվ պատկերացում ստանալու ձեռնարկության արդյունաբերական-
արտադրական անձնակազմի աշխատանքի նորմաների հիմնավորվածության
մասին և ճիշտ գնահատելու յուրաքանչյուր կոլեկտիվի աշխատանքի արդյունք-
ները։

Սննդարդյունաբերական ձեռնարկություններում ժամանակավարձային
բանվորների աշխատանքի նորմավորումը կատարելագործելու նպատակով ան-
հրաժեշտ է պահածոների եփման, պաստերիզացման, գարեջրի ածիկացման,
եփման, խմորման և հացի գործարանների հիմնական արտադրապրոցեսներում
զբաղված բանվորներին գործավարձային վարձատրությունից փոխադրել ժա-
մանակավարձային պարգևատրման ձևի, հիմք ընդունելով ժամանակավարձա-
յին բանվորների պարգևատրման համար սահմանված նորմաները։ Սարքավո-
րումների և շենքերի ընթացիկ ու կապիտալ վերանորոգմամբ զբաղված
բանվորներին, որոնց աշխատանքի վարձատրության համար մշակված տիպա-
յին նորմաներ չկան, անհրաժեշտ է փոխադրել վարձատրության ժամանակա-
վարձային պարգևատրման ձևին, սահմանելով տեխնիկապես հիմնավորված
հերթափոխային առաջադրանքներ, պարգևը վճարելով միայն այդ առաջա-
դրանքների կատարման համար։ Ժամանակավարձային բանվորներին պարգևա-
տրելիս սահմանել այնպիսի ցուցանիշներ և պայմաններ, որ ձեռնարկություն-
ները բարձր արդյունք ստանան։

Աշխատանքի նորմավորման վիճակի օբյեկտիվ գնահատման նպատակով
անհրաժեշտ է ձեռնարկությունների ներկայացրած 4 տ. հաշվետվության մեջ,
գործարքային բանվորների հետ միասին, մտցնել նաև ժամանակավարձային
բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին ու ծառայողներին։

Վ. Մ. ԲԱՂՅԱՆ

Սննդարդյունաբերության մինիստրության
ՆԿՏԲ-ի ԱԳԿ լաբորատորիայի վարիչ

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՐԹՈՒՆ ՊԱՀԱԿԸ ԼՈՌՈՒՄ

Վ. Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Լրացավ Հայաստանի կոմունիստական կուսակցության հնագույն կազմա-
կերպություններից մեկի՝ Ալավերդու (ներկայումս Թումանյան) շրջանի Հաղ-
պատ գյուղի սկզբնական կուսակցական կազմակերպության 70-ամյակը: Հաղ-
պատի կազմակերպությունը Հայաստանի կոմունիստական կուսակցության
պատմության մեջ նշանակալի և անջնջելի հետք է թողել: Մեծ է եղել նրա
դերը ո՛չ միայն Ալավերդու շրջանում, այլև ամբողջ Լոռում, իսկ Լոռվա բոլ-
շևիկյան կազմակերպությունը, ինչպես հայտնի է, միշտ էլ ընթացել է Հայաս-
տանի հեղափոխական շարժումների ավանգարդում:

Մի շարք հանգամանքների շնորհիվ Հաղպատ գյուղը բոլշևիզմի ծագ-
ման պահից դարձել է հեղափոխական աշխատանքի կարևոր կենտրոններից
մեկը Հայաստանում և Անդրկովկասում: Հաղպատի բոլշևիկյան կազմակեր-
պության գործունեության հետ են կապված մեր կուսակցության շատ ակա-
նավոր գործիչների՝ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Մ. Ցխակայայի,
Ա. Միկոյանի և ուրիշների անունները: Հաղպատի գյուղացիությունը, բոլշե-
վիկյան կազմակերպության ղեկավարությամբ, ցարական, բուրժուա-կալվա-
ծատիրական կարգերի դեմ առաջին գրոհողներից, Հոկտեմբերյան սոցիալիս-
տական հեղափոխության դրոշը Լոռում առաջին բարձրացնողներից մեկն էր:
Մեծ է նրա ավանդը Լոռվա 1921 թ. ապստամբության հաղթանակի գործում:
Անհա թե ինչու 1923 թվականին, երբ նշվում էր Հաղպատի կոմբջջի 20-ամյա-
կը, ՀԿԿ Կենտրոնական կոմիտեն նրան նվիրեց Կարմիր դրոշ, որի վրա մա-
կագրված էր «Լոռվա հեղափոխության քսանամյա արթուն պահակ Հաղպա-
տի կոմբջջին» («Խորհրդային Հայաստան», № 127, 1933 թ.): Հաղպատի
կոմբջջին, քսանամյակի կապակցությամբ, ջերմորեն ողջունեց ՌԿ(բ)Կ Ան-
դրկովկասյան երկրային կոմիտեն (նույն տեղը):



Հաղպատի կոմբջջի հեղափոխական գործունեության մասին ստեղծվել է
պատկառելի գրականություն: Գրվել և լույս են տեսել մեծ քանակությամբ
հիշողություններ, հոդվածներ, գրքեր, որոնք լուսաբանում են Լոռվա և մաս-
նավորապես Հաղպատի հեղափոխական անցյալը, բոլշևիկյան կազմակեր-
պությունների կազմակերպական ու գաղափարական հարուստ գործունեու-
թյունը, անձնուրաց պայքարը ցարական ու մենշևիկյան-դաշնակցական կար-
գերի դեմ[1]:

Հաղպատն անցյալում մտնում էր Թիֆլիսի նահանգի Բորչալուի գավառի
Լոռվա գավառամասում:

1860—70-ական թվականներին Ռուսաստանում և Անդրկովկասում իրա-
գործված ագրարային ռեֆորմներից հետո էլ Լոռում, ի տարբերություն Երե-
վանի նահանգի, առավել շեշտված կերպով շարունակում էին պահպանվել
ճորտատիրական հարաբերությունների շատ մնացորդներ, տիրակալել կալ-
վածատերերը. խոշոր կալվածքներ ունեին Բարաթաշվիլիները, Լոռիս-Մելի-
քովները, Մոսյանները, Արղությանները, Խանաղյանները և մի շարք մանր
կալվածատերեր ու Էջմիածնի վանքը:

Հաղպատը կալվածատիրական գյուղ էր, նրան շրջապատող վարելահո-
ղերի, արոտավայրերի և անտառների մեծ մասը իշխան Դավիթ (Ջալիկո)
Բարաթաշվիլու (Բարաթովի) ժառանգական սեփականությունն էր: Մի քանի
հարյուր դեսյատին պատկանում էր վանքին: Գյուղացիներին մնում էր շատ
չնչին բաժնեհող՝ ցրված գյուղի տարբեր ծայրամասերում: Բաժնեհողի համար,
վճարումներից բացի, գյուղացիները վճարում էին նաև կալվածատիրոջից
վարձակալած հողի դիմաց, առանց որի նրանք չէին կարող հոգալ իրենց
ապրուստի նվազագույնը: Օգտվելով գյուղացիների անել դրությունից՝ կալ-
վածատերը շատ բարձր վարձագին էր վերցնում: Գյուղացիները պարտավոր
էին հացահատիկի, խոտի և գյուղատնտեսական այլ կուլտուրաների բերքի
$1/3$—$1/4$-ը, ինչպես նաև անասնամթերքներ, հանձնել իշխանին: Բնամթերքից
բացի նրանք իշխանին վճարում էին տարեկան 3.000—4.000 ռուբլի կանխիկ
դրամ և կատարում բազմաթիվ այլ պարտավորություններ: Այսպես, օրինակ,
որսած ձկան կեսը համարվում էր կալվածատիրոջ սեփականությունը:

[1] Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր, Երևան, 1967 թ.,
Ա. Կախոյան (բանվոր Խեչո)— «Կարմիր Հաղպատը» («Մարտակոչ», № 88, 1923 թ.), «Լոռվա
հեղափոխական անցյալից» («Նորք», գիրք II, 1923 թ.), «Հիշողություններ ընդհատակյա աշ-
խատանքների շրջանից» («Հոդվածներ և հուշեր», Երևան, 1963 թ.), Ա. Մռավյան— «Հաղպատի
կոմբջիջը» («Խորհրդային Հայաստան», № 123, 1923 թ.), Ս. Եվոյան— «Լոռու ռևոլյուցիոն
անցյալից» («Հին բոլշևիկների հիշողություններ», գիրք առաջին, Երևան, 1958 թ.), Վ. Ներկա-
րարյան— «ՌՍԴԲԿ բոլշևիկյան կազմակերպությունները և ռևոլյուցիոն շարժումները Լոռում
1905—1907 թվականներին» (Երևան, 1955 թ.), «Մարտերի բովով» («Լենինյան ուղիով», № 8,
1963 թ.), «ՌՍԴԲԿ Հաղպատի կազմակերպությունը և Լոռու բոլշևիկների պայքարը սովետական
կարգերի հաստատման համար» (ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի
ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի ֆիլիալի «Աշխատություններ»,
1972 թ.), Հ. Մելիքյան— «Մարքսիստական կազմակերպությունները և ռևոլյուցիոն շարժումները
Լոռում (1899—1908 թթ.)», (Երևան, 1957 թ.), «Հաղպատի լենինյան-իսկրայական, բոլշևիկյան
կազմակերպության հիմնադրման և ամրապնդման պատմությունից» («Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ
հասարակական գիտությունների բաժանմունքի, № 7, 1963 թ.), Խ. Բարսեղյան— «Հայաստանի
բոլշևիկյան կազմակերպությունների առաջնեկը» («Հայաստանի կոմունիստ», № 8,
1963 թ.), Ռ. Մովսիսյան— «Ագրարային շարժումները Հայաստանում, 1905—1907. հոդվածների
ժողովածու», Երևան, 1955 թ.) և այլն:
լյուցիայի տարիներին» («Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում ռուսական առաջին ռևո-

Նույնիսկ գետի կամրջով անցնելու համար գյուղացիները պարտավոր էին հարկ վճարել կալվածատիրոջը:

Սովորաբար բերքահավաքից ու այգեկութից հետո իշխանի կառավարիչը և հարկահավաքները ստուգում էին գյուղացու ստացած ամբողջ բերքը, վերցնում կալվածատիրոջ բաժինը, որից հետո միայն գյուղացին կարող էր տնօրինել իր բաժինը:

Կալվածատիրական կեղեքումներին գումարվում էին ցարական իշխանությունների, վանքերի և գյուղական տզրուկների կեղեքումները, ինչպես նաև բնական աղետները, երաշտն ու կարկտահարությունը, որոնք քիչ չարիք չէին պատճառում գյուղացու տնտեսությանը:

Ահա Հաղպատ գյուղից 1899 թ. «Մշակ» թերթին ուղարկած մի գյուղացու նամակ, որը ցայտուն կերպով արտացոլում է գեղջուկի ծանր վիճակը:

«Մեր գյուղի դրությունը,— ասված է նամակում,— տարեցտարի շատ է վատանում: Այս տարի դեռ գարնան ժամանակ արտերը լավ բերք էին խոստանում, իսկ հասկի դուրս եկած ժամանակ կարծես բնությունը որոշել էր մեզ պատժել և սաստիկ կարկուտ թափեց, քշեց տարավ մեր արտերը, բացի այդ, մեր սիրելի եզները և լծի գոմեշն ու կովը... ի՞նչ պիտի լինի մեր վիճակը:

Մենք այսչափ գիշեր ու ցերեկ աշխատում ենք մեր 7—8 տարեկան տղա ու աղջիկ երեխաներով, նաև մեր կինը մեզ հետ բոբիկ ոտներով, սակայն տարվա մի քառորդի ապրուստը չենք կարողանում ստանալ: Բնության պատիժը մի կողմից, իսկ մյուս կողմից էլ մեր կալվածատիրոջ պատիժը: Ընթերցող, երևակայիր, մեր գյուղն ընդամենը 100 տուն բնակիչ ունի, 100-ից 50-ը ոչինչ չունի, ոչ եզ, ոչ գոմեշ, ոչ մի չորքոտանի, ինչ է անում չունևորը, ինչպես է պահում իր ընտանիքը... Եվ ահա գալիս է կալվածատիրոջ վճարելու ժամանակը: Տարեկան նրան վճարում ենք միայն փողով 3.000 ռուբլի, իսկ ցորենից, լոբուց և առհասարակ ամեն պտղից, որ տուն ենք տանում, 1/3 մասը կալվածատիրոջն է: Եվ էլ ինչքան որ կթի կով կա ամբողջ գյուղում, յուրաքանչյուր կովից մի փունտ յուղ է առնում և ինչքան էլ ոչխար կա, տարեկան երեք անգամ կաթն է առնում: Էլ մեզ ի՞նչ մնաց: Մի՞թե մենք չենք ուզում, որ մեր կնոջը, երեխաներին չուստի փոխարեն գոնե տրեխ հագցնել...» («Մշակ», № 172, 17 սեպտեմբերի, 1899 թ.):

Այնուհետև նամակի հեղինակը պատմում է գյուղական վաշխառուների շահատակությունների մասին: «Մեր գյուղում,— ասված է նամակում,— մի քանի բանիմաց մարդիկ կան, նրանք մեզանից փողեր են հավաքում, մեզ ասելով թե՝ գնում ենք հաշտարար միջնորդին գանգատ անելու: Մեզ խաբում են, ստանալով փոքի մի թեթև (բայց մեզ համար խոշոր) գումար, գնում են քաղաք քեֆ անելու: Հիշյալ բան հասկացող մարդկանցից մեկն է հայտնի վաշխառու Մարգարը, որը երկրորդ կալվածատեր է դառել մեր գյուղում, ինքն իրան նշանակել է գյուղի հարկերը հավաքող. իհարկե, մեր գյուղացիները հաշիվ չգիտեն, չեն իմանում թե մի տարվա մեջ ի՞նչքան ավել փող է հավաքում մեր խեղճ գյուղացիներից: Մեզ հետո հայտնի դարձավ»:

Շատ հետաքրքրական է նամակի վերջը, ուր հայտնվում է գյուղական տզրուկների դեմ Մարտիրոս Թանդիլյանի ձեռնարկած պայքարի մասին, այն Թանդիլյանի, որը հետագա տարիներին Հաղպատի բոլշևիկյան բջջի հիմնադրման և գյուղացիական շարժման մեջ ականավոր դեր է կատարում:

«Մեր գյուղում,— գրում է նամակի հեղինակը,— կա մի մանրավաճառ,



Մ. Թանդիլյանց անունով, այս պարոնին մենք շատ ենք պարտական, որովհետև կարդալ և հաշիվ գիտե, քննում է Մարգարի հաշիվները, տեսնում է, որ 100 ռուբլի ավել փող է առել գյուղի աղքատ մարդկանցից: Մյուս անգամ կգրեմ թե ո՞րտեղ են մեզանից գրավ վերցրած պղինձն ու ամանները, գորգերը»:

Հաղպատի գյուղացիները հաճախ ըմբոստացել են կալվածատիրական շահագործման դեմ: Բայց նրանց պայքարը մեծ մասամբ կրել է կալվածատիրոջ անձի դեմ ուղղված վրեժխնդրության բնույթ, ներկայացել է մի տարերային պոռթկում՝ իշխանական անլուր կեղեքումների դեմ:

Հաղպատի և ընդհանրապես Լոռու գյուղացիության շարժումը կազմակերպված և նպատակասլաց բնույթ է ստանում անցյալ դարի 90-ական թվականների վերջից և XX դարասկզբից, երբ ամբողջ Ռուսաստանում ինչպես և Անդրկովկասում զարգանում են կապիտալիստական հարաբերությունները, կազմավորվում է արդյունաբերական պրոլետարիատը, ծայր է առնում բանվորական շարժումը:

Մարքսիզմի գաղափարների տարածումը և բանվորական շարժման ծավալը պարարտ հող են ստեղծում սոցիալ-դեմոկրատիայի զարգացման համար, որն Անդրկովկասում ևս իր ձեռքն է վերցնում դեմոկրատական ու պրոլետարական շարժման ղեկավարությունը:

Լոռին, մասնավորապես Հաղպատը, որը մոտ էր Թիֆլիս—Կարս երկաթուղուն, Ալավերդու պղնձահանքերին և պղնձաձուլական գործարանին, Անդրկովկասի վարչական, տնտեսական ու կուլտուրական գլխավոր կենտրոնին՝ Թիֆլիսին, նույնպես ներգրավվում էին սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարությամբ երկրում ծավալվող հեղափոխական շարժման ոլորտը: Մեծ թվով հաղպատցիներ աշխատանքի էին մեկնում Թիֆլիս, Բաքու, Բաթում, ծառայության էին մտնում երկաթուղում, Ալավերդու հանքերում և գործարանում: Այդ գյուղացիները սերտ կապ էին պահպանում գյուղի հետ, իսկ երկաթուղում, Ալավերդու հանքերում և գործարանում աշխատողների մեծ մասն ուղղակի գիշերում էր գյուղում, որովհետև նրանց աշխատավայրերում բնակարաններ չկային: XX դարասկզբին Հաղպատն այլևս Լոռվա ձորերում ու սարերում ծվարած, իր հնամյա վանքով միայն հայտնի, մեկուսի ու ինքնամփոփ բնակավայր չէր, այլ աշխարհի հետ կապված, երկրի անց ու դարձին գիտակ և դրանց արձագանքող մի գյուղ: Անցյալ դարի 90-ական թվականների վերջին արդեն մենք հաղպատցիների ենք տեսնում ՌՍԴԲԿ շարքերում, որոնք դասակարգային պայքարի մարքսիստական տեսությանը գիտակ, մարտնչում են ցարական կարգերի դեմ, պրոպագանդում պրոլետարական հեղափոխության գաղափարները: 1898 թվականին Թիֆլիսում կազմակերպված հայ բանվորների մարքսիստական առաջին խմբակի ակտիվ անդամներից էր Հաղպատից Թիֆլիս եկած, Ադելխանովի կոշիկի փաբրիկայի բանվոր Աստուր Կախոյանը: 1902 թվականին դարձյալ Թիֆլիսում կազմավորված «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» անդամ էր Հաղպատից Թիֆլիս ուսման մեկնած Արամայիս Երզնկյանը, Լոռվա Իգահատ (այժմ Դանուշավան) գյուղից՝ Դանուշ Շահվերդյանը:

Թիֆլիսի առաջավոր բանվորների ու մտավորականների հետ սերտ կապերի մեջ էին հաղպատցի շատ երիտասարդներ՝ Մ. Թանդիլյանը, Ս. Էվոյանը, Ս. Շամբարյանը, Ս. Իսրայելյանը, Ե. Մաթոսյանը, Ա. Սոխակյանը և

ուրիշներ: Լոռում, դեռ 90-ական թվականների վերջից, իր հեղափոխական
գործունեությունը ծավալեց Ստ. Շահումյանը: 1899 թվականին Ջալալօղլում
նա հիմնադրեց մարքսիստական խմբակ, որն իր ազդեցությունը տարածում
էր Լոռվա շատ գյուղերի վրա:

Կալվածատիրական կեղեքումները ճաշակած, դրանց դեմ ատելությամբ
լցված հաղպատցի չքավոր գյուղացիությունը տրամադրված էր հեղափոխա-
կանորեն, նրա սրտին ու մտքին մոտ էին սոցիալ-դեմոկրատական, լենինյան
իսկրայական կազմակերպությունների պրոպագանդան, պրոլետարիատի
բուռն շարժումները, որոնք անօրինակ թափ ու ծավալ էին ստացել 1901—
1903 թվականներին Ռուսաստանում, Թիֆլիսում, Բաքվում, Բաթումում, Ան-
դրկովկասի երկաթուղում: Լոռվա գյուղերը Կովկասի քաղաքներում ծավալ-
ված հեղափոխական գոտեմարտերը սոսկ հեռվից դիտողներ չէին: Գործա-
դուլավորների ու ցուցարարների շարքերում կային նաև շատ լոռեցիներ,
որոնք ցարական իշխանությունների հալածանքների հետևանքով վերադառ-
նում էին հայրենի գյուղերը, քաղաքականապես լուսավորում և կազմակեր-
պում համագյուղացիներին:

Ահա, օրինակ, Ասատուր Կախոյանը: Թիֆլիսում և Բաքվում իր հեղա-
փոխական գործունեության համար նա արդեն մի քանի անգամ ձերբակալվել
և բանտ էր նստել: 1903 թ. հունվարին ազատվելով Մետեխի բանտից՝ նա
մշտապես գտնվում է ոստիկանության հսկողության տակ: Չնայած դրան՝
Կախոյանը բաց չի թողնում քաղաքական ցույցերին մասնակցելու ոչ մի
առիթ: 1903 թ. մարտի 25-ին նա դարձյալ ձերբակալվում է և արտաքսվում
Թիֆլիսից գյուղ:

1903 թ. մայիսի 19-ին Կախոյանը Ժնև, իր ընկերոջը՝ Գ. Կոզիկյանին
նամակով հայտնում էր. «...գնացի Հաղպատ, մի 10 օր մնացի և վերադարձա»
(ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆի-
լիալի կուսակցական արխիվ, ֆ. 4046, գ. 6, թ. 7—8): Նույն թվականի հու-
լիսի 9-ի նամակում նա դարձյալ գրում էր. «Ես վաղը գնում եմ գյուղը» (նույն
տեղը, թ. 9): Իսկ նոյեմբերի 20-ի նամակում խնդրում էր «Դու ինձ նամակ
գրիր հետևյալ հասցեով. Тифлис. Театр казенный, Симону Эвояну,
հանձնել Միխային» (նույն տեղը, գ. 8, թ. 10):

«Միխա»— Ա. Կախոյանի ծածկանուններից մեկն էր, Ս. Էվոյանը Կա-
խոյանի համագյուղացին էր, որը Հաղպատից Թիֆլիս էր մեկնել և աշխատում
էր թատրոնում որպես սևագործ բանվոր:

Վերոհիշյալ փաստերը վկայում են այն կապի մասին, որ կար պրոֆեսիո-
նալ-հեղափոխական, բոլշևիկ Ա. Կախոյանի և Հաղպատի գյուղացիների միջև:

Կախոյանի և գյուղ վերադարձած այլ բանվորների պրոպագանդիստա-
կան ու կազմակերպական գործունեությունը շուտով տալիս է իր արդյունքը:
1903 թվականին Հաղպատում կազմակերպորեն ձևավորվում է երիտասարդ-
ների մի խումբ, որը, ՌՍԴԲԿ Թիֆլիսի կազմակերպության հետ կապվելով,
սկսում է անլեգալ հեղափոխական գրականություն ստանալ ու տարածել գյու-
ղացիների մեջ, գլխավորել ու գիտակցված դարձնել նրանց պայքարը ցա-
րական իշխանությունների ու կալվածատերերի կեղեքումների դեմ:

1903 թվականի մայիսին Հաղպատում սկսվեց գյուղացիական ուժեղ շար-
ժում: Դրա առիթը տվեց հինքը՝ կալվածատեր Բարաթովը, որն իր շռայլ ծախ-
սերը կատարելու համար որոշեց Հաղպատի իր կալվածքները վաճառել



նավթարդյունաբերող-կապիտալիստ Արամյանցին: Վերջինս համաձայնեց
գնել նրանից կալվածքը՝ պայմանով, որ նրան միացնի գյուղացիների այն
բաժնեհողերը, որոնք անմիջական կից էին իշխանի հողամասերին, դրանց
դիմաց գյուղացիներին մի այլ տեղից փոխհատուցելով: Գյուղացիները հրա-
ժարվեցին իշխանի առաջարկած գործարքից, որովհետև հողերի փոխանա-
կումը իրենց ձեռնտու չէր: Հաղպատցիներին ծնկի բերելու համար Բարաթովը
և նրա կալվածքների կառավարիչ Աբդուլաշվիլին բարձրացրին հողերի վար-
ձակալման գինը: Միաժամանակ, դիմելով խաբեության ու կեղծիքի, նրանք
պահանջեցին, որ գյուղացիները երկրորդ անգամ վճարեն նախորդ տարվա,
1902 թվականի կապալավարձը:

Գյուղացիները, բնական է, մերժեցին երկրորդ անգամ կապալավարձ
վճարել, հրաժարվեցին առհասարակ այլևս կալվածատիրոջից բարձր գներով
հող վարձակալել և սկսեցին մշակել այն հողակտորները, որոնք ռեֆորմի
ժամանակ տրվել էին կալվածատիրոջը: Գյուղացիների վարմունքից գազա-
զած կալվածատերը դիմեց զինված ուժի օգնության: 1903 թ. մայիսին
նրա ստրաժնիկները և անտառապահները, Հաղպատ գալով, փորձեցին բռն-
նագրավել գյուղացիների անասունները հորինված «պարտքի» դիմաց: Բայց
հաղպատցիները միահամուռ ուժերով գյուղից դուրս քշեցին ստրաժնիկներին:

ՌՍԴԲԿ Կովկասյան միության օրգան «Պրոլետարիատի կռվի թերթիկը»,
անդրադառնալով Հաղպատի դեպքերին, նշում էր. «Գյուղացիների այդպիսի
համդգնությունը, ինչպես և իրենք գյուղացիներն են բացատրում, նրանց մոտ
հայտնվեց այն լուրից հետո, երբ լսեցին, որ Թիֆլիսում, ուրիշ քաղաքներում
և Գուրիայում նրանց բանվոր եղբայրները պատերազմ են հայտարարել ընդ-
դեմ իր թշնամու՝ կառավարության ու կալվածատերերի» («Պրոլետարիատի
կռվի թերթիկ», № 5—6, 1904 թ.):

Կալվածատիրոջ կամայականությունների դեմ Հաղպատի գյուղացիների
միահամուռ դիմադրությունը կազմակերպել էր երիտասարդների այն խում-
բը, որն արդեն կապված էր սոցիալ-դեմոկրատիայի հետ, ոգեշնչված էր
բանվորների հեղափոխական պայքարով:

Մայիսյան ելույթից հետո է՛լ ավելի է բորբոքվում պայքարը կալվածա-
տիրոջ և գյուղացիության միջև Հաղպատում: Պատրաստվելով նոր գոտեմար-
տերի, Հաղպատի ըմբոստ գյուղացիների ներկայացուցիչներ Մարտիրոս Թան-
դիլյանը, Սիմոն Իսրայելյանը և Արզուման Սոխակյանը դիմում են ՌՍԴԲԿ
Թիֆլիսի կոմիտեին իրենց պայքարին աջակցելու համար: ՌՍԴԲԿ Թիֆլիսի
կոմիտեն որպես պրոպագանդիստներ Հաղպատ է գործուղում պրոֆեսիոնալ-
հեղափոխականներ Մելիք Մելիքյանին («Դեդուշկա») և Ասատուր Կախոյա-
նին, որոնք, գյուղացիների միջ բացատրական աշխատանք տանելուց հետո,
հիմք են դնում Հաղպատում սոցիալ-դեմոկրատական խմբի (տե՛ս Ա. Կախո-
յան, **Հոդվածներ և հուշեր**, էջ 58—59):

Այսպիսով, Հաղպատի սոցիալ-դեմոկրատական խումբը ձևավորվեց գյու-
ղացիական պայքարի թեժ պահին: Նրա անդամներն էին աշխատավորու-
թյան կեղեքիչների դեմ տոկուն մարտնչողներ Մ. Թանդիլյանը, Ս. Իսրայել-
յանը, Ա. Սոխակյանը, Է. Մաթոսյանը, Ս. Շամբարյանը և ուրիշներ: Խումբը
հետզհետե անում էր և ամրապնդվում՝ իր շարքերը ներգրավելով նոր անդամ-
ներ չքավոր գյուղացիներից ու հանքերում աշխատող բանվորներից:

ՌՍԴԲԿ II համագումարից հետո Հաղպատի սոցիալ-դեմոկրատներն ամ-

բողջովին կանգնեցին բոլշևիկյան դիրքերում: Այդպես էլ նրանք մնացին նե-
տագայում, 1905—1907 թթ. հեղափոխության տարիներին: Հաղպատի սո-
ցիալ-դեմոկրատական կազմակերպությունն իր ազդեցությունը տարածեց
Ալավերդու բանվորների և շրջակա գյուղերի վրա: Նրա օժանդակությամբ
կազմակերպվեցին սոցիալ-դեմոկրատական խմբեր երկաթուղում և Ալավեր-
դում: Հաղպատը դարձավ սոցիալ-դեմոկրատական գործունեության կարևոր
կենտրոն Լոռում: Ա. Կախոյանը վկայում է, որ «Գաղտնի ժողովներ տեղի
էին ունենում Հաղպատա բարձրավանդակում: Այդտեղ էին հավաքվում Ալա-
վերդու հանքագործ բանվորներից կազմված փոքրիկ խմբակները և երկաթու-
ղու գծի վրա աշխատող բանվորների բջիջը՝ «ռեմոնտը» (այդպես էին անվա-
նում գյուղացիները երկաթուղու վրա աշխատող բանվորներին)» (Ա. Կախո-
յան, **Հոդվածներ և հուշեր,** էջ 58):

Հաղպատի բոլշևիկյան կազմակերպության հեղափոխական տարեգրու-
թյունը շատ հարուստ է: 1903 թ. նոյեմբերին նա գլխավորեց Հաղպատի գյու-
ղացիների հուժկու ապստամբությունը ցարական իշխանությունների և կալ-
վածատիրոջ դեմ:

1903 թ. մայիսին, պարտություն կրելով, իշխան Բարաթովը դիմեց ցա-
րական դատարանին, որը որոշեց իշխանի օգտին գյուղացիներից բռնագան-
ձել կապալավարձը: Նոյեմբերի 8-ին Բորչալուի գավառային պրիստավը ու-
տիկանների ու ստրաժնիկների հետ եկավ Հաղպատ, որպեսզի ստիպի գյու-
ղացիներին ենթարկվել դատարանի որոշմանը: Գյուղացիները, սակայն, վճռ-
ռեցին դատարանի անարդարացի որոշմանը չենթարկվել և դիմադրություն
ցույց տվին ստրաժնիկներին, որոնք փորձում էին ուժով խլել գյուղացիներից
նրանց անասունները և տնային գույքը: Հաղպատցիները, տղամարդիկ ու
կանայք, քարերով ու բահերով զինված, ստրաժնիկների ձեռքից խլեցին
իրենց անասունները: Ստրաժնիկներն այն ժամանակ կրակ բացեցին նրանց
վրա և տեղն ու տեղը սպանեցին 5 հոգու: Դա ավելի վրդովեց գյուղացինե-
րին, և նրանք սկսեցին գյուղից դուրս քշել ստրաժնիկներին: Միայն ոստիկա-
նական ու զինվորական ուժերով գավառային իշխանություններին հաջողվեց
ճնշել գյուղացիության ապստամբությունը: Ձերբակալվեցին 200 գյուղացիներ:
15 գյուղացու էտապով ուղարկեցին Մետեխի բանտ: Գյուղի վրա դրվեց էկ-
զեկուցիա: Տասը օր շարունակ ոստիկանները ու զինվորները Հաղպատում
դաժան հաշվեհարդար էին տեսնում գյուղացիների հետ, թալանում, ծեծում
նրանց, ավերում ամբողջ գյուղը:

Հաղպատցիների ապստամբության լուրը հայտնի դարձավ ամբողջ Կով-
կասում, Ռուսաստանում և նույնիսկ արտասահմանում: Այդ մասին գրեցին
թերթերը:

Ինն ամիս Մետեխում մնալուց հետո հաղպատցիներին հաջողվեց մեծ
գրավականով ազատվել բանտից՝ մինչև դատավարությունը: Դատավարու-
թյունը տեղի ունեցավ միայն 1905 թ. գարնանը, երբ արդեն երկրում բարձ-
րացել էր հեղափոխության ալիքը: Վախենալով բանվորների ելույթներից՝
Թիֆլիսի դատաստանական պալատի հատուկ ատյանը դատավարությունը
կազմակերպեց Շուլավերում: Հաղպատցիները մեղադրվում էին ոստիկանու-
թյանը զինված դիմադրություն ցույց տալու մեջ: Ամենուրեք աշխատավորների
համակրանքը հաղպատցիների կողմն էր: Շուլավերի գյուղացիությունը բուռն
կերպով արտահայտեց իր համերաշխությունը նրանց: Դատարանը, շուլա-



վերցի զինված հեղափոխականների սպառնալիքների տակ, հարկադրվեց
մեղադրական դատավճիռ չկայացնել. հաղպատցիները անմեղ ճանաչվեցին,
և գործը կարճվեց: Դա հեղափոխական ուժերի խոշոր հաղթանակն էր:

Ծանր ռեպրեսիաներից հետո Հաղպատի բոլշևիկյան կազմակերպությու-
նը կարողացավ նորից ուշքի գալ, վերսկսել իր գործունեությունը: 1905 թվա-
կանին նրա շարքերը համալրվեցին նոր անդամներով՝ Ս. Էվոյան, Ծ. Բեժան-
յան, Պ. Թանդիլյան, Ա. Ճամբարյան, Ալ. Ալիխանյան, Ծ. Պարանյան, Ս. Փի-
րուզյան և ուրիշներ: Մեծ էր նրա ազդեցությունը գյուղացիների շրջանում,
կազմակերպությունը հաջող պայքար էր տանում դաշնակների դեմ: Հաղ-
պատն իրենց ազդեցության տակ պահելու նրանց բոլոր փորձերը ձախող-
վեցին:

Հաղպատի բոլշևիկյան կազմակերպությունը մարտականորեն գլխավո-
րում էր գյուղացիության պայքարը հողի և ազատության համար: Նրա ջան-
քերի շնորհիվ գյուղացիությունը 1906 թվականին կալվածատիրոջը կապա-
լավարձ չվճարեց, համաժողովրդական սեփականություն հայտարարեց վան-
քապատկան հողերը, պաշտպանեց Ալավերդու հանքագործ բանվորների գոր-
ծադուլները և ամեն կերպ աջակցեց նրանց: Հաղպատի կազմակերպությունը
շարունակ գտնվել է Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Մ. Ցխակայայի,
Մ. Մելիքյանի, Ա. Կախոյանի ուշադրության կենտրոնում: Հաղպատում են
գումարվել Լոռվա շրջանի և Բորչալուի գավառի մի շարք կոնֆերանսներ՝
Ստ. Շահումյանի ղեկավարությամբ: Լոռվա և Հաղպատի բոլշևիկների ձայ-
ներով կուսակցության V (Լոնդոնի) համագումարի պատգամավորներ են ըն-
տրվել Ստ. Շահումյանը, Մ. Ցխակայան, Աս. Կախոյանը: Այսպես, օրինակ,
ՌՍԴԲԿ Բորչալուի և Լոռվա ենթաշրջանի կոնֆերանսի բանաձևում բերված
տվյալների համաձայն, որպես կուսակցության V համագումարի պատգամա-
վոր Ստ. Շահումյանին ձայն են տվել 535 հոգի, որոնցից 65-ը՝ Հաղպատից,
35-ը՝ Սանահին կայարանից, 25-ը՝ Ալավերդու գործարանից, 30-ը՝ Ծա-
թերից և այլն (տե՛ս «Դրո» վրացական ս. դ. թերթ, № 19, 10 ապրիլի,
1907 թ.):

Հաղպատի և Լոռու կազմակերպությունը բոլշևիկների կայուն հենարանն
էր Անդրկովկասում: Այդ պատճառով էլ թե՛ 1905—1907 թթ. հեղափոխության
տարիներին և թե ռեակցիայի ժամանակաշրջանում մենշևիկների լիդերները,
նրանց ձեռքում գտնվող կուսակցական մարմինները Անդրկովկասում, ամեն
կերպ աշխատում էին անտեսել դրանք, հայտարարել, թե իբր կազմակերպու-
թյուններ չկան Լոռում:

«Մենշևիկները,— գրում էր Թիֆլիսի բոլշևիկների «Борьба» թերթը
1908 թվականին,— ֆրակցիոն տարաձայնություններից կուրացած, ո՛չ միայն
աշխատում էին ցույց տալ, որ Բորչալուում ոչ մի կազմակերպություն չի եղել.
իրենց գործողություններով նրանք աշխատել են ավերել այն, ինչ պահպան-
վել է» (№ 1, հունիս, 1908, էջ 16):

Հաղպատի կուսակցական կազմակերպության հեղափոխական հարուստ
տրադիցիաներն այսօր բազմապատկվել են, հարստացել կոմունիստական
շինարարության ճակատում՝ աշխատանքային սխրագործություններով:

# ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*

## ԻՆՁ ԿԱՆՉՈՒՄ ԵՆ ԿԵՆՏԿՈՄ. ՄԵԿՆՈՒՄ ԵՄ ՍԻԲԻՐ

1922 թվականի հունվարի սկզբին Նիժնի Նովգորոդից ինձ կանչեցին Կենտկոմ, չհայտնելով պատճառը: Երբ ժամանեցի Մոսկվա, Կենտկոմում ասացին, որ ինձ ուզում է տեսնել Ստալինը, և որ ես պետք է գնամ Կրեմլի նրա բնակարանը: Նա ապրում էր այն շենքում, որի տեղում այժմ Համագումարների պալատն է: Բարձրացա երկրորդ հարկը: Ստալինն զբաղեցնում էր երկու սենյակ՝ նեղ միջանցքով:

Նա ինձ ընդունեց սիրալիր: Ասաց, որ կանչել, զրուցում է ինձ հետ Լենինի հանձնարարությամբ: Խոսքը կուսակցության հերթական, XI համագումարին նախապատրաստվելու մասին էր: Սկսեց այն հարցից, թե այդ տեսակետից ինչպե՞ս է դրությունը մեզ մոտ, Նիժնի Նովգորոդի կազմակերպությունում: Համառոտակի հայտնեցի, որ երկարատև պայքարից հետո մեր կազմակերպությունը բարվոքվել է, համախմբվել լենինյան գաղափարների շուրջը և վստահ ընթանում է դեպի առաջիկա համագումարը: Շլյապնիկովի հետ կապված որոշ խմբիկներ և անձնավորություններ կան, բայց նրանք արդեն առանձին նշանակություն չունեն:

Ըստ երևույթին, Ստալինն այդ հարցը տվեց, որպեսզի մի կերպ սկսի զրույցը, որովհետև Կենտկոմում լավ գիտեին մեր կազմակերպության դրության մասին: Ուստի, նա իսկույն անցավ գործին:

Այն պայմանները, ասաց Ստալինը, որոնցում ընթանում է XI համագումարի նախապատրաստումը, արմատապես տարբերվում են X համագումարին նախորդած պայմաններից: Ոչ մի տեղ տարաձայնություն և բացահայտ խմբավորում կամ քաղաքական պլատֆորմ չի երևում: Կենտկոմը մեծ նշանակություն չի տալիս այն բանին, որ Շլյապնիկովն իր կողմնակիցների նեղ խմբի հետ, մասսաներից կտրված, գաղտնի, խմբակային աշխատանք է ծավալում: Այժմ արդեն նա և իր խումբը լուրջ վտանգ չեն ներկայացնում և, եթե որևէ հակակուսակցական բան ծագի, ապա արագ կձախողվի:

Գլխավոր վտանգը կարող է սպասվել Տրոցկուց և նրա կողմնակիցներից: Բայց առայժմ նրանք իրենց հանգիստ են պահում: Չկա ոչ մի նկատելի տարաձայնություն, որ կարողանար անդրադառնալ կուսակցության վրա: Իհարկե, Տրոցկուց ամեն ինչ կարելի է սպասել: Մինչև համագումարը դեռ երկու ամիս կա: Նա կարող է որևէ քաղաքական խաղ սարքել, բայց, դատելով ամեն ինչից, այժմ դա քիչ հավանական է: Պետք է ենթադրել, որ, խրատված համագումարի դառը փորձից, ավելի շուտ նա կընտրի այլ տակտիկա. համագումար կգնա առանց տարաձայնությունների, առանց պլատֆորմների, ցուցադրելով լիակատար միասնություն: Դրանով նա հույս ունի բթացնել կուսակցության զգոնությունը, վերականգնել իր հեղինակությունը, ավելի շատ կողմնակիցներ անցկացնել Կենտրոնական կոմիտեում: Պլատֆորմների և տարաձայնությունների բացակայության դեպքում պատգամավորներն իրենց ձայնը կուսակցության կենտրոնական օրգանների թեկնածուների օգտին կընտան միայն նրանց անձնական արժանիքները նկատի ունենալով, մոռանալով անցյալ սկզբունքային տարաձայնությունները: Եվ, եթե այսպիսի պայմաններում Կենտկոմում ընտրվեն համեմատաբար շատ նախկին տրոցկիստներ, ապա, համագումարը ցրվելուց հետո, դա վտանգավոր կլինի Կենտկոմի աշխատանքի համար: Հետո Տրոցկին կարող է գլուխ բարձրացնել, տարաձայնություններ հարուցել Կենտկոմում և, հենվելով իր կողմնակիցների վրա, ամեն կերպ դժվարացնել Կենտկոմի գործունեությունը, խանգարել կուսակցությանը՝ Լենինի ղեկավարությամբ ամբողջովին կենտրոնանալու դրական աշխատանքի վրա, կարող է պայքար սկսել Կենտրոնական կոմիտեի դեմ, ինչպես այդ եղել էր 1920 թվականի աշնանը:

Այդ պատճառով, ասաց Ստալինը, մեզ մտահոգում է այն, թե ինչպիսի՛ պատգամավորներ կգան առաջիկա կուսակցական համագումարին և արդյոք նրանց մեջ շա՞տ տրոցկիստներ կլինեն:

Այդ տեսակետից մեզ անհանգստացնում է Սիբիրը: Այնտեղ դեռևս բավական շատ տրոցկիստներ կան: Նրանք որոշակի վստահություն և ազդեցություն են վայելում իրենց կազմակերպություններում, ուստի և վտանգ կա, որ նրանցից շատերը կընտրվեն համագումարի պատգամավորների թվում:

— Ահա ինչու,— ասաց նա վերջում,— Լենինն ինձ հանձնարարել է կանչել ձեզ, պատմել այդ իրադրության մասին և, եթե դուք համամիտ եք կուսակցության մեջ իրերի դրության վերաբերյալ այդպիսի հայացքին, ապա խնդրել ձեզ մեկնել Նովո-Նիկոլաևսկ[1] Լաշևիչի[2] մոտ, Լենինի անունից նրան հաղորդելու այն ամենը, ինչ ասացի ձեզ այստեղ...

Առանց տատանվելու հայտնեցի, որ համաձայն եմ, պատրաստ եմ այդ հանձնարարությամբ Սիբիր գնալ, բայց պետք է թեկուզ մեկ օրով Նիժնի Նովգորոդ անցնեմ: Ստալինը համաձայնեց: Բացի դրանից, նա ասաց, որ Սիբիր պետք է գնամ որպես թե իմ անձնական, ընտանեկան գործերով, և հատկապես նախազգուշացրեց, որ իր բոլոր ասածների մասին պետք է հաղորդել անձամբ միայն Լաշևիչին:

— Բանն այն է,— ասաց Ստալինը,— որ այժմ Կենտկոմի սիբիրյան բյուրոյի քարտուղարն է Եմելյան Յարոսլավսկին: Արհմիութենական դիսկուսիայի ժամանակ նա հանդես էր գալիս Տրոցկու դեմ, գրավելով ճիշտ, լենինյան դիրքեր: X համագումարից հետո, որոշ ժամանակ կուսակցության Կենտկոմի քարտուղար էր նա, բայց թույլ աշխատող էր և որոշեցինք նրան դարձնել Կենտկոմի Սիբբյուրոյի քարտուղար: Նրա այժմյան տրամադրություններն ու դիրքավորումն առայժմ մեզ անհայտ են: Ուստի,— ասաց Ստալինը,— Կենտկոմի հանձնարարությունը հաղորդեք միայն Լաշևիչին. նա կհաղորդի ում հարկ կհամարի և գործնական հետևություններ կանի, որպեսզի սիբիրյան պատգամավորների մեջ ավելի քիչ տրոցկիստներ լինեն...

Ստալինի հետ ունեցած իմ զրույցը գրի չեմ առել, բայց դրա բովանդակությունը լավ է պահպանվել հիշողությանս մեջ:

...Ես պատրաստվում էի հեռանալ, երբ հանկարծ կամացուկ բացվեց դուռը (երեկո էր, արդեն մթնում էր), և ներս մտավ Լենինը՝ վերարկուով, կեպկայով: Բարևեց և ժպտալով Ստալինին ու ինձ նայելով միայն իրեն հատուկ աչքերի կկոցումով, կատակով ասաց.

— Ի՞նչ է, դուք շարունակ ձեր կովկասյան տարաձայնություննե՞րն եք քննարկում:

Ստալինը պատասխանեց, որ ինձ հաղորդել է այն ամենը, ինչի մասին պայմանավորվել էին, որ ես համաձայն եմ և մեկ օր հետո կգնամ Լաշևիչի մոտ:

Ես շփոթվեցի Լենինի հետ ունեցած այդ անակնկալ հանդիպումից և շտապեցի հեռանալ, հրաժեշտ տալով Լենինին ու Ստալինին[3]:

Մտածելով Լենինի ասածի մասին, ես հասկացա, որ նա, ըստ երևույթին, արտասանեց այն, վերհիշելով ազգային հարցի կապակցությամբ իմ և Ստալինի հարաբերությունները:

Պետք է ասել, որ այդ հանդիպման ժամանակ Ստալինը լավ տպավորություն թողեց:

Բանն այն է, որ երբ ես գնում էի նրա բնակարանը, ակամա հիշեցի, թե ինչպես 1919 թվականին, երբ կովկասյան կուսակցական գործերով եկել էի Մոսկվա՝ Լենինի մոտ, Ստալինը երկու անգամ Կենտկոմից առաջադրանք ստացավ կարծիք տալ իմ այն առաջարկությունների առթիվ, թե անհրաժեշտ է այն ժամանակ Ադրբեջանում գոյություն ունեցող Ռուսաստանի կոմկուսի և «Հումմեթ» ու «Ադելյաթ» կազմակերպությունները միավորել որպես Ադրբեջանի միասնական ՌԿ(բ)Կ կազմի մեջ մտնող կոմունիստական կուսակցություն, ինչպես և Ադրբեջանական անկախ բուրժուական հանրապետությունը վերածել Սովետական Ռուսաստանի հետ սերտորեն կապված սովետական հանրապետության:

---

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով» № 9. 1973 թ.:

[1] Այն ժամանակ Սիբիրի երկրամասային կենտրոնը: Այժմ դա Նովոսիբիրսկ մարզային քաղաքն է:

[2] Լաշևիչ Մ. Մ.— Կուսակցության անդամ 1901 թվականից: Այն ժամանակ ՌԿ(բ)Կ Կենտկոմի Սիբիրյան բյուրոյի անդամ, Սիբիրի հեղկոմի նախագահը: Հետագայում, 1925—1926 թվականներին, զինովևյան օպոզիցիայի ակտիվ գործիչ: Օպոզիցիային մասնակցելու համար ՀամԿ(բ)Կ XV համագումարի կողմից վտարվել է կուսակցությունից, բայց հետագայում վերականգնվել է:

[3] Այդ ժամանակաշրջանի որոշ իրադարձությունների մասին ես պատմել եմ իմ «Խոսքեր և հիշողություններ Լենինի մասին» գրքում, որը հրատարակվել է 1970 թվականին:

Բայց երկու անգամ էլ Ստալինին մի կերպ հաջողվում էր խույս տալ Կենտկոմի այդ հանձնարարությունները կատարելուց և դրանով իսկ կասեցնել իմ բարձրացրած հարցերի քննարկումն ու դրանց վերաբերյալ Կենտկոմի որոշման ընդունումը (ճիշտ է, այդ չխանգարեց, որ մի քանի ամիս անց Կենտկոմը, այնուամենայնիվ, որոշումներ ընդուներ այդ երկու հարցի առթիվ, և հենց իմ առաջարկած որոշումները)։

Սակայն այն ժամանակ իմ առաջարկությունների նկատմամբ Ստալինի այդպիսի վերաբերմունքը չէր կարող իմ մեջ որոշակի տհաճություն և դժգոհություն չհարուցել։

Բացի այդ, ինձ վրա ինչ-որ տհաճ տպավորություն թողեց նաև կուսակցության X համագումարում ազգային հարցի վերաբերյալ Ստալինի եզրափակման խոսքը, երբ, իր զեկուցման առթիվ, նա պատասխանում էր իմ և մի քանի այլ պատգամավորների քննադատական դիտողություններին։ Նրա ելույթն այն ժամանակ ինձ թվաց չափից ավելի խիստ։

Բայց այն պահից ի վեր ժամանակը կատարել էր իր գործը։ Իսկ այդ վերջին հանդիպումը, մեր զրույցը, դրա հանգիստ, բարյացակամ տոնը և, իհարկե հիմնականը՝ այն, որ նման զրույցը Լենինը հանձնարարել էր հատկապես Ստալինին և ոչ թե Կենտկոմի քարտուղարներից որևէ մեկի (այդ ժամանակ Ստալինը դեռևս Կենտկոմի քարտուղար չէր),— այդ ամենը մի տեսակ համակրելի էր դարձնում նրան և, վերացնում հին, տհաճ զգացումը։

Մեկ օրով անցնելով Նիժնի, ես կրկին վերադարձա Մոսկվա, Կենտկոմում համապատասխան հանդերձանք ստացա Սիբիրի ցրտերից պաշտպանվելու համար և նույն օրն էլ գնացքով մեկնեցի Նովո-Նիկոլաևսկ։

...Այն ժամանակ Մոսկվայում սաստիկ սառնամանիքներ էին, բայց ես դեռ կարող էի մի կերպ դիմանալ։ Սակայն, որքան դեպի հյուսիս-արևելք էինք գնում, սառնամանիքներն ավելի ու ավելի էին սաստկանում։ Բարեբախտաբար, վագոնները լավ էին տաքացվում, շոգեքարշի վառելափայտ շատ կար, անցնում էինք Ուրալի թավախիտ անտառների միջով։

Վագոնի պատուհանից ես նայում էի այդ ձյունածածկ անտառներին։ Անվերջանալի թվացող այդպիսի մեծ անտառազանգվածներ ես դեռ չէի տեսել։ Նայում և մտածում էի. «Ահա թե ինչպիսի՜ն է Ռուսաստանը»։

Սովոր չլինելով սառնամանիքներին, ես վախենում էի կայարաններում դուրս գալ։ Միայն Պերմի, Սվերդլովսկի երկարատև կանգառներում, իսկ այնուհետև Օմսկում և Բարաբինսկում դուրս եկա վագոնից՝ տեսնելու համար այդ կայարանները։

Ամեն ինչ բարձիթողի էր արված։ Միայն բուֆետներում և կայարանային շուկաներում ասես թե զգացվում էր նէպ-ի առաջին շունչը...

Երբ գնացքն սկսեց անցնել սիբիրյան հարթավայրերով, բնապատկերները փոխվեցին։ Պատուհանից երևում էին արդեն ոչ թե անտառներ, այլ անծայրածիր, ձյունածածկ հարթություններ։ Մերթ-մերթ հանդիպում էին ձյան մեջ թաղված գյուղեր։ Գյուղական խրճիթներից բարձրացող թանձր ծուխը, սփռվելով սպիտակ ձյան ֆոնի վրա, ամեն ինչին ինչ-որ առանձին երանգ էր տալիս...

Մինչև Նովո-Նիկոլաևսկ գնացինք ութ-ինը օրում։ Դուրս գալով վագոնից, զարմացա, որ ի տարբերություն մյուս երկաթուղային կայարանների, որոնք, որպես կանոն, ունեին քարե մեծ շենքեր, այստեղ, Նովո-Նիկոլաևսկում կայարանի շենքը փայտից էր՝ բավական անբարետես երկհարկանի մի շինություն։

Իհարկե, ինձ ոչ ոք չդիմավորեց։ Կայարանի մոտ ոչ մի տրանսպորտ, ոչ մի կառապան։ Պետք էր ոտքով գնալ։ Մի այլ, ավելի սովորական ջերմաստիճանի դեպքում այդպիսի զբոսանքը կարող էր հաճելի լինել։ Բայց քառասունհինգ աստիճանի հասնող սիբիրյան սառնամանիքը թափանցում էր մարդու ամբողջ մարմինը, ոչ մի «կենտկոմական հանդերձանք» այստեղ չէր օգնում...

Երկինքն անասելի պարզ էր, քամի չկար, իսկ շնչելը գնալով ավելի էր դժվարանում։

Գնում էի արագաքայլ, հետո վազում էի, որպեսզի գոնե մի կերպ տաքանամ... Ամեն հինգվեց րոպեն մեկ վազելով մտնում էի առաջին պատահած խանութը՝ շունչ առնելու և գոնե փոքր-ինչ տաքանալու...

Կայարանում ինձ ասացին, որ գնալով «ուղիղ այդ ճանապարհով», կարելի է դուրս գալ հրապարակ՝ Սիբհեղկոմի երկհարկանի քարե շենքի մոտ, որտեղ տեղավորված էր նաև Կենտկոմի Սիբբյուրոն։

Որոշ ժամանակ անց ես, վերջապես, հասա հրապարակ և Սիբհեղկոմի շենքին։ Ի դեպ, կայարանից մինչև այդտեղ առաջին քարե շենքն էր այդ...

Մտա Կենտկոմի Սիբբյուրոյի այն աշխատողի մոտ, որ գործուղվածների գործերն էր վարում, ցույց տվի Նիժնի Նովգորոդի նահանգկոմի քարտուղարի վկայականս և ասելով, թե այստեղ եկել եմ անձնական գործերով, խնդրեցի մի քանի օրով տեղ տալ ինձ հանրակացարանում։

Լաշևիչը տեղում չէր, նա ժամանակավորապես բացակայում էր։ Բնականաբար, որոշեցի սպասել նրա վերադարձին։

Տեղավորվելով հանրակացարանում, ցրտերի պատճառով ոչ մի տեղ չէի գնում։ Սպասում չիմա-



նալով, թե երբ է վերադառնալու Լաշևիչը, նստել էի տանը, գիրք էի կարդում, հանգստանում և... ձանձրանում։

Երկու օր անց, երեկոյան հանրակացարան մտավ մի ընկեր և ասաց, որ ինձ իր տունն է հրավիրում Խուդորովսկին։ Այն ժամանակ մենք ծանոթ չէինք, բայց գիտեի, որ դեռևս հեղափոխությունից առաջ որոշ ժամանակ նա աշխատել է Կովկասում։ Աչքի ընկնող աշխատող էր նա։ Այն ժամանակ նա այստեղ վարում էր Կենտկոմի Սիբբյուրոյի կազմբաժինը։

Իմանալով որ քաղաքում եմ, վճռել էր հրավիրել ինձ և շատ լավ ընդունեց։

Սենյակը, ուր մենք հանդիպեցինք, մեծ էր, հարմարավետ։ Վառվում էր բուխարին, հատակին գորգեր էին։ Հաճելի էր, իսկ գլխավորը... տաք։

Անկաշկանդ զրուցում, միմյանց պատմում էինք մեր կազմակերպությունների իրադրության մասին. նա Սիբիրի, ես՝ Նիժնի Նովգորոդի։ Վերհիշում էինք Կովկասը, մեր ընդհանուր բարեկամներին ու ծանոթներին...

Հասկանալի է, ես նրան չհայտնեցի գալուս նպատակը։ Ասացի, որ այստեղ եմ եկել անձնական, ընտանեկան գործերով։ Նա չհետաքրքրվեց և այդ թեմայի շուրջ խոսակցությունը չշարունակեց։ Ընդհանրապես լավ անցկացրինք այդ երեկոն և ջերմորեն բաժանվեցինք։

Մի քանի օր հետո Լաշևիչը վերադարձավ։ Ես իսկույն հանդիպեցի նրան և պատմեցի այն հանձնարարության մասին, որ տրված էր ինձ Լենինի անունից։

Ուշադիր լսելով ինձ, շատ ուրախացած նա ասաց.

— Լավ է, որ դուք եկել և բերել եք այդ ցուցումները։ Մենք, որպես գավառացի, նման ոչ մի բան մտքներովս իսկ չէինք անցկացնում և, անշուշտ, նախկին շատ տրոցկիստներ մեզ մոտ կընտրվեին համագումարի պատգամավոր։ Բայց այժմ դա հաշվի կառնենք։ Մոսկվայում հայտնեք, որ Սիբիրի համար Լենինը չանհանգստանա։

## ՆԱՀԱՆԳԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ ՆՈՐ ՏԵՂԱԿԱԼԸ

Ուղևորությունը դեպի Սիբիր տևեց երեք շաբաթից ավելի։ Վերադառնալով, նորից եղա Ստալինի մոտ, պատմեցի հանձնարարության կատարման, Սիբիրի կուսակցական կազմակերպությունների ընդհանուր դրության, իմ տպավորությունների, այն մարդկանց մասին, որոնց առիթ էի ունեցել հանդիպելու։

Զրույցի վերջում Ստալինն անսպասելիորեն ասաց, որ Կենտկոմում մտածում են մեր նահանգկոմ աշխատանքի ուղարկել Ուգլանովին, որը մինչ այդ եղել էր Պետրոգրադի նահանգկոմի քարտուղարը։

— Այնտեղ նա լեզու չգտավ Զինովևի հետ, սկսվեցին անախորժություններ, և Կենտկոմը որոշեց Ուգլանովին ետ կանչել Պետրոգրադից։ Դրա հետ մեկտեղ,— ասաց Ստալինը,— Ուգլանովն ընդունակ, աճող կուսակցական գործիչ է։ Նա դուրս է եկել գործակատարների միջավայրից, կուսակցության մեջ է մտել դեռևս հեղափոխությունից առաջ։ Ունի ղեկավար կուսակցական աշխատանքի փորձ։ Մենք նպատակահարմար ենք համարում նրան ուղարկել ձեզ մոտ՝ Նիժնի։ Նա կարող էր առայժմ ձեզ մոտ աշխատել որպես կազմբաժնի վարիչ՝ Կորշունովի փոխարեն, իսկ որոշ ժամանակ անց, երբ ձեր կազմակերպությունում արմատներ գցի, իսկ ձեր այլ աշխատանքի անցնելու ժամանակը գա, հենց Ուգլանովն էլ կարող է փոխարինել ձեզ։ Իսկ ինչ վերաբերում է Կորշունովին, ապա նրան աշխատանքի կուղարկենք մի այլ նահանգ...

Ուգլանովի վերաբերյալ առաջարկությունն ինձ համար, կրկնում եմ, անսպասելի էր։ Բանն այն է, որ ես Ուգլանովին անձամբ ծանոթ չէի։ Բայց Ստալինն այնպես համոզիչ նրան երաշխավորեց, որ ես չէի կարող առարկել նրա առաջարկության դեմ։ Բացի դրանից, հասկանում էի, որ երկրի ամենախոշոր կուսակցական կազմակերպություններից մեկի քարտուղարի պոստից գալով մեզ մոտ, Ուգլանովը, անշուշտ, գլուխ կհանի այստեղի աշխատանքից։

Այդպես էլ պայմանավորվեցինք։ Ես վերադարձա Նիժնի, իսկ մի քանի օր անց եկավ նաև Ուգլանովը։ Իսկույն նրան ներգրավեցինք նահանգկոմի գործնական աշխատանքում՝ նշանակեցինք կազմբաժնի վարիչ, ընդգրկեցինք նահանգկոմի և բյուրոյի կազմում։ Բացի դրանից, ցանկանալով Ուգլանովին ավելի շուտ և ավելի հիմնավոր ծանոթացնել մեր կուսկազմակերպության հետ, կազմակերպեցինք նրա մի քանի զեկուցումները շրջանային կուսակցական ժողովներում։ Այսպես, Առափնյա շրջանի կոմունիստների ժողովում միջազգային դրության վերաբերյալ իմ զեկուցումից հետո Ուգլանովը հանդես եկավ «ՌԿԿ Կենտկոմի նոր որոշումը արհմիությունների խնդիրների մասին» զեկուցմամբ։ Մի ուրիշ անգամ նա զեկուցեց կուսակցական շինարարության հերթական խնդիրների մասին։ Ես ներկա էի նրա զեկուցմանը և հանդես եկա այդ ժողովում։

Պետք է ասեմ, որ Ուգլանովն առանձին հռետորական տաղանդ չուներ։ Բայց նրա զեկուցումները լավ էին, խելացի, հասկանալի։ Դատելով այն բանից, թե ինչպես էին անցնում նրա զեկուցումների քննարկումները և, ընդհանրապես

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



★

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉԸ

★

Հայ մարքսիստների մի ստվար ջոկատ անցել է Ռուսաստանի պրոլետարիատի հակացարական, հակաբուրժուական պայքարի բովով, ակտիվորեն մասնակցել նրա երեք հեղափոխությանը, իր ավանդը ներդրել մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածման ու հաղթանակի, նոր, սոցիալիստական կարգերի ստեղծման գործում: Նրանց թվում իր պատվավոր տեղն ունի նաև առաջին հայ մարքսիստներից մեկը՝ Սարգիս Հայկի Բաղդատյանը: Բոլշևիկյան բոցաշունչ պրոպագանդիստ է եղել նա ու սոցիալիստական էկոնոմիկայի տաղանդավոր կազմակերպիչ, իր ողջ ուժերը, փորձն ու գիտելիքները նվիրաբերել է սոցիալիստական հեղափոխության հաղթանակին ու նրա նվաճումների պաշտպանությանը:

Ս. Հ. Բաղդատյանը ծնվել է 1887 թ. սեպտեմբերի 29-ին, Շուշի քաղաքում, բանվորի ընտանիքում: Իր հեղափոխական գործունեությունն սկսել է երկաթուղային բանվորների շրջանում, Ելիզավետպոլ (այժմ՝ Կիրովաբադ) կայարանում, ուր 1903 թ. ընդունվում է բոլշևիկյան կուսակցության շարքերը, իսկ 1905 թ.՝ ոսկե մեդալով ավարտում գիմնազիան:

1905 թ. գարնանը, երբ ամբողջ երկրով մեկ ծավալվել էր գործադուլային շարժումը, երիտասարդ բոլշևիկ Բաղդատյանը ակտիվորեն մասնակցում է Ելիզավետպոլյան երկաթուղայինների գործադուլի կազմակերպմանը: Հետապնդվելով ցարական իշխանության կողմից՝ այդ նույն թվականի ամռանը մեկնում է արտասահման՝ Շվեյցարիա, ապա՝ Գերմանիա, որտեղ հնարավորություն է ունենում ծանոթանալու հեղափոխական գրականությանը, ըմբռնելու տակտիկական հարցերը, որոնք ՌՍԴԲԿ-ն բաժանեցին երկու հակադիր թևի՝ բոլշևիկների ու մենշևիկների:

1905 թ. վերջին վերադառնալով Կովկաս՝ Ս. Բաղդատյանը դառնում է բանվոր դասակարգի հեղափոխական շարժման ակտիվ մարտիկ: 1906—1907 թթ. նա մտնում է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի կազմի մեջ և հեղափոխական գործունեություն ծավալում բանվորների ու տեղական կայազորի զինվորների շրջանում, մասնակցում «Գոլոս կազարմի» բանակային թերթի հրատարակմանը:

Տասը տարի՝ 1908 թ. մինչև 1917 թ., բանտարկությունների ու աքսորների միջև ընկած շրջանում, Բաղդատյանը հեղափոխական ակտիվ գործունեություն է ծավալում Պետրոգրադի բանվորների, գլխավորապես մայրաքաղաքի Նարվայի շրջանում, ուր գտնվում էին արդյունաբերական խոշոր ձեռնարկությունները, այդ թվում Պուտիլովյան գործարանը: Այդ շրջանի անունով էլ Բաղդատյանը կրում է «Սերգեյ Նարվսկի» կուսակցական մականունը:

Ռեակցիայի տարիներին Ս. Բաղդատյանը օտզովիստների ու լիկվիդատորների դեմ հանդես է գալիս այնպիսի բոլշևիկ-լենինյանների հետ, ինչպիսիք էին՝ Մ. Ի. Կալինինը, Վ. Ա. Շելգունովը, Ն. Գ. Պոլետաևը, Ա. Մ. Բույկոն և ուրիշներ: Նա պաշտպանում է լենինյան դիրքորոշումը, բոլշևիկյան արտասահմանյան կենտրոնին կանոնավոր ինֆորմացիա տալիս Պետերբուրգի կազմակերպության գործերի վիճակի մասին, բոլշևիկյան տակտիկայի հրատապ հարցերին նվիրված հոդվածներով հանդես գալիս «Պրոլետարի» և «Սոցիալ դեմոկրատ» լենինյան թերթերի էջերում:

Այդ ժամանակ Պետերբուրգի բոլշևիկները իրենց հակացարական գործունեությունը ծավալում էին նաև կուլտուր-լուսավորական մի շարք ընկերությունների միջոցով: Հակաալկոհոլային համագումարին, օրինակ, մասնակցում են ՌՍԴԲԿ Պետերբուրգի կոմիտեի լավագույն ներկայացուցիչները: Նրանց թվում էր նաև Ս. Բաղդատյանը, որը Ս. Ի. Պետրով անվամբ հանդես է գալիս ցարական քաղաքականությունը մերկացնող ճառով: 1910 թ. հունվարի 7-ի գիշերը տեղի են ունենում մասսայական խուզարկումներ ու ձերբակալություններ: Պահնորդությունը ձերբակալում է Պետերբուրգի կենտրոնական բյուրոյի ողջ կազմը: Ս. Բաղդատյանը երեք տարով աքսորվում է Արխանգելսկի նահանգ:

Աքսորավայրում ևս բոլշևիկ Ս. Բաղդատյանը շարունակում է հեղափոխական աշխատանք տանել: Տեղի փայտասղոցման գործարանի բանվորներից ստեղծում է սոցիալ-դեմոկրատական խմբակ, հանդես գալիս «Պրավդա» թերթի ֆոնդի համար միջոցների հանգանակության նախաձեռնությամբ, կենտրոնից դուրս է գրում անլեգալ կուսակցական գրականություն: Լենայի ոսկու հանքերի բանվորների գնդակահարության օրերին հենց աքսորավայրում նա կազմակերպում է ընդհատակյա տպարան և հրատարակում թռուցիկներ:

1912 թ. հունիսի 15-ին Բաղդատյանը փախուստի է դիմում Օնեգայի աքսորավայրից: Թաքնվելով մի ռուս բանվորի անտառատնակում՝ նա ոտքով, անտառներով ու ճահիճներով, հասնում է Հյուսիսային երկաթուղու մոտակա կայարան, իսկ այնտեղից՝ Պիտեր, Մոսկվա, ապա՝ Փարիզ, որտեղ վեց ամիս աշխատում է բոլշևիկյան սեկցիայում:

1913 թ. Ռոմանովների տան 300-ամյակի առթիվ մանիֆեստ է հրապարակվում՝ քաղբանտարկյալներին ներում շնորհելու մասին: Ռուսաստան մեկնելու իրավունք ստանալով՝ Ս. Բաղդատյանը որոշում է հայրենիքի ճանապարհին կանգ առնել Կրակովում, որպեսզի հանդիպի Վ. Ի. Լենինին: Առաջնորդը ջերմորեն է ընդունում Բաղդատյանին, զրուցում նրա հետ, ապահովում անհրաժեշտ փաստաթղթերով՝ անձնագրով ու հրահանգներով, և ուղեկցում մինչև կայարան:

Լենինի առաջադրանքով վերադառնալով Ռուսաստան՝ Բաղդատյանը նորից ներգրավվում է հեղափոխական գործունեության մեջ: Որոշ ժամանակ պրոպագանդիստական աշխատանք է տանում Թիֆլիսում, դիսկուսիոն ժողովներում հանդես գալիս մենշևիկների ու էսեռների դեմ:

1914 թ. աշնանը, երբ բորբոքվել էր առաջին համաշխարհային պատերազմի բոցը, Բաղդատյանը նորից Պետրոգրադում էր (այդ թվականից այդպես էր կոչվում Պետերբուրգը), բանվորների շրջանում, նորից դառնում է բոլշևիկների Պետրոգրադի կոմիտեի ակտիվ գործիչներից մեկը: Դասախոսություններով ու զեկուցումներով հանդես գալիս բանվորների և տեղական կայազորի զինվորների առջև, նրանց պայքարի կոչում՝ իմպերիալիստական, թալանչիական պատերազմի ու նրա կողմնակիցների դեմ:

Այդ ժամանակ ռուսաստանյան կապիտալիստները, ստանալով ցարի թույլտվությունը՝ կենտրոնում և տեղերում ռազմական արդյունաբերությանը զարկ տալու նպատակով սկըսում են ստեղծել ռազմա-արդյունաբերական կոմիտեներ: Բուրժուազիան որոշում է այդ կոմիտեներին կից կազմակերպել «բանվորական խմբեր», նրանց մեջ ընդգրկել բանվորների ներկայացուցիչներին և դրանով իսկ բանվորական շարժումը ենթարկել իրենց ազդեցությանը:

Բոլշևիկները, ճիշտ է, դեմ էին այդ կոմիտեներին բանվորների մասնակցությանը, սակայն որոշում էին ագիտացիոն նպատակով մասնակցել ընտրությունների առաջին տուրին՝ փաբրիկաներից ու գործարաններից պատգամավորների ընտրությանը: Եվ երբ 1915 թ. սեպտեմբերի 27-ին Պետրոգրադում ստեղծվեց ընտրողների համաքաղաքային ժողով, բոլշևիկների կոմիտեն որոշում է իր երկու ներկայացուցիչներին՝ Ս. Հ. Բաղդատյանին ու Վ. Ի. Զալեժսկուն, ուղարկել այնտեղ՝ հանձնարարելով նրանց ելույթ ունենալ բանվորական խմբի անունից և շարադրել բոլշևիկյան տեսակետները: Այդ խնդիրը Բաղդատյանը կատարում է փայլուն կերպով: Հանդես գալով այդ ժողովում պուտիլովյան

բանվոր Ա. Յ. Կուդրյաշևի անունով՝ նա մերկացնող ճառ է ասում մենշևիկների դեմ և ապահովում բոլշևիկների տակտիկայի հաղթանակը: Այդ մասին Աննա Իլյինիչնա Ուլյանովա-Ելիզարովան հայտնում է Շվեյցարիայում գտնվող Վ. Ի. Լենինին, որը բարձր է գնահատում բոլշևիկների հաղթանակը:

Ռազմա-արդյունաբերական կոմիտեների ընտրությունների արդյունքների մասին Ս. Բաղդատյանը հանգամանորեն պատմում է ՌՍԴԲԿ կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատ» թերթի 1916 թ. փետրվարի 18-ի համարում տպագրված «Բանվորները և ռազմաարդյունաբերական կոմիտեները» հոդվածում: Այդ հոդվածն արժանանում է խմբագրության բարձր գնահատականին:

Սակայն ընտրություններում բոլշևիկների հաղթանակը թանկ է նստում նրանց վրա: Մենշևիկյան լիդեր Կ. Ա. Գվոզդևի մատնությամբ ձերբակալում են Բաղդատյանին և մի քանի բանվորների:

Փետրվարյան հեղափոխությունը Բաղդատյանին գտնում է Իրկուտսկի նահանգի աքսորավայրում: Ստանալով Պետրոգրադի դեպքերի լուրը՝ նա ուրիշ աքսորականների հետ շտապում է այնտեղ: 1917 թ. մարտի 7-ին հասնում է Պետրոգրադ և անմիջապես ընտրվում բոլշևիկների քաղաքային առաջին լեգալ կոմիտեի անդամ, միաժամանակ մտնում գործադիր հանձնաժողովի՝ քարտուղարության, կազմի մեջ: Քաղաքային կոմիտեի 1917 թ. մարտի 10-ի նիստում ստեղծվում է զինվորական հանձնաժողով՝ բանակում աշխատանք տանելու, բանակային մասսային բոլշևիկների կողմը գրավելու և նրանից պրոլետարական ռազմական ուժ ստեղծելու համար: Կուսակցության զինվորական կազմակերպության մեջ ընդգրկվում են Ս. Հ. Բաղդատյանը, Ն. Ի. Պոդվոյսկին և Ս. Ն. Սուլիմովը:

1917 թ. ապրիլի 6-ին Բաղդատյանը ՌՍԴԲ(բ)Կ Պետրոգրադի կոմիտեի նիստում հանդես է գալիս զեկուցումներով երեք հիմնական հարցի շուրջ— կուսակցության շինարարության սկզբունքի, կարմիր գվարդիա ստեղծելու, ՌՍԴԲ(բ)Կ պետրոգրադյան համաքաղաքային (ապրիլյան) կոնֆերանս հրավիրելու, որի մասին հաղորդվեց «Պրավդա»-ի 1917 թ. ապրիլի 8 (21)-ի համարում:

Ս. Բաղդատյանը հիանալի հռետոր-հրապարակախոս էր: Նա իր ունկնդիրների մոտ արթնացնում էր գործուն վերաբերմունքի զգացում կյանքի, տեղի ունեցող իրադարձությունների նկատմամբ, նրանց մարտի կոչում՝ հանուն սոցիալիստական հեղափոխության:

Ինչպես հայտնի է, հուլիսի 5-ին հակահեղափոխությունն անցավ լայն հարձակման: Ավերվեցին «Պրավդա»-ի խմբագրությունը, «Տրուդ» տպարանը, Կենտկոմի, Պետրոգրադի կոմիտեի շենքերը և բոլշևիկյան կուսակցության այլ հիմնարկություններ: Բուրժուական կառավարությունն սկսեց բոլշևիկների հետապնդումները: Ձերբակալված բոլշևիկների թվում էր նաև Ս. Հ. Բաղդատյանը: Բուրժուական մամուլում հրապարակված նյութերում պահանջվում էր «Հետաքննել բոլշևիկների լիդեր Սերգեյ Բաղդատյանի գործողությունները, որը մեղադրվում է պահնորդության և գերմանական գործակալության հետ ունեցած կապերի համար» («Речь», 1917 թ. հուլիսի 6 և «Баку», 1917 թ. հուլիսի 27):

Դատական քննիչները ամեն կերպ ջանում էին «հիմնավորել» դավաճանության համար Բաղդատյանին հարուցված մեղադրանքը, բայց ոչ ոք չի կարողանում ապացուցել նրա «հանցագործությունը»:

Բաղդատյանը երկու ամիս նստում է բանտում և այնտեղից ազատվում սեպտեմբերի սկզբներին՝ բանվորների ու զինվորների հասարակայնության պահանջով և մեծ գրավականով: Նա նորից ընդգրկվում է ակտիվ պայքարի մեջ՝ սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար:

1917 թ. հոկտեմբերի 10-ին տեղի է ունենում բոլշևիկների կուսակցության Կենտկոմի պատմական նիստը, որտեղ Վ. Ի. Լենինը, զեկուցելով ընթացիկ մոմենտի մասին, ընդգծում է, որ երկրում ստեղծված իրադրությունը «հերթի է դնում զինված ապստամբության օրը»: Այդ ժամանակ, հոկտեմբերի 7—11-ը, տեղի է ունենում բոլշևիկների պետրոգրադյան համաքաղաքային կոնֆերանսը: Սարգիս Բաղդատյանը վճռական ձայնով պատգամավոր էր: Նա կոնֆերանսի ամբիոնից հանդես է գալիս լենինյան դիրքորոշման պաշտպանությանը նվիրված ճառով, ընդգծելով, որ անհրաժեշտ է լուրջ ուշադրություն նվիրել զինված ապստամբության տեխնիկական նախապատրաստությանը:

Ձմեռային պալատի գրոհի նախապատրաստման վճռական օրերին Կենտկոմի և Պետրոգրադի կոմիտեի անդամները, ինչպես նաև կուսակցական ակտիվը մեկնում են ձեռնարկությունները և զորանոցները, որպեսզի մասսային կոչեն զինված ապստամբության: Նրանց թվում էր նաև Սարգիս Բաղդատյանը: Նա ելույթ է ունենում Պետրոգրադի տարբեր շրջանների բանվորների ու զինվորների բազմահազարանոց միտինգներում և կոչ անում նրանց՝ պայքարել սոցիալիստական հեղափոխության համար: Նրա մի քանի ելույթների ու զեկուցումների առթիվ ընդունված բանաձևերի



մասին հաղորդվել են ՌՍԴԲ(բ)Կ կենտրոնական օրգան «Ռաբոչի պուտ» և «Պրավդա» թերթերում:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո Բաղդատյանը ներգրավվում է ակտիվ պրակտիկ գործունեության մեջ, օգնում երիտասարդ սովետական հանրապետության սոցիալիստական միջոցառումների իրականացմանը: Սովետական իշխանության առաջին տարիներին նա գտնվում էր Պետրոգրադի մերձակա Նովոդերեվենսկի շրջանում. ավելի քան մեկ տարի ժողդատավոր էր, իրավաբան-կոնսուլտանտ, ստեղծում է գրադարան, թանգարան և գաղափարական այլ հիմնարկություններ:

1919 թ. փետրվարից մինչև 1920 թ. մարտը Ս. Բաղդատյանը աշխատում է Մոսկվայում՝ գաղափարական ճակատի կարևոր տեղամասերից մեկում՝ ՌՈՍՏԱ-ում (Ռուսաստանի հեռագրական գործակալություն). հեռագրական բաժնի պատասխանատու խմբագիրն էր ու տնօրենը: Նա կոլեկտիվի ոգին էր, ՌՈՍՏԱ-ի կոմունիստ-աշխատակիցների ֆրակցիայի նախագահը: Նրա ղեկավարությամբ պոետներ Ա. Ա. Վերմիշևի, Վ. Վ. Մայակովսկու, նկարիչ-պրոպագանդիստ Մ. Մ. Չերյոմնիխի, ռադիստ Ա. Ֆ. Ծուրկինի և ստեղծագործական մյուս աշխատողների ակտիվ օգնությամբ ստեղծվում են ագիտ-պլակատներ («ՌՈՍՏԱ-ի պատուհան»), կազմակերպվում է ռադիոհաղորդման գործը:

1919 թ. ամռանը, ժուռնալիստների համառուսաստանյան համագումարում ընտրվում է ժուռնալիստների միության կենտրոնական գործադիր կոմիտե: Նրա կազմում, բացի Վ. Ի. Լենինից, ընդգրկվում են նաև Ս. Հ. Բաղդատյանը, Պ. Մ. Կերժենցևը, Վ. Վ. Օբոլենսկին (Ն. Օսինսկին), Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովը և կուսակցական ուրիշ նշանավոր գրականագետներ ու ժուռնալիստներ: ՌՈՍՏԱ-ի խմբագրի պարտականությունը Բաղդատյանը համատեղում էր հասարակական ակտիվ աշխատանքի հետ. դասախոսություն էր կարդում ժուռնալիստների դասընթացներում, դառնում Մոսկվայի մամուլի տան կազմակերպիչ-հիմնադիրը:

1920 թվականի մարտից, երբ կարմիր բանակը հաղթականորեն շարժվում էր հարավ, ազատագրելով Հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի ժողովուրդներին սպիտակգվարդիական, հակահեղափոխական բանակից և օտարերկրյա օկուպանտներից, Սարգիս Բաղդատյանը գնում է նրա հետքերով՝ գրպանում ունենալով ռուսաստանյան երկու կազմակերպությունների՝ ցենտրոպեչատի, ՌՈՍՏԱ-ի և «Պրոլետկուլտի» լիազորի մանդատը: Որպես Կովկասում Սովետական Ռուսաստանի պատվիրակ՝ նա ակտիվ պայքարում էր ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի զարգացման, բազմազգ երկրամասում լենինյան ազգային քաղաքականության իրականացման համար:

Դժվար է թվարկել բոլոր մեծ ու փոքր հարցերը, որոնք լուծել է Բաղդատյանը Կովկասում սովի ու քայքայման այն տարիներին: Նրա անվան հետ են կապված սոցիալիստական կուլտուրայի բազմաթիվ օջախների՝ հեռագրական գործակալությունների, հրատարակչությունների, թերթերի, ամսագրերի, կինոյի, գրադարանների և կուլտուր-լուսավորական այլ հիմնարկությունների լայն ցանցի ծնունդը Կուբանի, Հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի շատ քաղաքներում: Նրա անմիջական ղեկավարությամբ բացվում են առաջին բանվորական թատրոնները, ժուռնալիստների դասընթացները, ձևավորվում են ագիտգնացքները, կազմվում է կովկասյան շատ ժողովուրդների գիրը, իրագործվում հին թուրքական այբուբենի ռեֆորմը: Եվ այդ ամենը, ինչպես 1920 թ. գրում է Բաղդատյանը Սերգո Օրջոնիկիձեին, նախատեսված էին «Արևելքի ժողովուրդների մեջ պրոպագանդա տանելու համար»[1]:

Բաղդատյանը բեղմնավոր գործունեություն է ծավալում նաև Հայաստանում: Նա այստեղ է գալիս 1920 թ. դեկտեմբերի սկզբներին, որպես ՌՈՍՏԱ-ի և ցենտրոպեչատի լիազոր: Նա Երևանում և հանրապետության ուրիշ քաղաքներում ստեղծում է ՌՈՍՏԱ-ի բաժանմունքներ, կարգավորում մամուլի տպագրության և տարածման գործը: Հայաստանի Հեղկոմի որոշմամբ Բաղդատյանը նշանակվում է մամուլի և ագիտացիայի կոմիսար, կոոպտացիայի ենթարկվում Հայկոմկուսի Կենտկոմի կազմում: Նա միաժամանակ նշանակվում է Հայկական ՍՍՀ արդարադատության ժողկոմ:

Ս. Բաղդատյանը կազմում է Սովետական Հայաստանի մի շարք դեկրետների նախագծեր, որոնք հետո ընդունվում են Հայհեղկոմի կողմից և հրատարակվում հեղկոմի նախագահ Ս. Կասյանի և արդարադատության ժողկոմ Ս. Բաղդատյանի ստորագրությամբ:

1921 թ. փետրվարին, երբ Վրաստանի վրա ծածանվում է սովետների կարմիր դրոշը, Բաղդատյանը առաջիններից մեկն է մտնում ազատագրված Թիֆլիս: Նա նշանակվում է Վրաստանի հեռագրական գործակալության, մամուլի կենտրոնի ղեկավար, լուսավորության մինիստրության կոլեգիայի անդամ, ստեղծում է հեռագրական գործակալություններ, կազմա-

[1] ЦПА, ИМЛ при ЦК КПСС, ф. 85, оп. 13, д. 230, л. 12.

կերպում ինֆորմացիոն նյութեր կենտրոնական ու տեղական մամուլի համար, նպաստում հրատարակչական գործի զարգացմանը: Բաղդատյանի կազմակերպած «ծավալուն» նյութերից մեկը 1921 թ. մարտի 9-ին Սերգո Օրջոնիկիձեի հետ ունեցած զրույցն է Վրաստանի և ողջ Կովկասի դրության մասին: Այն պատմության մեջ մտել է «Զրույց Գրուզկավ ՌՈՍՏԱ-ի աշխատակցի հետ» վերնագրով:

Սարգիս Բաղդատյանի կյանքի նոր էջ է ընկրվում 1921 թ. սեպտեմբերից, երբ Աշխատանքի և պաշտպանության խորհուրդը (ԱՊԽ), Վ. Ի. Լենինի նախագահությամբ, նրան Մուղանի տափաստանի ոռոգման ու մելիորացիայի ԱՊԽ-ի լիազոր է նշանակում: Բաղդատյանը Լենինի ստորագրած մանդատով գնում է այդ սովյալ տափաստանը: Որպես Մուղանի մելիորացիոն շինարարության, իսկ 1923—1926 թթ. միաժամանակ Անդրկովկասի ջրային տնտեսության պետ՝ Բաղդատյանը շատ ուժ ու եռանդ է ներդնում՝ իրականացնելու Լենինի պատգամները, որոնք շարադրված են 1921 թ. ապրիլի 14-ին «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին» ուղղված առաջնորդի նշանավոր նամակում:

Մեծ է Ս. Բաղդատյանի ծառայությունը գյուղատնտեսության մեքենայացման ասպարեզում: Նրա զեկուցման հիման վրա Վ. Ի. Լենինը 1922 թ. հոկտեմբերին հանձնարարում է առանձնացնել հսկայական միջոցներ՝ մելիորացիոն աշխատանքի համար, հատուկ հանձնաժողով է ուղարկում արտասահման՝ տրակտորներ գնելու: Բաղդատյանի նախաձեռնությամբ Մուղանում ստեղծվում է երկրի առաջին տրակտորային բազան, յուրացվում է բամբակի առաջին խոպանը:

Վեց տարի (1921—1926 թթ.) Ս. Հ. Բաղդատյանը գլխավորում է Անդրկովկասի ջրային տնտեսությունը՝ իր ամբողջ ուժերը, փորձն ու գիտելիքները նվիրաբերելով երկրամասի տընտեսական վերածննդին:

Անդրկովկասում ծավալած գործունեության ընթացքում Բաղդատյանը բազմիցս ընտրվել է կուսակցական ու սովետական մարմիններում. եղել է ՀամԿ(բ)Կ Անդրերկրկոմի, Անդրֆեդերացիայի Կենտգործկոմի և նրա նախագահության, Հայկոմկուսի Կենտկոմի, Բաքվի սովետի անդամ, ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամության թեկնածու, Ադրբեջանի կոմկուսի V, Անդրկովկասի կոմունիստական կազմակերպության II, III և IV համագումարների պատգամավոր: Նա ակտիվ մասնակցել է երկրամասային և հանրապետական կոնֆերանսներին ու խորհրդակցություններին, որտեղ ելույթ է ունեցել Անդրկովկասի հանրապետությունների կուլտուրական և տնտեսական շինարարության հարցերի շուրջ: Կրթությամբ իրավաբան, մասնագիտությամբ տնտեսագետ-շինարար Ս. Բաղդատյանը հանդես է եկել որպես գիտնական՝ պատմության, փիլիսոփայության, մանկավարժության և գիտության այլ բնագավառներում:

1927 թ. մինչև իր կյանքի վերջը, 22 տարվա ընթացքում, Բաղդատյանն ապրել ու աշխատել է Մոսկվայում և Ռուսաստանյան Ֆեդերացիայի մի շարք մարզերում: Նա եղել է ՍՍՀՄ ժողկոմսովետի իռիգացիոն կոմիտեի նախագահի տեղակալ, «Ռուսնորվեգլես» ընկերության նախագահ, Հյուսիսային երկրամասի ցելյուլոզիթղթի ձեռնարկության, Վոսկրեսենսկի քիմկոմբինատի և այլ կարևոր շինարարությունների պետ: Բայց գլխավորը նրա գործունեության մեջ անդուլ աշխատանքն է ՍՍՀՄ պետպլանի ապարատում, 30-ական թվականներին: ՍՍՀՄ պետպլանի ղեկավար գործիչ, նրա նախագահության (կոլեգիայի) անդամ, այն ժամանակվա պետպլանի նախագահ Վ. Վ. Կույբիշևի հետ համախոհ աշխատող Ս. Բաղդատյանը համարվում էր արդեն որպես սովետական տաղանդավոր տնտեսագետ, ժողովրդական տընտեսության պլանավորման լավագույն մասնագետ: Նա ակտիվ մասնակցել է առաջին հնգամյակի պլանը կազմելուն:

Ս. Բաղդատյանը կյանքից հեռացավ 1949 թ. հունվարի 25-ին, 62 տարեկան հասակում, իր ուժերի և տաղանդի լրիվ ծաղկուն շրջանում: Բայց այն, ինչ կարողացավ անել կոմկուսակցության մեջ իր գտնվելու կեսդարյա ժամանակամիջոցում, անջնջելի հետք է թողել նրա պատմության մեջ: Ինքը՝ Սարգիս Բաղդատյանը, 1925 թ. գրել է, որ հեղափոխականի ինքնակենսագրությունն ունի կարևոր իմաստ, եթե այն գրվում է ո՛չ թե կազմակերպության ձևական նպատակի, այլ նրա համար, որպեսզի նազարավոր այդպիսի ինքնակենսագրություններում հեղափոխության հիանալի պատմությունը դառնա մեզ փոխարինելու եկող նոր սերնդի սեփականությունը:

Հենց այդպիսին է պրոֆեսիոնալ հեղափոխական, բոլշևիկյան պրոպագանդիստ, սոցիալիստական էկոնոմիկայի տաղանդավոր կազմակերպիչ Սարգիս Հայկի Բաղդատյանի կենսագրությունը: Նրա ողջ կյանքն ու գործունեությունը մեր երիտասարդության համար լենինյան կուսակցությանը, սոցիալիստական հայրենիքին անբասիր ու անմնացորդ ծառայելու վառ օրինակ են:

Ս. Ա. ՍԱՐԳԻՍՈՎ,
Պատմական գիտությունների թեկնածու
Բաքու

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ՊԱՏՄԱԿԱՆ ՄԱՏԵՐԱԼԻԶՄԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՀՈԳԵԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Ամեն մի գիտության բովանդակության մեջ կարելի է առանձնացնել երկու, հարաբերականորեն ինքնուրույն պրոցեսներ: Դրանցից առաջինն ուսումնասիրվող օբյեկտի վերաբերյալ կոնկրետ գիտելիքների անընդհատ բազմապատկման, իսկ մյուսը՝ սեփական տեսական հիմքերի, մեթոդոլոգիական սկզբունքների մշակման, ուսումնասիրության մեթոդների և միջոցների կատարելագործման պրոցեսն է:*

*Փիլիսոփայության և կոնկրետ գիտությունների, մասնավորապես, պատմական մատերիալիզմի և հասարակագիտության, փոխազդեցությունը հատկապես ի հայտ է գալիս վերոհիշյալ պրոցեսներից երկրորդի հիմքի վրա: Պատմական մատերիալիզմը կոչված է օժանդակելու հասարակագիտությանը՝ մշակելու իր տեսական ու մեթոդոլոգիական սկզբունքները, ընտրելու ուսումնասիրության առավել համարժեք մեթոդներ, գիտականորեն ընդհանրացնելու փորձառական տվյալները և այլն: Հենց այստեղ էլ դրսևորվում է նրա մեթոդոլոգիական և ճանաչողական ֆունկցիան: Ընդսմին այդ ֆունկցիան հասարակական տարբեր գիտությունների մեջ, նրանց զարգացման տարբեր փուլերում գործնականորեն ի հայտ է գալիս յուրահատուկ ձևերով՝ կապված պատմության մատերիալիստական ըմբռնման հիմնական հարցի՝ հասարակական կեցության և հասարակական գիտակցության փոխհարաբերության կոնկրետ դրսևորումների հետ: Տվյալ դեպքում հոգեբանական գիտությունների մեջ այն դրսևորվում է սոցիալականի և հոգեբանականի հարաբերակցության ձևով՝ կազմելով նրանց տեսական ու մեթոդոլոգիական հիմքը: Ասվածից դժվար չէ եզրակացնել, որ անհրաժեշտ են հատուկ ուսումնասիրություններ՝ նվիրված պատմական մատերիալիզմի ճանաչողական նշանակության բացահայտմանը հասարակական կոնկրետ գիտությունների առանցքային հարցերի մշակման գործում:*

*Պետք է նշել, որ մինչև այժմ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի, որպես փիլիսոփայական տեսության և մեթոդոլոգիայի, պրոբլեմը մշակվել է ոչ հավասարաչափ: Եթե դիալեկտիկական մատերիալիզմի ճանա-*

*չողական, մեթոդոլոգիական նշանակությանը, բնագիտության փիլիսոփայական պրոբլեմների մշակմանը նվիրվել են բազմաթիվ մենագրական ու կոլեկտիվ ուսումնասիրություններ, գիտաժողովներ, ապա նույնն ասել պատմական մատերիալիզմի վերաբերյալ՝ չենք կարող: Մեզանում ինչ-որ չափով ի հայտ է եկել պատմական մատերիալիզմի գոյաբանականացման տենդենց, որը բացասաբար է անդրադարձել նրա, որպես տեսության և մեթոդոլոգիայի, պրոբլեմի արդյունավետ մշակման վրա: Մինչդեռ հասարակագիտության արագ զարգացման, դրա նկատմամբ գործնական պահանջկոտության բարձրացման արդի պայմաններում պատմական մատերիալիզմի մեթոդոլոգիական, ճանաչողական նշանակությունը ավելի է մեծանում: Սույն հոդվածը համեստ մի փորձ է սոցիալական հոգեբանության առանցքային հարցերի մշակման ոլորտում բացահայտելու պատմական մատերիալիզմի տեսական ու մեթոդոլոգիական նշանակությունը:*

## 2

*Սոցիալական հոգեբանության տեսական լիարժեքությունն ու գործնական արդյունավետությունն անմիջականորեն կախված են սոցիալականի և հոգեբանականի հարաբերակցության ըմբռնման հնարավոր տարբերակներից: Դրա լավագույն ապացույցը հենց սոցիալական հոգեբանության պատմությունն է, որի հաջողություններն ու դժվարությունները, վերջին հաշվով, բացատրվում են սոցիալականի և հոգեբանականի այս կամ այն ըմբռնմամբ:*

*Հատուկ գրականության մեջ բանավիճում են սոցիալական հոգեբանության առանցքային հարցերի շուրջ, որոնց գիտական լուծումը, մեր կարծիքով, հնարավոր է միայն վերոհիշյալ պրոբլեմի դիալեկտիկա-մատերիալիստական մեկնաբանման հիման վրա: Դրանցից են՝ սոցիալական հոգեբանության առարկայի սահմանման, սոցիալ-հոգեբանական հետազոտությունների մեթոդների ընտրության և տեսական իմաստավորման, արդի բուրժուական սոցիոլոգիայի և սոցիալական հոգեբանության նկատմամբ մարքսիստական դիրքորոշման հարցերը և այլն:*

*Վերոհիշյալ պրոբլեմները մշակելիս սոցիալականի և հոգեբանականի հարաբերակցության հարցին անհրաժեշտ ուշադրության բացակայությունն արդեն հանգեցրել է մեթոդոլոգիական բնույթի որոշ սխալների ու թերացումների: Ի թիվս դրանց կարելի է հիշատակել բուրժուական սոցիալական հոգեբանության մշակած սկզբունքների ու մեթոդների ոչ քննադատական ընդօրինակումը, լոկալ, մասնավոր տվյալների բացարձականացման միտումը և այլն (տե՛ս* П. Н. Федосеев, XXIV съезд КПСС и основные направления исследований в области общественных наук, М., 1971, стр. 50)*: Սոցիալ-հոգեբանական տեսության մշակման և կոնկրետ հետազոտությունների իրականացման պրոցեսում նման թերություններից խուսափելու անհրաժեշտ նախապայմաններից մեկը պատմական մատերիալիզմի և ընդհանուր-հոգեբանական տեսության մեթոդոլոգիական նվաճումների մշտական նկատառումն է: Այդ նվաճումներից սոցիալական հոգեբանության համար հատկապես վճռական նշանակություն ունի սոցիալականի և հոգեբանականի միասնության սկզբունքը, որին գիտության պատմության մեջ նախորդել են նրանց հարաբերակցության ավանդական իդեալիստական և գռեհիկ մատերիալիստական ըմբռնումները:*



*Սոցիալականի և հոգեբանականի հարաբերակցության իդեալիստական ըմբռնումն իր տիպական արտահայտությունն է գտել Գ. Լեբոնի, Գ. Տարդի, Զ. Ֆրոյդի, Մակ-Դաուգոլի հայացքներում և դրսևորվել է սոցիալական երևույթների հոգեբանականացման, պատմական պրոցեսում հոգեբանական գործոնների բացարձականացման տենդենցով: Պատմական պրոցեսի հոգեբանականացման սկզբունքի ընդհանուր էությունն այն է, որ միակողմանիորեն գերագնահատվում է հոգեկանի կարգավորիչ ֆունկցիան, որով իբր թե պայմանավորված է ո՛չ միայն անհատի, այլև ողջ հասարակության կենսագործունեությունը: Դժվար չէ նկատել, որ նման հայեցակետի տեսանկյունից հոգեկանի չափանիշը բովանդակում է միայն սուբյեկտի, նրա կյանքի ու գործունեության ներքին և յուրահատուկ պայմանների մեջ, որոնք բացարձակորեն անխզելի են նրանից: Հոգեբանականի մեջ արտաքինի և ներքինի, օբյեկտիվի և սուբյեկտիվի հարաբերակցության ոչ գիտական ըմբռնումը արտահայտվել է նրանում, որ ամեն մի ներքին հոգևոր գործունեություն դիտվել է ոչ թե որպես «մարդկային կյանքի իրականացման պատմականորեն ծագած ձևերից մեկը, այլ որպես թե հատուկ ակտիվություն, որպես հատուկ տեսակի պրոցեսներ, որոնք սկզբունքորեն հակադիր են արտաքին պրակտիկ գործունեության պրոցեսներին և լիովին անկախ են դրանից (Ա. Ն. Լեոնտև,* Հոգեկանի զարգացման պրոբլեմները, *Երևան, 1969, էջ 283): Նման իրավիճակը մեթոդոլոգիապես ներգործել է գիտական հոգեբանության վրա, որի զարգացումը երկար ժամանակ ընթացել է բացառապես ներքին հոգեկան գործունեության հետազոտության ուղիով:*

*Հենց այդ պատճառով էլ ներքին հոգեկան գործունեությունը դիտվել է միակողմանիորեն, արտաքին առարկայական գործունեությունից անկախ: Այս հանգամանքը հանդիսացել է հոգեկանի սոցիալական պայմանավորվածության ըմբռնման մեթոդոլոգիական ամենալուրջ արգելքը՝ հոգեբանության առարկայի և նրա մեթոդների գիտական սահմանման առնչությամբ:*

*Սոցիալականի և հոգեբանականի հարաբերակցության հարցում սկզբունքորեն այլ տեսակետ է պաշտպանում հոգեբանության մեջ սոցիոլոգիական ուղղությունը: Ի տարբերություն անհատական-հոգեբանական ուղղության՝ սոցիոլոգիական ուղղության ներկայացուցիչները գտնում էին, որ անհատը, նրա հոգեբանությունն արտաքինի, հասարակության արդյունքն են: Այս ուղղության հիմնական գաղափարները տրված են ֆրանսիական սոցիոլոգներ՝ է. Դյուրկհեյմի, Լևի-Բրյուլի, հոգեբաններ՝ Տ. Ռիբոյի, Ժ. Պիաժեի և ուրիշների աշխատություններում: Անհրաժեշտ է ընդգծել, որ նշված հեղինակների մոտ սոցիալականի, հասարակության վերաբերյալ պատկերացումներն իրենց բնույթով իդեալիստական էին, որի պատճառով հոգեկանի սոցիալական պայմանավորվածության պրոցեսը ներկայացվում էր որպես շրջապատի, մարդկանց հետ մարդու հոգեկան, խոսքային հաղորդակցման արդյունք, նրանց կողմից հասարակական կոլեկտիվ պատկերացումների յուրացման արդյունք:*

*Առհասարակ հոգեկանի սոցիալական պայմանավորվածության սկզբունքը տակավին գիտական չէ: Հարցի էությունն այն է, թե ինչպե՞ս է ըմբռնվում սոցիալականի և հոգեկանի բնույթի ու էության հարցը և թե ինչպիսի՞ն է դրանց հարաբերակցության բովանդակությունը: Կարելի է խոսել քննարկվող պրոբլեմի առնվազն երեք ըմբռնումների մասին: Դրանցից առաջինը իդեալիստական սոցիոլոգիզմի տենդենցն է հոգեկանի և սոցիալականի հարաբե-*

րակցության մեկնաբանման հարցում։ Դա առկա է բոլոր հեղինակների մոտ, որոնք ելնում են հասարակության իդեալիստական ըմբռնումից, բայց միաժամանակ ընդգծում են հոգեկանի սոցիալական, հասարակական պայմանավորվածությունը։ Այդ տենդենցը հատկապես ցայտուն արտահայտված է Դյուրկհեյմի մոտ, իսկ ժամանակակից սոցիոլոգիական գրականության մեջ դրսևորված է Տ. Պարսոնսի, Կ. Լևինի և ուրիշների հայեցակետերում։

Հոգեկանի սոցիալական պայմանավորվածության երկրորդ հնարավոր ըմբռնումը քննարկվող հարցում գռեհիկ սոցիոլոգիզմի և «տնտեսական մատերիալիզմի» դրսևորումն է։ Մեթոդոլոգիական տեսանկյունից այն արժեքավորվում է որպես պրոբլեմի մեխանիստական, մետաֆիզիկական ըմբռնում, որը ներհատուկ էր նախամարքսյան ողջ մատերիալիզմին։ Ըստ այս կոնցեպցիայի հոգեկանը, սուբյեկտիվը սոցիալականի, օբյեկտիվի հայելակերպ, պասիվ արտացոլումն է կամ օբյեկտի ուղիղ պրոեկցիան է սուբյեկտի մեջ։ Հոգեկանի և սոցիալականի հարաբերակցության նմանօրինակ ըմբռնումն անընդունելի է մի շարք հանգամանքներով։ Նախ՝ նրանում անտեսվում են արտացոլման պրոցեսում միջնորդավորվող օղակի՝ սուբյեկտի հոգեկան աշխարհի դերն ու նշանակությունը, որի մեջ հեղաբեկվում են արտաքին բոլոր ազդեցությունները։ Բացի այդ, անուշադրության են մատնվում հոգեկանի հարաբերական ինքնուրույնության, նրա հակազդեցության և ակտիվության մոմենտները սոցիալականի վրա։

Սոցիալականի և հոգեբանականի հարաբերակցության պրոբլեմին մարքսիստական սոցիոլոգիան մոտենում է տեսական ու մեթոդոլոգիական սկզբունքորեն այլ ելակետից։ Ամբողջ նախամարքսյան մատերիալիզմի հիմնական թերությունը, Մարքսի խոսքերով, այն էր, որ «առարկան, իրականությունը, զգայականությունը վերցվում է միայն օբյեկտի ձևով կամ ճայեցողականության ձևով և ոչ որպես մարդկային զգայական գործունեություն, պրակտիկա, ոչ սուբյեկտիվորեն» (Ֆ. Էնգելս, Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը, Երևան, 1961, էջ 106)։ Եթե նախամարքսյան մատերիալիզմի համար մարդը միայն իմացության սուբյեկտ էր, ապա Մարքսի մոտ հանդես է գալիս միաժամանակ որպես գործունեության սուբյեկտ։ Ավելին, նա ճանաչողության սուբյեկտ է այնքանով, որքանով գործում, վերափոխում է իրականությունը։ Վերջինիս ճանաչումը և վերափոխումը ոչ թե առանձին պրոցեսներ են, այլ միևնույն պրոցեսի երկու, օրգանապես միահյուսված կողմերը։ Մատերիալիստական մտքի պատմության մեջ առաջին անգամ ընդգծվեց այն միտքը, որ գիտակցությունը՝ հոգեկանը, մարդու և բնության միջնորդավորված փոխազդեցության արդյունքն է։ Ընդ որին միջնորդավորող օղակի դերում հանդես են գալիս հասարակական-պատմական պրակտիկան, արտադրության պրոցեսը։ Այս դեպքում արդեն հոգեկանի բնագավառը պատկերվում է ոչ թե իբրև գիտակցության ֆենոմենների ամբողջություն, այլ որպես մարդկային էականացված ուժերի ամբողջություն, ուժեր, որոնք զարգանում և մարմնավորվում են առարկայական գործունեության մեջ։

Ֆոյերբախի վերաբերյալ թեզիսների ողջ պաթոսն այն մտքի ընդգծումն է, որ պրակտիկան իր մեջ է առնում նաև հոգևոր, սուբյեկտիվ մոմենտը։ Մարքսի այս դրույթը, որն ուղղված է սուբյեկտիվի և օբյեկտիվի դուալիստական ըմբռնման դեմ, տեսական կարևոր նշանակություն ունեցավ հատկապես հոգեբանական գիտության համար։ Նրանում ընդգծվում է այն կարևոր միտքը, որ



սուբյեկտիվն առնչվում է ոչ թե ինքն իրեն, մարդու ներքնաշխարհին, ինչպես ընդունված էր իդեալիստական հոգեբանության մեջ, այլ արտաքին իրականությանը։ Այլ կերպ ասած, սուբյեկտիվը՝ հոգեկանը, ոչ թե սուբյեկտի ներքին հատկությունների արտացոլումն է, այլ նրանից դուրս օբյեկտիվորեն առկա իրերի ու երևույթների արտացոլումը։ Ընդ որին աշխարհը ներկայանում է մարդուն ոչ թե իբրև այնկողմանի ու անփոփոխ մի բան, այլ որպես նրա գործունեությամբ միջնորդավորված, յուրացված ու վերափոխված այսկողմանի աշխարհ։ Նշանակում է՝ պրակտիկայի օբյեկտիվությունը վերջին հաշվով իրացվում է մարդկային գործունեության սուբյեկտիվության միջոցով։ Մարդը, որպես պրակտիկ գործունեության սուբյեկտ, օբյեկտիվ աշխարհը յուրացնում ու վերափոխում է իր նպատակներին ու կամքին համապատասխան։

Ասվածից երևում է, որ հոգեկան երևույթների բնույթն ու էությունը բացահայտելու համար չի կարելի ելնել ոչ սուբյեկտի առանձնահատկություններից և ոչ էլ սուբյեկտից անջատ դիտարկվող իրականությունից։ Առաջին դեպքում կմնանք սուբյեկտիվի, հոգեկանի սուբյեկտիվիստական, իսկ երկրորդ դեպքում՝ գռեհիկ մատերիալիստական ըմբռնման տեսակետի վրա։ Երկու դեպքում էլ խախտված կլինի սուբյեկտիվի և օբյեկտիվի միասնության սկզբունքը։ Հոգեբանական գիտության մեջ այդ սկզբունքի իրացման միակ հնարավոր եղանակն այն պրոցեսի վերլուծությունն է, որն իրապես ապահովում է օբյեկտի և սուբյեկտի միասնությունը։ Իսկ դա ոչ այլ ինչ է, քան կյանքի պրոցեսը, պրակտիկան, սուբյեկտի գործունեությունը։

## 3

Սոցիալականի և հոգեբանականի առնչության դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնումը մեթոդոլոգիական կարևոր նշանակություն ունի սոցիալական հոգեբանության առարկայի ստույգ սահմանման համար։ Ըստ երևույթին սոցիալական հոգեբանության առարկայի գիտական սահմանումը միայն փորձառական տվյալների կամ անցյալի սոցիալ-հոգեբանական մտքի ընդհանրացման հիման վրա՝ բավարար չէ։ Այստեղ անպայման պետք է ելնել նաև հոգեկանի, սուբյեկտիվի վերաբերյալ մարքսիստական փիլիսոփայության, ինչպես նաև ընդհանուր-հոգեբանական տեսության առանցքային դրույթներից։ Հատուկ գրականության մեջ սոցիալական հոգեբանության առարկայի սահմանման հնարավոր տարբերակներում, մեր կարծիքով, շրջանցված է վերոհիշյալ սկզբունքը։

Սոցիալական հոգեբանության ողջ պատմությունը վկայում է փիլիսոփայական հայեցակետերի և սոցիալական հոգեբանության առարկայի սահմանման միջև գոյություն ունեցող անմիջական կապի մասին։ Այսպես, սոցիալական հոգեբանության մեջ անհատական հոգեբանական ուղղության երևան գալը մասամբ պայմանավորված էր մարդու էության, անհատի և հասարակության, անհատի և ժողովրդական զանգվածների փոխհարաբերության իդեալիստական ըմբռնմամբ։ Փիլիսոփայական վերոհիշյալ հայեցակետի շրջանակներում սոցիալական հոգեբանությունը, իբրև ուսումնասիրության օբյեկտ, կարող էր ընտրել միայն սոցիալական հարաբերություններից դուրս գործող անհատը։ Բնական է, որ գիտության օբյեկտի նման ընտրությունն անխուսափելիորեն հարուցել է կոնկրետ հետազոտությունների սահմանափակությունն ու ցածր արդյունավետությունը։ Մյուս կողմից՝ գիտության առարկայի միակողմանի

սահմանումը, իր հերթին, նպաստել է կոնկրետ հետազոտությունների և տեսության զարգացման ոչ գիտական ընթացքին, որը տվյալ դեպքում, մասնավորապես, դրսևորվել է ողջ հասարակության հոգեբանությունն անհատի հոգեբանությանը հանգեցնելու սկզբունքում:

Սոցիոլոգիական և հոգեբանական գրականության մեջ հայտնի են սոցիալական հոգեբանության առարկայի սահմանման մի շարք տարբերակներ, որոնց միջև եղած ոչ էական տարբերություններից վերանալու դեպքում կարելի է հանգել այն հետևության, որ սոցիալական հոգեբանությունը գիտություն է սոցիալական զգացմունքների, տրամադրությունների, հմտությունների, կամքի ուղղվածության, սովորույթների, ազգային և ազգամիջյան հույզերի ամբողջության մասին, որն ի հայտ է գալիս մարդկանց տվյալ հանրության մոտ՝ կյանքի սոցիալ-տնտեսական ընդհանրությամբ: Սակայն սոցիալական հոգեբանության առարկայի վերոհիշյալ սահմանումն ընդունելի չէ, որովհետև նրա հիմքում ընկած է ո՛չ թե սոցիալ-հոգեբանականի ամբողջական բնութագրությունը, այլ միայն նրա իմացաբանական ու հուզական բնութագրությունները: Հոգեկանի նման բնութագրությամբ այն ներկայանում է իբրև առանձին երևույթների ու ֆունկցիաների ամբողջություն, որի մեջ դժվար է գտնել դրանց կապակցող, ամբողջացնող հիմքը:

Սոցիալական հոգեբանության առարկան չեն կարող լինել ոչ մասսայակերպ հոգեկան երևույթները և ոչ էլ դրանց ծագման ու գործառնության պայմանները՝ ինքնին վերցրած: Անհրաժեշտ է այնպիսի մոտեցում, որը ներառնի վերոհիշյալ երկու կողմերը: Իսկ նման մոտեցումը կարող է լինել միայն սոցիալ-հոգեբանականի, իբրև անհատի և մարդկային հանրությունների գործունեության հատուկ ձևի, դիտարկումը: Այլ կերպ ասած, սոցիալ-հոգեբանական երևույթների նկատմամբ պետք է կիրառվի այն նույն մոտեցումը, ինչ բնորոշ է առհասարակ հոգեկանի սահմանմանը: Դրանով իսկ հավասարության նշան չի դրվում անհատական և հասարակական հոգեբանության միջև, այլ պարզապես ընդգծվում է դրանց բնույթի և ֆունկցիաների ընդհանրությունը: Սոցիալ-հոգեբանականը անհատական-հոգեբանականի պես օժտված է արտացոլման, արժեքավորման և գործունեության կարգավորման հատկություններով: Վերջիններիս միասնությունն էլ կազմում է հոգեկան գործունեության էությունը, որն օրգանական կապի մեջ է մարդու նյութական և գործունեության մյուս ձևերի հետ: Ելնելով վերոհիշյալ տեսական ու մեթոդոլոգիական սկզբունքներից՝ կարելի է սոցիալական հոգեբանության առարկան սահմանել այսպես.

Սոցիալական հոգեբանությունն ուսումնասիրում է անհատի և մարդկային հանրությունների սոցիալ-հոգեբանական գործունեության ներքին մեխանիզմներն ու օրինաչափությունները, դրանց ներգործությամբ ձևավորվող և գործառնվող մասսայակերպ սոցիալ-հոգեբանական երևույթներն ու գոյացումները, որոնք հասարակական իրականության արտացոլման, իմաստավորման և մարդկային վարվեցողության կարգավորման յուրահատուկ միջոցներ են:

Սոցիալականի և հոգեբանականի առնչության դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնումը կարևոր նշանակություն ունի ո՛չ միայն սոցիալական հոգեբանության առարկայի, այլև նրա ուսումնասիրության մեթոդների գիտական լուսաբանման համար:

Ամեն մի գիտության զարգացման և գործնական կիրառության հաջողությունը մեծ չափով պայմանավորված է ո՛չ միայն նրա տեսական զինանոցի



հարստությամբ, այլև հետազոտության մեթոդների ու եղանակների ողջ համակարգի մշակվածությամբ:

Սոցիալ-հոգեբանական մտքի պատմությունը վկայում է, որ սոցիալ-հոգեբանական տեսության զարգացման հետ միասին, ուսումնասիրության մեթոդները ևս կատարելագործվել, հարստացել են նոր միջոցներով, եղանակներով ու տեխնիկական հնարավորություններով: Սոցիալական հոգեբանության մեթոդների համակարգը շարունակվում է կատարելագործվել նաև այժմ: Արդյունավետ մշակվում են դիտարկման և հարցումների, փորձնական, նախնական ինֆորմացիայի ստացման և մշակման մեթոդները:

Սովետական հեղինակների բացարձակ մեծամասնությունն այն կարծիքին է, որ բուրժուական սոցիալական հոգեբանության մեջ մնայունը, կենսունակը, մեզ համար ընդունելին հետազոտության մեթոդների հարցն է: Այս տեսակետը հանգեցրել է այնպիսի մի իրավիճակի, երբ մարքսիստական սոցիալական հոգեբանության մեջ անքննադատաբար, լայնորեն օգտագործվում են ուսումնասիրության այն բոլոր մեթոդները, որոնք ավանդական ձևով մշակվել են բուրժուական սոցիոլոգիայի և սոցիալական հոգեբանության մեջ: Տվյալ դեպքում մենք սկզբունքորեն առարկում ենք ոչ թե վերոհիշյալ մեթոդների կիրառման դեմ առհասարակ, այլ այն, երբ անտեսում են այն կարևոր հանգամանքը, որ տեսական-մեթոդոլոգիական սկզբունքներն իրենց յուրահատուկ դրսևորումն են գտնում նաև ուսումնասիրության մեթոդների ու միջոցների մեջ: Եթե բուրժուական սոցիալական հոգեբանությունը մեզ համար ընդունելի չէ տեսական և մեթոդոլոգիական նկատառումներով, ապա չեն կարող անվերապահորեն ընդունելի լինել նաև նրա ուսումնասիրության մեթոդները: Մինչդեռ մեզանում մի տեսակ նորաձևություն է դարձել բուրժուական սոցիալական հոգեբանության տեսական և մեթոդոլոգիական հիմքերի քննադատությունը, բայց լոյալ, բացարձակորեն պոզիտիվ վերաբերմունքը նրա մեթոդների նկատմամբ:

Նման իրավիճակը մերժելի է, քանի որ հետազոտության մեթոդների համակարգը կարևոր տեղ է գրավում սոցիալական հոգեբանության մեթոդոլոգիայի և տեսական կառուցվածքի մեջ: Հոգեկանի սոցիալական պայմանավորվածության, հոգեկանի և գործունեության միասնության սկզբունքները ոչ միայն սոցիալական հոգեբանության մեթոդոլոգիայի ու տեսության, այլ նրա մեթոդի նկատմամբ կոնկրետ գիտական մոտեցման կարևորագույն հարցերն են (տե՛ս, Ա. Ն. Լեոնտև, Հոգեկանի զարգացման պրոբլեմները, էջ 285): Մենք չենք կարող և չպետք է անքննադատ վերաբերվենք, առանց շտկման ու կատարելագործման օգտագործենք բուրժուական սոցիալական հոգեբանության մեթոդներն ու միջոցները, թեկուզ և այն պատճառով, որ դրանցում շրջանցվում է հոգեկանի սոցիալական պայմանավորվածության սկզբունքը:

Ա. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՄԱՄՈՒԼԸ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐ

## ՌԱԶՄԱՃԱԿԱՏԱՅԻՆ ՀԱՅԵՐԵՆ ԹԵՐԹԵՐԸ ՄԱՐՏԱԿԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

Հայերեն առաջին ռազմաճակատային թերթերն ստեղծվեցին 1942 թվականի սկզբներին, այն լարված օրերին, երբ Կովկասյան ռազմաճակատի զորքերը պաշտպանական համառ մարտեր էին մղում մեր երկիրը ներխուժած թշնամու դեմ և սևծովյան նավատորմի աջակցությամբ դեսանտ իջեցնելով Կերչի թերակղզում, գրավելով Կերչ քաղաքն ու ամրոցը, գործողություններ էին ծավալում հանուն Ղրիմի ազատագրման: Ահա այդ թերթերը. Ղրիմի ռազմաճակատի «Боевой натиск» թերթի հայերեն հրատարակությունը՝ «Մարտական գրոհը», Հայկական 89-րդ հրաձգային դիվիզիայի «Կարմիր զինվոր», Հայկական 409-րդ հրաձգային դիվիզիայի «Մարտական դրոշ», Հայկական 390-րդ հրաձգային դիվիզիայի «Հայկական սնայպեր», Հայկական 408-րդ հրաձգային դիվիզիայի «Հանուն հայրենիքի», Հայկական 261-րդ հրաձգային դիվիզիայի «Մարտ հանուն հայրենիքի»: Հետագայում լույս տեսան ճակատային ռուսերեն թերթերի հայերեն կցորդները, ինչպես և հայերեն այլ թերթեր՝ զորամիավորումներում— Հարավային, Հյուսիսային Կովկասի ռազմաճակատներում, Անդրկովկասյան ռազմաճակատի սևծովյան խմբում, Բրյանսկի ռազմաճակատում, Արևմտյան, Ուկրաինական երկրորդ, Մերձբալթյան երկրորդ ռազմաճակատներում, 45-րդ բանակում, 38-րդ բրիգադում, իսկ Մոսկվայում լույս տեսավ «Կարմիր բանակի ագիտատորի բլոկնոտը»:

Ծավալով փոքր են հայերեն զինվորական թերթերը՝ շրջանային թերթերի, երբեմն դրանց կեսի, մեքենագրական սովորական թղթի չափով, լույս են տեսել անկանոն պարբերականությամբ: Դրանց մի մասը կարճ կյանք է ունեցել, բայց մեր 16 թերթերը մշտապես արտացոլել են մեծ ճակատամարտերի հերոիկան: Քաղաքական, պատմագիտական, ռազմական, միջազգային և հրապարակախոսական այլ հոդվածներով, ակնարկներով ճակատային թերթերը ցույց են տվել, թե ինչպես մահու և կենաց ահեղ մարտերում սովետական զինվորներն ու սպաները կյանքի գնով, անձնուրաց հայրենասիրությամբ ողջ աշխարհի առաջ ցուցադրում էին սովետական ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալ միասնության անպարտելի ուժը:

Ճակատային հայերեն թերթերի մարտնչող հրապարակախոսության հիմքը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան գաղափարների պրոպագանդան է: Առաջնորդողներում, հոդվածներում, քաղվածաբար զետեղելով մեծ առաջնորդի ասույթները, դրանք ոգեշնչում, մղում էին մեր ռազմիկներին անօրինակ սխրագործությունների:

Երբ 89-րդ հրաձգային դիվիզիան, դեռևս Երևանում կազմավորվելով, պատրաստվում էր մեկնելու ռազմաճակատ, «Կարմիր զինվոր» թերթը (1942, հունվարի 12) զետեղեց տակավին սովետական կարգերի արշալույսին կարմիր բանակի մարտիկներին ուղղած Լենինի հետևյալ կոչը.

> Ընկերնե՛ր, կռվեցեք մինչև արյան վերջին կաթիլը, պայքարեցե՛ք ամեն մի թիզ հողի համար, անխոնջ եղեք մինչև վերջ, հաղթանակը հեռու չէ, հաղթանակը մերը կլինի:

Լենինյան այս կոչը թևավորեց հանուն հայրենիքի պաշտպանության ոտքի ելած մեր մարտիկներին:

Հայրենական պատերազմի սկզբնական շրջանի տագնապալից օրերին Բրյանսկի ռազմաճակատի «Դեպի թշնամու ջախջախումը» թերթի (1942, հուլիսի 20) ճակատին խոշոր տառերով տպագրվեց Լենինի հետևյալ խոսքերը. «Ստեղծեցե՛ք... խիստ դիսցիպլինա, այլ կերպ դուք կպառկեք գերմանական կրնկի տակ»:

Սովետա-գերմանական ռազմաճակատի՝ Կովկասի և մյուս հատվածներում կռիվներն ավելի էին բորբոքվում: Գազազած թշնամու դեմ էին նետվում մեր բանակի նորանոր ուժեր: Թերթը կրկին հիշեցնում է լենինյան պատգամը. «Հաղթելու համար հարկավոր է մեծագույն պայքար, հարկավոր է երկաթյա ռազմական կարգապահություն»:

Հանուն Կովկասի մղվող թեժ մարտերի օրերին «Կարմիր զինվոր» թերթն ավելի ու ավելի հաճախ է դիմում լենինյան իմաստուն ժառանգությանը: Հայկական 261-րդ հրաձգային դիվիզիայի «Մարտ հանուն հայրենիքի» թերթը առաջին էջում (1942, դեկտեմբերի 18) խոշոր տառերով մեջբերել է Վ. Ի. Լենինի հետևյալ խոսքերը.

> Ով ամեն կերպ և անձնվիրաբար չի օգնում կարմիր բանակին, բոլոր ուժերով չի պաշտպանում կարգ ու կանոնը և կարգապահությունը բանակում, նա դավաճան է... նրան պետք է անխնա ոչնչացնել:

Թերթի «Երկաթյա դիսցիպլինայի համար» առաջնորդողում ընդգծվում է, որ հիտլերյան ռազմական մեքենան վերջնականապես ջախջախելու և մեր երկիրը ֆաշիստներից ազատելու համար պահանջվում է մեծ համառություն, կազմակերպվածություն և ամենախիստ, երկաթյա կարգապահություն: Որքան ամուր է կարգապահությունը, այնքան հուժկու է թշնամուն հասցվող հարվածների ուժը, այնքան մոտ է նրա ջախջախումը:

Անդրկովկասյան ռազմաճակատի հյուսիսային զորախմբի, ապա Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի «Առա՜ջ, հանուն հաղթանակի» թերթի 1943 թ. հունվարի 22-ի համարի առաջին էջի ճակատին գրված է. «Լենինի դրոշի ներքո առա՜ջ, դեպի հաղթություն», «Լենինի գործն անպարտելի է» վերնագրով առաջնորդողում ընդգծվում է, որ կարմիր բանակի՝ թշնամուն ուղղված ամեն մի զնդակ, յուրաքանչյուր ազատագրված բնակավայր լավագույն ընծան է Լենինի պայծառ հիշատակին, իսկ մեր մոտալուտ հաղթանակը թշնամու նկատմամբ՝ լավագույն հուշարձանը կլինի Լենինին, որ այնպես ջերմորեն էր սիրում իր հայրենիքը, ժողովրդին: Թերթը հրապարակել է մեծ առաջնորդի հետևյալ խոսքերը.

> Ընկեր կարմիրբանակայիննե՛ր. մնացե՛ք ամուր և միասնական: Համարձակորեն առա՜ջ, ընդդեմ թշնամու: Ձերն է հաղթանակը:

Մերձբալթյան երկրորդ ռազմաճակատի «Սուվորովական» թերթի 1944 թ. հունվարի 21-ի առաջին էջի ճակատին կարդում ենք. «Հայրենիքը սիրել այնպես, ինչպես Լենինն էր սիրում», իսկ երկրորդ էջի ճակատին՝ «Լենինաբար ատել, ավելի անխնա հարվածել թշնամուն»: Առաջնորդողում, որ վերնագրված է «Առանց Լենինի, լենինյան ուղիով», շեշտվում է, որ անմահ Լենինի գաղափարները մեզ հաղթական մեծ սխրանքների են կոչում:

Ամբողջ ճակատային մամուլը տոգորված է սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան գաղափարներով: Թերթում արծարծված բոլոր թեմաները ծառայել են այդ վեհ գաղափարների կենսագործմանը, մեր սրբազան հայրենիքի ազատության ու անկախության համար մղվող պայքարին:

• • •

Իրենց ստեղծման օրից թերթերը հայ ռազմիկներին միշտ հիշեցրել են օտար զավթիչների դեմ ռուս և այլ ժողովուրդների մղած հերոսական պայքարի մասին: Այս նյութերի հիմնական ժանրը պատմագիտական-ռազմական հրապարակախոսությունն է, որը սերտորեն առնչվում է արդիականության մեծագույն խնդրի՝ գերմանական ֆաշիզմի դեմ մղվող պայքարի հետ: Հայաստանի հեռագրական գործակալությունը ռազմաճակատային թերթերին ուղարկել է հատուկ լրաբերներ՝ ռուս մեծ զորավարների մասին: Անդրադառնալով ռուս զորավարներին, զինվորներին, առհասարակ ռուս մեծ ժողովրդին՝ թերթերն արտացոլել են նրանց մեծ դերը հայ ժողովրդի ճակատագրում:

Ռուս ժողովրդի մեծ զորավարներին նվիրված համարում «Մարտ հանուն հայրենիքի» թերթը (1943, մարտի 20) զետեղել է Ալեքսանդր Նևսկու, Դմիտրի Դոնսկոյի, Կուզմա Մինինի, Դմիտրի Պոժարսկու, Ալեքսանդր Սուվորովի, Միխայիլ Կուտուզովի նկարները:

Ինչպես առհասարակ ռազմաճակատային մամուլը, այնպես էլ հայերեն զինվորական թերթերը, հաճախ են նյութեր նվիրել ռուս զինվորին, նշել, որ ռուսական բանակի լավագույն ավանդույթների ժառանգորդն է կարմիր բանակը: Գերմանական ֆաշիստների դեմ մղվող մարտերում նա սրբությամբ պահպանում և բազմապատկում է այդ ավանդույթները: Հենց այդ թեմային է վերաբերում «ԲԳԿԲ մարտիկ» թերթի մի էջը (1943, մարտի 28)՝ «Ռուս զինվորը» ընդհանուր վերնագրով: «Հրաշք-դյուցազունը» ակնարկը նվիրված է գրենադեր Լեոնտի Կորենոյին, որը Նապոլեոնի արշավանքի ժամանակ հերոսաբար կռվեց ֆրանսիացիների գերակշռող ուժերի դեմ և վերադարձավ իր

գունդը: Նրա մարմնի վրա կար սվինի ու գնդակի 18 վերք: Ռուս զինվորների պատվի բարձր գիտակցության, հայրենասիրության, խիզախության նման բազմաթիվ օրինակներով թերթը կոչ է անում ճակատայիններին՝ կռվել նրանց պես: Ռուսներն առաջինը բարձրացրին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության դրոշը և եղբայրական ժողովուրդներին օգնեցին՝ հաստատելու սովետական իշխանություն, ապա կառուցելու նոր կյանք, ընթանալու սոցիալիզմի ուղիով: Հայրենական մեծ պատերազմում ևս ռուս ժողովուրդը ավանգարդում է:

Կովկասի համար մղված մարտերում հայ մարտիկները ռուս և սովետական մյուս ազգությունների զավակների հետ ուս-ուսի՝ քշում են հիտլերականներին արևմուտք, դեպի անդունդն են հրում զավթիչներին: Կովկասն այնքան հարազատ է ռուս մարտիկին, որքան հայ մարտիկին՝ մեր մեծ Միության հողի ամեն մի թիզը, որի համար մարտնչել, արյուն էին թափել իր կորովի զավակները...

«Առա՜ջ, հանուն հայրենիքի» թերթը նպատակային մի էջ է տվել «Հայ ժողովրդի քաջարի նախնիները» և «Կռվենք մեր փառապանծ նախնիների նման» խորագրերով, ուր համառոտակի խոսվում է Վասակ Մամիկոնյանի, Մուշեղ Մամիկոնյանի, Դավիթ Բեկի, Վարդան Մամիկոնյանի, գեներալ Վ. Մադաթովի, գեներալ Ա. Տեր-Ղուկասովի մասին: «Ավարայրի ճակատամարտը» ակնարկում ավելի մանրամասն տեղեկություններ են տրված Վարդան Մամիկոնյանի մասին:

«Սովետական մեծ հայրենիքի համար նրանք կռվում են կողք-կողքի» ընդհանուր վերնագիրը կրող էջում «Կարմիր զինվոր» թերթը տպագրել է Հրայր Հովակիմյանի «Քաջարի վրացին և իր դասակը» ակնարկը: Լեյտենանտ Կապիտոն Բենդելու դասակը կազմված է հայ, ռուս, ադրբեջանցի և այլ ազգերի մարտիկներից: Հեղինակը նկարագրում է մարտիկներ Կամարովի, Ազիզովի և Աղամիրյանի սխրանքը. հետևելով իրենց սիրելի հրամանատարին, արհամարհելով մահը՝ նրանք առաջինն անցան ջրային բնագիծը, ոչնչացրին թշնամու 5 կրակակետ:

«Սովետական ռազմիկ» թերթը 1943 թ. հոկտեմբերի 7-ի համարում հրապարակել է «Հինգ տանկիստների երդումը»: Տանկի հրամանատար ռուս լեյտենանտ Պյոտր Սոչինը, ուկրաինացի հրաձիգ Իվան Յասկոն, մեքենավարի օգնական, թաթար Շաքիր Զինատուլինը, մեխանիկ-մեքենավար, բելոռուս Յանկո Սկուբան և հրաձիգ-ռադիստ Ն. Խումարյանը գրում են, որ իրենք ամեն ինչ անում են գերմանացուն հայրենիքի սահմաններից դուրս քշելու համար:

Թող թշնամին մեզնից ներում չսպասի: Մեր տանկի թրթուրներով կճզմենք նրան... «Կարմիր զինվորը» տպագրել է Դմ. Խոլենդրոյի «Ջրահահար Սիմոն Օրջոնիկիձե» ակնարկը, որի հերոսը Սերգո Օրջոնիկիձեի ազգականն է: Հեղինակը նկարագրում է կապիտան Դոլգովի ստորաբաժանման, ապա լեյտենանտ Օրջոնիկիձեի ու նրա դասակի սխրանքները:

1943 թվականի փետրվարին «Պրավդան» և Հայաստանի մամուլը, զինվորական հայերեն թերթերը հրապարակեցին հայ ժողովրդի նամակը հայ մարտիկներին, որն ստորագրել էին Սովետական Հայաստանի 335.016 աշխատավորներ: «Պրավդան» հույս է հայտնում, որ հայ ժողովրդի նամակը կհասնի նրա զավակներին: Այդ նամակը կկարդան խրամատներում, կընկարդան մարտից առաջ: Այն կոգեշնչի հայ, և ո՛չ միայն հայ, մարտիկներին:

Հայ ժողովրդի լեգենդար զավակ, գեներալ-մայոր Անդրանիկ Ղազարյանի միավորումն առաջիններից էր, որ 1944 թվականի հոկտեմբերի 23-ին, Բելոռուսական երրորդ ռազմաճակատի զորքերի կազմում, անցնելով Շեշուպե գետը, մտավ Գերմանիա և աչքի ընկավ Տիլզիտի, Ինստերբուրգի, Ֆրիդլանդի և Արևելյան Պրուսիայի բազմաթիվ այլ քաղաքների գրավման ժամանակ:

Հայրենական պատերազմի մի շարք ռազմաճակատներում հմուտ գործողություններով աչքի ընկած, եռակի շքանշանակիր Թամանյան դիվիզիայի ռազմիկները՝ գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանի ղեկավարությամբ, իրենց դրոշները նոր փառքով օծեցին Օդերից այն կողմ, դեպի Բեռլին տանող ուղիներում: Հազարավոր հայ սպաներ, սերժանտներ ու շարքայիններ դյուցազնաբար մարտնչում էին գերմանական հողում:

Բրյանսկի ռազմաճակատի՝ «Դեպի թշնամու ջախջախումը» թերթը «Սուվորովյան պատգամները մարտիկին» վերնագրով առաջնորդողում (1943, մայիսի 24), վերհանելով սուվորովյան՝ «հաղթելու գիտության» նշանակությունը, դիմում է ընթերցողներին: Սուվորովն իր ռազմիկներին պարտավորեցնում էր պատերազմը շահել, հաղթանակը խլել թշնամուց: Հաղթանակն ինքն իրեն չի գալիս: Եվ մենք, ձեզ հետ միասին, ընկերնե՛ր, օգտագործելով ռուսական բանակի ողջ փորձը, պետք է հաղթանակը խլենք դեռևս ուժեղ թշնամուց:

Մերձբալթյան երկրորդ ռազմաճակատի «Սուվորովական» թերթը Լատվիայի, Լիտվայի ազատագրման համար մղվող համառ մարտերի օրերին Ա. Սուվորովի խոսքերով էր դիմում



հայ ռազմիկներին (1944, հունվարի 12)՝ «Թույլ չտալ, որ թշնամին շունչ առնի», «Զգոն, չհանգստանալ, լինել զգոն»:

Ինչպես հանրապետական թերթերն ու մյուս պարբերականները, այնպես էլ ռազմաճակատային հայերեն թերթերը բացառիկ դեր են խաղացել հանուն Կովկասի մղված մարտերում: Հայերեն առաջին ռազմաճակատային թերթի խմբագիր Ա. Մնացականյանն իր Հայ ռազմիկների հերոսության տարեգրությունները աշխատության մեջ հանգամանալի անդրադառնում է ճակատային հայերեն թերթին՝ «Մարտական գրոհին», որի առաջին համարը կոչ էր անում.

> Կարմիր բանակի ռազմիկնե՛ր. հիտլերյան գազանները պետք է պատասխան տան իրենց հրեշավոր հանցագործությունների համար: Հարվածեցե՛ք, ջախջախեցե՛ք, ոչնչացրե՛ք թշնամուն, դադար մի՛ք տա նրան: Գերմանական զավթիչներին բնաջնջեցե՛ք ինչպես կատաղած շների:

Կերչի թերակղզում մարտնչող հայկական 390-րդ հրաձգային դիվիզիայի «Հայկական սնայպեր» կարմիրբանակային թերթի առաջին համարը (1942, մարտի 13) դիմում է ընթերցողներին՝ «Դեպի առա՜ջ, դեպի հաղթանակ»: Մարտի 17-ին համարի առաջին էջի ճակատին կարդում ենք. «Ղրիմը եղել է և կլինի սովետական»... «Ուժգին հարված թշնամուն» վերնագիրը կրող առաջնորդողում հաղորդվում է, թե Ղրիմի ռազմաճակատի սովետական զորքերը, անցնելով հարձակման, ամեն օր նորանոր հաղթանակներ են տանում՝ թիզ առ թիզ մաքրելով սովետական Ղրիմը ֆաշիստական բարբարոսներից: Թերթը կոչ է անում ամեն կերպ ձախողել թշնամու պլանները, հարձակումը շարունակել շեշտակի, հանգիստ չտալ թշնամուն, շրջապատել, գերել: «Հայկական սնայպերի» առաջնորդողները կոչ են անում ոչնչացնել թշնամուն դիպուկ կրակով:

Հայկական 89-րդ հրաձգային դիվիզիայի «Կարմիր զինվոր» թերթը դեռևս Երևանում ծավալուն աշխատանք էր տանում ապագա ճակատայինների ռազմա-քաղաքական ուսուցման, նրանց գալիք մարտերին նախապատրաստելու համար: Թերթը տպագրել է Հայկական 89-րդ հրաձգային դիվիզիայի հրամանատար Ս. Զաքյանի և կոմիսար Վ. Զումակովի «Պատրաստ լինել մարտի համար» վերնագրով հոդվածը, որում շարադրված են զորամիավորման մարտիկների ու հրամանատարների հրատապ խնդիրները պատերազմի տվյալ պահին:

Հայկական 409-րդ հրաձգային դիվիզիայի «Մարտական դրոշ» թերթի նպատակային էջերի ճակատին քաղվածքներ են զետեղված զինվորական երդումից: Նպատակային էջերի ճակատին հաճախ են տպվել «Պրավդայի» մոբիլիզացնող թևավոր խոսքերը. «Բոլշևիկի անձնական օրինակն իր հետևից է տանում մասսային», «Դիմադրել թշնամու արշավանքին, նրան ետ շպրտել դեպի արևմուտք և ապահովել հաղթանակը՝ այս է մեր խնդիրը» և այլն:

«Ծավալենք սոցիալիստական մրցություն՝ զորամասերի կոփվածության համար» ընդհանուր լոզունգի ներքո հրապարակված ինֆորմացիայում «Մարտական դրոշ» թերթը ընթերցողներին հիշեցնում է, որ ուսման ու աշխատանքի մեջ բարձր ցուցանիշների հասնելու հաստատ, փորձված ուղին սոցիալիստական մրցությունն է. ապա հրապարակված են «Ամենահզոր ստորաբաժանման համար» ծավալված սոցիալիստական մրցության պայմանները: Հետագա համարներում թերթը հաղորդում է ընտանձնած պարտավորությունների և կատարման ընթացքի մասին:

Ռազմաճակատային հայերեն թերթերը նոր փուլ թևակոխեցին հանուն Կովկասի մղվող հարձակողական վճռական մարտերում: Տպագրելով Անդրկովկասի ժողովուրդների հակաֆաշիստական միտինգի նյութերը՝ «Կարմիր զինվորի» խմբագրությունն առանձին թերթիկով հրապարակել է Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության Կենտկոմի և Երևանի քաղկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի, քաղաքային սովետի դեպուտատների և հասարակական կազմակերպությունների ու զորամասերի ներկայացուցիչների հանդիսավոր նիստի նամակը՝ ուղղված Կովկասի հերոս պաշտպաններին: Թերթն առանձին հրապարակել է նաև 89-րդ հրաձգային դիվիզիայի հրամանատարության ու քաղբաժնի դիմումը մարտիկներին, հրամանատարներին ու քաղաշխատողներին. դիմումը կոչ է անում.

> Ռուս մեծ ժողովրդի և նրա գլխավորությամբ Կովկասի ժողովուրդների՝ վրացիների, ադրբեջանցիների, օսեթիների, ազատ լեռնականների հետ միասին ուս-ուսի տված խփենք գերմանական սողունին՝ մինչև նրա լիակատար ոչնչացումը:

«ԲԳԿԲ մարտիկը» իր «Հոկտեմբերի հայրենիքն անպարտելի է» առաջնորդողում (1942, նոյեմբերի 7) հիշեցնում է ռազմաճակատի ռազմիկներին. չխնայելով ձեր կյանքը, պաշտպանեցե՛ք մեծ Հոկտեմբերի նվաճումները, մեր հայրենիքի ազատությունը, պատիվն ու անկա-

խությունը, անողոքաբար ոչնչացրե՛ք հիտլերյան ավազակներին: Անեղ մարտերում մենք արյամբ կպաշտպանենք Հայրենիքը. երդումի նման հնչում է թերթի զույգ էջի ճակատին:

Սովետական Միության հերոս Միխայիլ Գոխիկաձեն «Լեռնային արծիվները» հոդվածում պատմում է ադրբեջանցի գնդացրորդ Խունգուլու Սադըխովի, լենինգրադցի կործանիչ օդաչու Վլադիմիր Գրոմովի, Սովետական Միության հերոսներ Նոյ Ադամիայի և Արկադի Գեգեշիձեի անօրինակ սխրագործությունների մասին: Ուկրաինացի սերժանտ Ա. Խիլչենկոն «Երդվում ենք կյանքով» հակիրճ հոդվածում գրում է, որ իր գնդացրային անձնակազմով արդեն ոչնչացրել է գերմանական 156 զինվոր և 9 սպա: Այդ մեր վրեժխնդրության հաշիվն է, գրում է Խիլչենկոն, մենք անողոքաբար վրեժ ենք լուծում հայրենի Ուկրաինայի համար:

Թերթը հրապարակել է ակադեմիկոս Հովսեփ Օրբելու «Կովկասի պաշտպաններին» կըրքոտ հրապարակախոսական հոդվածը, ուր ասված է.

Կովկասի պաշտպաննե՛ր. ջախջախեցե՛ք թշնամիներին այն հիանալի զենքով, որ տվել է ձեզ հայրենիքը. Հիշեցե՛ք Սասունցի Դավթին, Քյոռ-Օղլուն և Տարիելին: Ոչնչացրե՛ք թշնամուն ինչով և ինչպես կարող եք, միայն թե ոչնչացրե՛ք:

Ընդհանրացնելով հանուն Կովկասի մղվող մարտերի առաջավոր ստորաբաժանումների և առանձին ռազմիկների փորձը՝ ճակատային հայերեն թերթերը կոչ են անում ավելի համառությամբ մարտնչել արյունարբու հիտլերականների դեմ, հայրենիքը լիովին ազատել գերմանական օկուպանտներից: «Կարմիր զինվորն» առանձին թերթիկով հրապարակել է Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի ռազմական խորհրդի՝ 1943 թվականի սեպտեմբերի 21-ի դիմումը: Ընդգծելով, թե Կովկասի համար մղվող կռիվները մոտենում են հաղթական վախճանին, ռազմական խորհուրդը կոչ է անում 89-րդ հայկական դիվիզիային՝ լարել բոլոր ուժերը, հանդես բերել արտակարգ արիություն ու քաջություն, ոչնչացնել թշնամուն, առաջինը մտնել Թաման քաղաքն ու նավահանգիստը: Այդ դիմումից հետո «Կարմիր զինվորը» (1943, սեպտեմբերի 28, հոկտեմբերի 4, 10) ամբողջ էջով մեկ գրել է. «Համարձակորեն հետապնդենք թշնամուն, ոչնչացնենք նրան և արժանանանք «Թամանյան» կոչմանը:

* * *

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված պայքարում ռազմաճակատի ու թիկունքի մարդկանց ուժերի համախմբման, մեր հաղթանակն արագացնելու գործում մեծ է պարբերական մամուլի դերը: Որպես մեր կուսակցության հզոր զենք՝ մամուլը գտնվել է պայքարի առաջավոր մարտակարգերում, դարձել մասսաների լավագույն պրոպագանդիստը, ագիտատորը և կազմակերպիչը:

**Վ. Մ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ**
**ՀՍՍՀ ԳԱ** պատմության ինստիտուտի
ավագ գիտաշխատող

ՎՐԻՊԱԿ

*Մեր ամսագրի 9-րդ համարի 25-րդ էջի առաջին սյունակի ներքևից 6-րդ տողը կարդալ՝* «О том, как некоторые социал-демократы», *այնուհետև՝ ինչպես տեքստում:*


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: Ереван-33, Барекамутян, 59 г.
Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՅ 06486 Պատվեր 1439 Թղթի չափսը 70×108 1/16 Տիրաժ 13.100 Գինը 25 կոպ.*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 2/X 1973 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Իսահակյան փող. № 28:*




# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՍՄԿԿ ծնունդը *(ժողովածու): Մ.,* Политиздат, *1973 թ., 103 էջ:*

Վ. Ի. Լենինը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին *(ժողովածու): Մ.,* Воениздат, *1973 թ., 422 էջ:*

ԲՈԼՈՏՆԻԿՈՎ Ի. Մ. և ՎԱՎԻԼՈՎ Կ. Կ.— Լենինիզմը և սոցիալիստական հասարակության գիտական ղեկավարումը: *Լենհրատ, 1973 թ., 256 էջ:*

ՍՍՀՄ-Ը ԹՎԵՐՈՎ, 1972 ԹՎԱԿԱՆԻՆ: Վիճակագրական համառոտ ժողովածու: *Մ.,* «Статистика» *հրատ., 1973 թ., 216 էջ:*

Կուսակցական շինարարության ուսումնական ձեռնարկ: *«Հայաստան» հրատ., 1973 թ., 608 էջ:*

Տեսական սեմինարների օրինակելի թեմատիկա և պլաններ գիտական կոմունիզմի պրոբլեմների վերաբերյալ: *Պրակ երկրորդ: Կուս. ուսուցման սիստեմի համար: «Հայաստան» հրատ., 1973 թ., 116 էջ:*

Ծրագիր ճաղաքատնտեսության դասընթացի: *Բարձրագույն ուսումնական հաստ. համար (100—140 ժամ): Եր. համալսարանի հրատ., 1973 թ., 66 էջ:*

Ծրագիր մարքս-լենինյան փիլիսոփայության դասընթացի: *ԲՈՒՀ-երի համար: Եր., Խ. Աբովյանի անվ. մանկ. ինստ. հրատ., 1973 թ., 55 էջ:*

Բնագիտության և տեխնիկայի պատմությունը Հայաստանում: *Գիտական աշխատությունների ժողովածու: Հինգերորդ հատոր: Եր., ԳԱ հրատ., 1973 թ., 282 էջ:*

*Այս հատորում զետեղված են բնագիտության և տեխնիկայի պատմության վերաբերյալ հայերեն և ռուսերեն ուսումնասիրությունների անունները (հին և սովետական շրջան):*

Հայոց լեզվի զարգացումը սովետական շրջանում *(ժողովածու): Եր., ԳԱ հրատ., 1973 թ., 554 էջ:*

ԹԱՄՐԱԶՅԱՆ Հ. Ս.— Դրականության ուղիներով: *Մ.,* «Совет. писатель» *հրատ., 1973 թ., 280 էջ:*

*Համառոտակի վերլուծված են Հովհ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի, Եղիշե Չարենցի, Սիամանթոյի, Դ. Վարուժանի, Մ. Մեծարենցի, Ռ. Սևակի, Սիլվա Կապուտիկյանի, Հ. Սահյանի, Վ. Դավթյանի ստեղծագործությունները:*

ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա.— Դաստիարակչական աշխատանքը պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում: *(Մեթոդական ձեռնարկ): Եր., «Լույս» հրատ., 1973 թ., 164 էջ:*

*Հեղինակը, ելնելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից և օգտագործելով պրոֆտեխնիկական ուսումնարանի փորձը, շարադրել է կոմունիստական դաստիարակության հիմնական խնդիրները:*

Գիտական աշխատությունների ժողովածու: *Մանկավարժություն և հոգեբանություն: Եր., Խ. Աբովյանի անվ. պետ. մանկավարժական ինստ. հրատ., 1973 թ., 228 էջ:*

ԱՐՁՈՒՄԱՆՅԱՆ Ա. Մ.— Սովետական Միության նավատորմի ադմիրալը *(Ադմիրալ ԻՍԱԿՈՎ Ի. Ս.): «Հայաստան» հրատ., 1973 թ., 504 էջ (ռուսերեն):*

ՏԻՉԻՆԱ Պ., ՌԻԼՍԿԻ Մ.— Հայաստանի և հայ կուլտուրայի մասին: *Կազմեց և խմբագրեց Գուրգեն Հովնան: Եր., ԳԱ հրատ., 1973 թ., 250 էջ:*

*Ներկա գրքում զետեղված են ուկրաինացի ժողովրդական գրողներ՝ Տիչինայի և Ռիլսկու ստեղծագործություններն ու հոդվածները Հայաստանի և հայ կուլտուրայի մասին:*

Գրական կապեր: *Հատոր I: Ռուս-հայկական գրական կապերը: Հետազոտություններ և նյութեր: Եր., Համալսարանի հրատ., 1973 թ., 354 էջ (ռուսերեն):*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼՎԱՑՈՒՄ ՖՈՏՈԷԼԵՄԵՆՏՈՎ

*Վիրահատողը, առանց ձեռքերն ախտահանելու, չի կարող մոտենալ վիրահատական սեղանին։ Չի կարելի նույնիսկ կպչել ջրի ծորակին։ Ռումին գիտնականներն ստեղծել են ֆոտոէլեմենտով ծորակ։ Բավական է ձեռքերը մոտեցնել լվացարանին, և ախտահանող ջուրն սկսում է հոսել։*

## ԹՎԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱՋԵՐՄԱՉԱՓ

*Ճապոնական «Օմրոն Տատեյսի» ֆիրման վերջերս թողարկել է աշխարհի ամենափոքր բժշկական էլեկտրոնային ջերմաչափը։ Կշռում է ընդամենը 300 գրամ։ Չափումները կատարվում են 32—42° C-ի սահմաններում 0,1°-ի ճշգրտությամբ, ընդամենը 10 վայրկյանում։ Փոքրիկ լուսատախտակի վրա բժիշկը հաշվում է ջերմաչափի ցուցմունքները։*

## ԲԱԿՏԵՐԻԱՆԵՐԸ ՆՈՒՅՆՊԵՍ ՍԻՐՈՒՄ ԵՆ ՄԱՔՐՈՒԹՅՈՒՆ

*ԳՖՀԻ-ի քիմիկոսները մշակել են բակտերիաների միջոցով հոսող ջրերի աղտոտվածության աստիճանը որոշելու մեթոդ։ Հայտնի է, որ ջրում առողջ բակտերիաները սպառում են որոշակի քանակությամբ թթվածին։ Հետևաբար, որքան լավ են զգում իրենց բակտերիաները, այնքան ավելի պակաս է թթվածնի պարունակությունը հոսող ջրում։ Եթե հոսող ջրում թույն է ընկնում, բակտերիաների նյութափոխանակությունը դանդաղում է, և թթվածնի խտությունը այնտեղ մեծանում է։*

## ԹԵԹԵՎ, ԱՄՐԱԿԱՐԾՐ ԱՊԱԿԻ

*Ամերիկյան գիտնականները մշակել են ապակին ամրակարծր դարձնելու քիմիական մեթոդ, որով դրա ամրությունը մեկ քառակուսի սանտիմետրի վրա հասնում է մինչ 700 կգ (սովորական ապակունը 500 կգ է մեկ սմ²-ում)։ Նատրիումի իոնները, գտնվելով ապակու մակերեսային շերտում, փոխարինվում են կալիումի իոններով, որի շնորհիվ ապակին սառեցնելուց հետո, նրա մակերեսին առաջանում է կայուն պաշտպանական շերտ։ 2 միլիմետր հաստություն ունեցող, քիմիական եղանակով «թրծված» ապակյա թիթեղի և ջերմային եղանակով կոփված 6 միլիմետրանոց թիթեղի ամրությունը նույնն է։*

*Նոր մեթոդը կիրառվել է լուսնագնացի և նոր տուրբոռեակտիվ օդանավերի հողմադիմացկուն ապակիների պատրաստման համար։*

## ԿՈՄԲԱՅՆԸ ՀԱՎԱՔՈՒՄ Է ԳԱԶԱՐԸ

*Հոլանդիայում թողարկված նոր կոմբայնը ժամում հավաքում է 10 տոննա գազար։ Կոմբայնը բանում է տրակտորի շարժիչի միջոցով, որին շղթայակցված է։ Գազարը մաքրվում է հողից և կոնվեյերի միջոցով լցվում կոմբայնի հետևի մասում գտնվող բունկերը։*

## ՄԻԿՐՈԲՆԵՐՆ ԸՆԴԴԵՄ ՄՈԾԱԿՆԵՐԻ

*Մինչև վերջերս պայքարը մոծակների՝ վարակիչ հիվանդություններ տարածողների դեմ տարվում էր հիմնականում միջատասպանների՝ ինսեկտիցիդների միջոցով։ Սակայն քիմիկատների լայն կիրառումը ոչնչացնում էր օգտակար միջատներին և նույնիսկ՝ թռչուններին։*

*Ամերիկյան միկրոբիոլոգ Ջոն Կոուչը, լինելով մոծակներով հարուստ շատ ճեղքում, հայտնաբերեց դրանց ձվերով սնվող միկրոօրգանիզմներ։ Անցյալ տարի նա կատարեց առաջին փորձերը. լաբորատոր եղանակով բազմացնելով այդ բակտերիաները՝ նա դրանցով վարակեց ճահիճներից մեկը։ Ստացվ գերազանց արդյունք։ Մոծակների ձվերի մոտ 90 տոկոսը ոչնչացավ։*

## ՏԵՍԱԿԱՎՈՐՈՒՄ, ՓԱԹԵԹԱՎՈՐՈՒՄ Է ԿԱՐՏՈՖԻԼԸ

*Անգլիայում ստեղծված է կարտոֆիլը տեսակավորելու և պարկերի մեջ փաթեթավորելու ավտոմատ գիծ՝ ժամում 6 տոննա արտադրողականությամբ։ Սարքը կազմված է բեռնաթափող բունկերից, որի մեջ լցվում է դաշտից բերվող կարտոֆիլը։ Բունկերից արմատապտուղը փոխադրիչի միջոցով ընկնում է վերելակի վրա, այնուհետև նախնական մաքրման մեքենան, ապա այն սարքի մեջ, որը պալարները տեսակավորում է ըստ չափերի։ Մյուս սարքի բունկերում այն լցվում է պարկերի մեջ։ Նոր սարքը բանում է առանց սպասարկող անձնակազմի։*